ԵՐ. ՇԱՀԱԶԻԶ

# ՆՈՐ-ՆԱԽԻՋԵՒԱՆ
ԵՒ
# ՆՈՐ-ՆԱԽԻՋԵՒԱՆՑԻՔ



*Արտատպուած*
**Ազգագրական Հանդէսից**



ԹԻՖԼԻՍ
*Տպարան Կ. Մարտիրոսեանցի* | Тип. К. Мартиросіанца
1903

# ՆՈՐ-ՆԱԽԻՋԵՒԱՆԸ



# ՆՈՐ-ՆԱԽԻՋԵՒԱՆՑԻՔ

ԵՐ. ՇԱՀԱԶԻԶԻ

Պատմական տեսութիւն*)

## Ա.



Հազար եօթ հարիւր ութսուն եօթ թուականի Մարտի 9-ին իրար յետեւից հրատարակուում են Եկատարինէ Բ. կայսրուհու մի „ռեսկրիպտր“ և մի «Ուկազը»։ Առաջինը, որ տրուած է Ռուսաց զօրքի այդ ժամանակուայ ընդհանուր հրամանատար ժեներալ-ֆելդմարշալ Պետր Ալէքսանդրովիչ կոմս Ռումեանցովի անունով, պարունակում է իւր մէջ հետեւեալը. „Ղրիմի վերաբերութեամբ մեզ արած ձեր վերջին զեկուցումից մենք հաւաստիացանք, որ դուք հրամանագրել էք ժեներալ-պորուչիկ իշխան Պրոզորովսկուն համոզելու այնտեղ ապրող Յոյներին և միւս քրիստոնեաներին գաղթել Ռուսաստան։ Մենք այդ կէտի վերայ

---

*) Մեր այս աշխատութեան համար մենք օգտուել ենք հետեւեալ աղբիւրներից.

1. Ճանապարհորդութիւն 'ի Լեհաստան Հ. Մինասայ Բժշկեանց.
2. Մասեաց աղաւնի, 63 և 64 տարի.
3. Մեղու, 65 տարի.
4. Присоединеніе Крыма къ Россіи, Н. Дубровина. Томы второй и третій.
5. Գիրք ժողովածու, ձեռագիր.
6. Универсальное описаніе Крыма, Кондораки. Части 14, 16 и 17.
7. Պատմութիւն գաղթականութեան Խրիմու, Հ. Ք. վ. Քուշնարեանց.

առանձնապէս ուշադրութիւն դարձնելով, կարևոր ենք համարում շեշտել այն միջոցների վերայ, որ նա պէտք է գործ դնէ, որպէս զի կարողանայ համոզել նոցա, որ նոքա յօժարակամ տեղափոխուեն Նովոռուսիոյ և Ազովի նահանգները, որտեղ նոքա կ'գտնեն մեր հովանաւորութեան տակ անդորր կեանք և կարելին բարօրութիւն։ Նմանապէս անհրաժեշտ է յորդորել այնտեղի մետրոպոլիտին, խոստանալով նորան զանազան արտօնութիւններ, իսկ խանին պէտք է հասկացնել, թէ այդ բոլորը կատարւում է քրիստոնեաներին թաթարների, գուցէ, և տաճիկների երեսից, եթէ այդ վերջինները մտնելու լինին Ղրիմ, նոցա գլխին գալիք վտանգից ազատելու համար։ Ուստի և չ'զլանաք յանձնարարել ժեներալ Պրոզօրովսկուն, որ նա և մեր բոլոր զօրագլուխները նոցա դիմող բոլոր քրիստոնեաներին ընդունեն ամենայն սիրով և ձեռքից եկած ամեն միջոցներով օգնեն և ճանապարհ դնեն դէպի վերոյիշեալ նահանգները, և հենց որ մէկը նոցանից ցանկութիւն յայտնէ այս կամ այն նահանգը տեղափոխուելու, իսկոյն և եթ առանց յապաղելու յանձնարարեն նորան այդ նահանգների նահանգապետներին։ Իսկ ինչ որ վերաբերում է ճանապարհի պաշարին,— տալ նոցա ամեն բան մթերանոց եղած տեղերում այդ մթերանոցներից, չեղած տեղերում—գնելով։ Նոցա մեր սահմաններում տեղաւորելու և առաջին նուագ հարկաւոր բաները նոցա մատակարարելու համար էլ մենք ուղարկեցինք այդ նահանգների ժեներալ նահանգապետ Պոտեօմկինին առանձին հրամանագիր։

Ուկազն էլ, որ տրուած է Պոտեօմկինի անունով և որի մասին խօսք է լինում ռեսկրիպտի մէջ, պարունակում է իւր մէջ հետևեալը. «Մենք ժեներալ-ֆելդմարշալ կոմս Ռումեանցովին սոյն թուով տուած մեր ռեսկրիպտով, հրամայեցինք մեր զօրագլուխներին Ղրիմում ապրող Յոյներին, Վրացիներին և հայերին, որոնք բարեյօժար կամքով կ'համաձայնեն մեր հովանաւորութեան տակ մտնելու և կ'ցանկանան վերաբնակուել Նովոռուսիոյ և Ազովի նահանգներում, ոչ թէ միայն

8. Յայսմաւուրք, ձեռագիր.

9. Ձեռագիր Դաւթար Յովսէփ արքեպիսկոպոս Արղութեանի.

10. Մեր աշխատասիրած «Նոր-Նախիջևանի հիմնարկութեան և կառավարութեան պատմութիւնը», անտիպ.

11. Ըսածք, տօնացուցք և զրոյցք հայոց Նոր-Նախիջևանի, Դ. Տիգրանեանցի.

12. Матеріалы для изученія армянскихъ нарѣчій, К. П. Патканова. Выпускъ I, Говоръ Нахичеванскій.

Բացի այս աղբիւրներից, մեզ շատ նպաստել են և մեր բարեկամների՝ պ. պ. Սերովբէ Զաթուլբաշեանի և Ծառուկ Զուբարեանի և միւսների հաւաքած տեղեկութիւնները, որի համար և յայտնում ենք նոցա այստեղ մեր առ 'ի սրտէ շնորհակալութիւնը։

սիրով ընդունել ու ճանապարհ դնել նոցա վերոյիշեալ նահանգների նահանգապետների մօտ, կերակրելով նոցա ճանապարհին մթերանոց եղած տեղերում մեր մթերանոցներից, չեղած տեղերում — գնելով, այլ և ջանք անել ձեռքից եկած բոլոր միջոցներով համոզել, որ նոքա համաձայնեն յօժարակամ գաղթել և նամանաւանդ համոզել յոյն մետրապօլտին։ Ձեզ էլ սորանով հրամայում ենք, որ դուք էլ անէք ձեզ վերաբերեալ պարտ ու պատշաճ տնօրինութիւնը, որպէս զի այս նոր գաղթականները մեր սահմանները մտնելու օրից ոչ թէ միայն կարօտութիւն չունենան պաշարեղէնի, այլ և, որ, ըստ ձեր բարեհայեցողութեան, տրուի նոցա ինչպէս հողի բաւականացուցիչ քանակութիւն, նոյնպէս և արքունի օժանդակութիւն տուն և տեղ շինելու համար։ Մենք, 'ի հարկէ, չենք զլանալ շնորհել նոցա զանազան արտօնութիւններ, նայելով նոցա թուին և դրութեան, իսկ մինչև այդ — յանձնեցէք նոցա այնտեղի նահանգապետների խնամքին, որ նոքա պահպանեն նոցա»։

Ահա այս երկու բարձրագոյն հրովարտակի հիման վրայ Ռումեանցովը հրահանգներ տալով, հրամանագրում է Ղրիմի թերակղզում այդ ժամանակ եղած Ռուսաց զօրքի հրամանատար և լիազօր ժեներալ Պրոզորովսկուն, իսկ նորանից յետոյ նորա տեղը բռնող Սուվորովին և խանի մօտ եղած Ռուսաց «ռեզիդենտ» Կոստանդինովին կատարել կայսրուհու հրամանը։ Իսկ Պատեօմկինն անում է պարտ ու պատշաճ տնօրինութիւնը իւր իշխանութեան տակ գտնուած Ազովի և Նովոռուսսիոյ նահանգապետներին՝ Չերտկովին և Եազիկովին գաղթականներին ընդունելու մասին, և սկսում է Ղրիմի քրիստոնեաների Ռուսաստան գաղթելու գործն ընդհանրապէս և հայերի գաղթականութիւնը մասնաւորապէս։ Ղրիմի խանութիւնն այդ ժամանակները գտնւում էր մի շատ խղճալի դրութեան մէջ. առևտուրը դադարած, արհեստներն ընկած, երկրագործութիւնն ու անասնապահութիւնն երեսի վերայ թողած, ժողովուրդը պառակտուած, կուսակցութիւնների բաժանուած և բոլոր երկիրը ծայրէ 'ի ծայր ծփում էր խռովութեան մէջ։ Չկային այլ ևս Օրան-Թիմուրի նշանաւոր յաջորդները, որոնք այնքան բարձրացրին Ղրիմի նշանակութիւնն իւրեանց ժամանակուայ քաղաքական աշխարհում, չկային այլև Թոխտամիշները և միւս նշանաւոր Գիրէյները, որոնք իւրեանց ահարկու արշաւանքներով երկար ժամանակ սարսափի մէջ էին պահել Ռուսաստանն ու Լեհաստանը։ Վերջին ժամանակներն իշխում էին Ղրիմին Գիրէյների թոյլ, գեղխ և անընդունակ յաջորդները, որոնք խաղալիկ էին դարձել Տաճկաց սուլթանների ձեռքին, իսկ վերջինս այդ իսկ ժամանակուայ խան Շահինգիրէյը Ռուսաստանի դրածը և նորա զէնքի

զօրութեամբ պաշտպանուած էր։ Երկրի այդպիսի դրութիւնը հետևանք էր այն մրցողութեան, որ քանի ժամանակներից 'ի վեր սկսել էին գործ դնել Ղրիմի վերաբերութեամբ Ռուսաստանն ու Տաճկաստանը, իւրաքանչիւրը դոցանից ձգտելով ինքը տէր դառնալ գեղեցիկ թերակղզուն։

Այն օրից, երբ առաջին անգամ խաները դաշն կապելով Օսմանեան սուլթանների հետ, օգնութեան կանչեցին նոցա Ջենովացւոց դէմ մղած պատերազմի ժամանակ, նոքա վասսալ և հպատակ դարձան Օսմանցիներին և իւրեանց իշխանութիւնն իւրեանց ձեռքով մատնեցին նոցա ձեռքը։ 1475 թուին Օսմանցիք իբրև դաշնակից իւրեանց մարտանաւերով հասնելով Ղրիմի հարաւային ափը, զօրք իջեցնելով նշանաւոր Կաֆայի նաւահանգիստը և յաղթելով ու կործանելով Ջենովացւոց և նոցա դաշնակից հայերի զօրութիւնը, ամուր կերպով հաստատուեցին Ղրիմում։ Նոքա Ղրիմի նաւահանգիստ քաղաքները բռնեցին իւրեանց զօրքերով, նոքա մի զօրավար փաշայ կարգեցին խանի գործողութիւններին հսկելու և խանի հաստատութեան իրաւունքը սուլթանին սեփականացրին։ Սուլթանի բարի կամքից կախումն ունէր այնուհետև Չինգիզի գոռոզ շառաւիղների գահ բարձրանալը և գահից իջնելը, սուլթանի բարեհաճ տնօրինութեան էր կարօտ խանի այս ինչ կամ այն ինչ գործողութեան հաստատութիւնն ու մերժումը։ Այլ այնուհետև ամեն բան փոխւում է Ղրիմում—զօրքի կազմակերպութիւնը, երկրի կառավարութեան ձևն ու եղանակը, թաթարների մտաւոր և բարոյական կրթութիւնը, մինչև իսկ նոցա լեզուն ենթարկւում է Օսմանցիների ազդեցութեան։ Եւ եթէ այսպէս երկար ժամանակ շարունակուէր գործը, Ղրիմն ամբողջապէս կ'կորցնէր իւր իսկական գոյնն ու հոտը, ժողովուրդը կըթուրքանար, երկիրը կ'ստանար Օսմանեան կայսրութեան երկրներին յատուկ կազմակերպութիւնն ու բնաւորութիւնը և քաղաքականապէս իսկ նորա նահանգներից ու վիլայէթներից մէկը կ'դառնար։

Սակայն կար մի ուրիշ պետութիւն, որին սահմանակից էր Ղրիմը, որ խէթ աչքով էր նայում Օսմանցւոց գործողութիւնների վերայ և որ Օսմանցիներից պակաս ցանկութիւն չունէր Ղրիմին տիրապետելու։ Այդ Ռուսաստանն էր, որ Պետրոս Մեծի ժամանակից ամրանալով և իւր բնական սահմանների մէջ հաստատուելով, սկսել էր իւր արևելեան արշաւանքները, որոնց ոյժն ու զօրութիւնը հենց առաջին անգամ ստիպուած էին եղել փորձել և նոցա առաջ տեղի տալ արևելեան երկու մահմեդական մեծ տէրութիւնները՝ Տաճկաստանը և Պարսկաստանը։

1774 թուին կայանում է Քիւչուկ-Կայնարջիկի նպաստաւոր

դաշնագրութիւնը, որի հիման վերայ Ռուսաստանը ձեռք է բերում ոչ միայն Բուգ և Դնեպր գետերի մէջ գտնուած տարածութիւնը, Կինբուրնն իւր շրջանով, Կերչը, Ենիկալէն և Ազովը, այլ և դաշնագրութեան մէջ կարողանում է մտցնել մի յօդուած, որի զօրութեամբ Ղրիմը մի անկախ քաղաքական մարմին է ճանաչուում։ Բարձր-Դուռը թէև պարտուած, թէև նեղն ընկած, այնուամենայնիւ սաստիկ ընդդիմանում է դաշնագրութեան այդ ձևով կազմուելուն, որովհետև շատ լաւ է հասկանում, որ դորանով մի կողմից Տաճկաստանը յետ է մղուում Ղրիմից, միւս կողմից էլ Ռուսաստանն, ընդհակառակը, մօտենում է թաթարներին, միջոց է ստանում ամրանալու Ղրիմում, խառնուելու խանութեան գործերին և կամաց-կամաց հասնելու իւր վերջնական նպատակին։ Տաճկաստանի յամառութիւնն այնքան սաստիկ է լինում, որ քանիցս խաղաղութեան դաշն քանդուում է և նորից վերանորոգուում է։ Նա չի կամենում հանել իւր զօրքերը Թաման թերակղզուց և ձեռքի տակից անդադար ինտրիգներ է լարում Ռուսների դէմ Ղրիմում ու Ղուբանում, գրգռելով թաթարներին և աշխատելով յարուցանել նոցա մէջ ատելութիւն դէպի Ռուսները։ Ահա այս միջոցում Ռուսաստանը վճռական քայլ է անում։ Նա որպէս զի չ՚թոյլ տայ այնքան դժուարութեամբ ձեռք բերած յաղթութիւնն իւր ձեռքից գնալու, կարճ միջոցում զանազան հնարներով կազմակերպում է Ղրիմում մի զօրեղ կուսակցութիւն և նորա միջոցով ժողովրդի մի մասն իւր կողմը ձգելով, իւր կողմնակից Շահինգիրէյին խանութեան գահն է բարձրացնում։ Շահինգիրէյը, որ հին խաների ցեղից էր, տարուում է Ղուբանի կողմերը և Ռուսաց ազդեցութեամբ այն կողմերում թափառող Եդիսանեան, Եդիչղուլեան և Ջանբոյլուղեան Նողայ-թաթարների ցեղերի ձեռքով խան է ընտրուում և այնտեղից էլ Ռուսաց զօրքի և Ղրիմի ռուս կուսակցութեան օգնութեամբ առաջնորդուում է դէպի Ղրիմի մայրաքաղաք Բախչիսարայը և ընդհանուր խան է հրատարակուում։

Բարձր-Դուռը սաստիկ զայրանում է և մի կողմից իւր կուսակից թաթարների ձեռքով աշխատում է ապստամբեցնել թաթարներին նորընտիր խանի դէմ, միւս կողմից էլ պաշտօնապէս չի ճանաչում Շահինգիրէյին Ղրիմի տէր, նորա ընտրութիւնն օրինական չի համարում և, վերջապէս, սկսում է նաւատորմիղ կազմել և կամաց-կամաց մօտենալ Ղրիմի ափերին, որ պատեհ րոպէին պաշտպանութիւն կարողանայ ցոյց տալ իւր կուսակիցներին։ Տաճիկների թափած ճիգը շուտով պսակուում է յաջողութեամբ։ Ծագում է ապստամբութիւն և թաթարները խումբ-խումբ զէնքի են դիմում, իւրեանց նպատակ դնելով զէնքի զօրութեամբ գահավիժել Շահինգիրէյին և

բացնել և վերջնականապէս ստորագրել, յաջողում է օրինական խան ճանաչել տալ Ջահինգիրէյին, որի խան լինելու իրաւունքն այնքան յամառութեամբ մերժում էր սուլթանը։

Այժմ Ռուսաստանին մնում էր մի երկրորդ քայլն անել, որ կարողանայ խպառ տիրանալ Ղրիմին. Նորան մնում էր ջանք թափել աղքատացնելու ազնուական դասակարգը և իրան խանին, որպէս զի դոքա նիւթական կարօտութիւնից հարկադրուած ստիպուած լինին իրանից նիւթական օժանդակութիւն ու նպաստ ստանալ և երկիրն իւր ձեռքը մատնել։ Այդ լինում է մի շատ յաջող քաղաքականութիւն, որ շատ շուտով պսակւում է կատարեալ յաջողութեամբ, անվրէպ հասցնելով Ռուսներին նոցա իւրեանց առաջ դրած վերջնական նպատակին. Ռուսաստանին քաջ յայտնի էր, որ Ղրիմի խանութեան գլխաւոր աշխատաւոր դասակարգը կազմում են Թերակղզում շատ ժամանակներից 'ի վեր ապրող քրիստոնեաները, յայտնի է լինում, որ քրիստոնեաներն են հմուտ արհեստաւորները, երկրագործները, պարտիզպանները, այգեպանները, ձկնորսներն ու առևտրականները, որոնք իւրեանց աշխատանքով ծաղկեցնում են երկիրը, կերակրում են մուրզաներին և եկամուտ են տալիս խանի գանձարանին, իսկ բուն թաթարները—հասարակ դասակարգը պարապում է միայն անասնապահութեամբ ու խաշնարածութեամբ, ազնուականները պատերազմական և երկրի կառավարութեան գործերով։ Այդ պատճառով էլ հենց Եկատարինէ կայսրուհու նշանաւոր համհարզները միտք են յղանում Ղրիմի խանութեան հենց այդ մեծ և կարևոր աղբիւրը սպառեցնել, խանին և մուրզաներին հենց այդ առատ եկամտի հասոյթից զրկել։ Որոշւում է քրիստոնեաներին ձեռքից եկած ամեն միջոցներով համոզել, որ նոքա թողնեն իւրեանց բնակութեան տեղերը և տեղափոխուեն Ռուսաստան։

Ահա Ռուսաց այդ քաղաքականութեան հետևանքն է լինում Ղրիմի հայոց գաղթականութիւնը, որի մասին մենք վերը յիշեցինք։

## Բ.

Թէ երբ էին առաջին անգամ հայերը գաղթել իւրեանց հայրենիքից և բնակութիւն հաստատել Տաւրիկեան Թերակղզում,—մեզ այդ լաւ յայտնի չէ, որովհետև այդ մասին մեր ձեռքը ոչ օտար և ոչ ազգային աղբիւրներից ոչ մի վաւերական յիշատակարան չի հասել։ Հայ և օտար պատմաբաններից ոմանք հիմնուելով Նոր-Նախիջևանի նշանաւոր ձեռագիր Ցայսմաւուրքի յիշատակարանի վերայ, կարծում են, թէ առաջին անգամ հայերը գաղթել են Ղրիմ Հայաստանից,

մի ուրիշին իւրեանց յօժարակամ ընտրութեամբ Խախչիսարայի գահը բարձրացնել։ Տաճկաց գործակալները վխտում են Ղրիմի ամեն մի անկիւնում, խրախուսում են ապստամբներին և խոստանում են իւրեանց օգնութիւնը, մասնացոյց լինելով Օսմանեան Նաւատորմղի վերայ, որ խարիսխ ձգած-կանգնած սպասում էր պատեհ ժամի Ղրիմի ափերից ոչ շատ հեռու։

Բայց Ռուսաստանը, որ սուր աչքերով դիտում էր ամեն բան, շտապում է իւր զօրքով բռնել Ղրիմը և ապստամբութիւնն իւր բընումը խեղդել։ Երկու մեծ բանակ է ուղարկուում Ղրիմ, որոնցից մէկը ժեներալ պորուչիկ Պրոզորովսկու առաջնորդութեամբ բռնում է Թերակղզին և ջարդում, ցրուում է ապստամբների խմբերը, միւսը ժեներալ-պորուչիկ Սուվորովի զօրավարութեամբ արշաւում է Ղուբանի կողմերն այնտեղ Նողայ—թաթարներին և արիւնռուշտ լեռնորդիներին հնազանդութեան մէջ պահելու և չ՚թողնելու նոցա միանալ Թերակղզու ապստամբների հետ։ Իսկ որպէս զի Տաճկաց Նաւատորմիղը զօրք չիջեցնէ հարաւային ափը, կարգադրութիւն է լինում, որ Ծովափնեայ մասում ապրող թաթարները քաշուին հեռանան դէպի լեռները, որ նոքա ոչ թէ միայն չ՚կարողանան միանալ Տաճիկների հետ, այլ և հնարաւորութիւն էլ չունենան յարաբերութիւն ունենալ նոցա հետ։ Օսմանցիք տեսնելով Ռուսաց վաթսուն հազարանոց բանակը, տեսնելով թաթարների ապստամբութեան արագ ընկճուելը և իւրեանց կուսակցութեան պարտութիւը, չեն համարձակում թշնամական գործողութիւններ սկսել և դորանով նորից պատերազմ հրատարակելու պատճառ լինել և մնում են լոկ հանդիսատես։ Նոքա միայն շատանում են բողոքելով, թէ Ռուսաստանը հակառակ դաշնագրութեան պայմաններին ձեռնամուխ է լինում Ղրիմի խանութեան անկախութեան և այդպիսով դրժում է այն սկզբունքը, որ կազմում էր Քիւչուկ-կայնարջիկի դաշնագրութեան գլխաւոր հիմունքը և որի զօրութեամբ Ղրիմը ճանաչուած էր անկախ երկիր և ոչ մէկը՝ ոչ Ռուսաստանը և ոչ էլ Տաճկաստանը չ՚պէտք է խառնուէին խանութեան գործերին. Սակայն Ռուսաստանը նուրբ դիւանագիտական բանագնացութեամբ կարողանում է ջրել և այդ բողոքի առարկութիւնները, ասելով թէ ինքը չի խանգարել դաշնագրութիւնը, իսկ եթէ մտել է Ղրիմ ու իւր զօրքով բռնել է երկիրը,—այդ էլ արել է իւր իսկ խանի խնդիրքով ու ցանկութեամբ, որ իբրև իւր երկրի անկախ իշխան ու տէր իրաւունք ունէր խնդրելու ու հրաւիրելու որին որ ցանկանար իրեն օգնելու և ապստամբութիւնը ընկճելու։ Եւ վերջ ՚ի վերջոյ, յաջողում է վաւերացնել տալ դաշնագրութիւնը, որ Տաճկաստանը այդ բոլոր եղելութիւնը առիթ բռնելով, չէր կամենում վաւե-

բացնել և վերջնականապէս ստորագրել, յաջողում է օրինական խան ճանաչել տալ Ձահինգիրէյին, որի խան լինելու իրաւունքն այնքան յամառութեամբ մերժում էր սուլթանը։

Այժմ Ռուսաստանին մնում էր մի երկրորդ քայլն անել, որ կարողանայ իսպառ տիրանալ Ղրիմին. Նորան մնում էր ջանք թափել աղքատացնելու ազնուական դասակարգը և իրան խանին, որպէս զի դոքա նիւթական կարօտութիւնից հարկադրուած ստիպուած լինին իրանից նիւթական օժանդակութիւն ու նպաստ ստանալ և երկիրն իւր ձեռքը մատնել։ Այդ լինում է մի շատ յաջող քաղաքականութիւն, որ շատ շուտով պսակւում է կատարեալ յաջողութեամբ, անվրէպ հասցնելով Ռուսներին նոցա իւրեանց առաջ դրած վերջնական նպատակին. Ռուսաստանին քաջ յայտնի էր, որ Ղրիմի խանութեան գլխաւոր աշխատաւոր դասակարգը կազմում են Թերակղզում շատ ժամանակներից 'ի վեր ապրող քրիստոնեաները, յայտնի է լինում, որ քրիստոնեաներն են հմուտ արհեստաւորները, երկրագործները, պարտիզպանները, այգեպանները, ձկնորսներն ու առևտրականները, որոնք իւրեանց աշխատանքով ծաղկեցնում են երկիրը, կերակրում են մուրզաներին և եկամուտ են տալիս խանի գանձարանին, իսկ բուն Թաթարները—հասարակ դասակարգը պարապում է միայն անասնապահութեամբ ու խաշնարածութեամբ, ազնուականները պատերազմական և երկրի կառավարութեան գործերով։ Այդ պատճառով էլ հենց Եկատարինէ կայսրուհու նշանաւոր համհարզները միտք են յղանում Ղրիմի խանութեան հենց այդ մեծ և կարևոր աղբիւրը սպառեցնել, խանին և մուրզաներին հենց այդ առատ եկամտի հասոյթից զրկել։ Որոշւում է քրիստոնեաներին ձեռքից եկած ամեն միջոցներով համոզել, որ նոքա թողնեն իւրեանց բնակութեան տեղերը և տեղափոխուեն Ռուսաստան։

Ահա Ռուսաց այդ քաղաքականութեան հետևանքն է լինում Ղրիմի հայոց գաղթականութիւնը, որի մասին մենք վերը յիշեցինք։

## Բ.

Թէ երբ էին առաջին անգամ հայերը գաղթել իւրեանց հայրենիքից և բնակութիւն հաստատել Տաւրիկեան Թերակղզում,—մեզ այդ լաւ յայտնի չէ, որովհետև այդ մասին մեր ձեռքը ոչ օտար և ոչ ազգային աղբիւրներից ոչ մի վաւերական յիշատակարան չի հասել։ Հայ և օտար պատմաբաններից ոմանք հիմնուելով Նոր-Նախիջևանի նշանաւոր ձեռագիր Ցայսմաւուրքի յիշատակարանի վերայ, կարծում են, թէ առաջին անգամ հայերը գաղթել են Ղրիմ Հայաստանից,

Անիի կործանումից յետոյ ժդ. դարում, 1330 թուին, երբ Ղրիմին տիրապետում էին Թաթարները և Ջենովացիք, ոմանք էլ հիմնուելով այն հանգամանքի վերայ, որ Ղրիմում գտնուում են մի քանի հայկական յիշատակարաններ՝ եկեղեցիների ու վանքերի աւերակներ, մատուռներ ու խաչքարեր, որոնց մնացորդների վերայ պահուած արձանագրութիւնները և նոցա թուականները հասցնում են հայերի թերակղզում բնակուելու ժամանակամիջոցը մինչև ժ. ժա. դարերը, կարծում են, թէ հայկական գաղթականութեան սկիզբը Ղրիմում պէտք է համարել ժ.-երորդ դարը։

Մենք կարծում ենք, որ երկու կարծիքն էլ ճիշտ են, որովհետև առաջին կարծիքի հեղինակները խօսելով հայերի գաղթականութեան մասին, հասկանում են հայերի դէպի Ղրիմ արած խմբովին գաղթականութիւնը, որ, ինչպէս ցոյց է տալիս վերոյիշեալ հաւաստի յիշատակարանը, եղել է հենց 1330 թուին, երկրորդ կարծիքի հեղինակները, ընդհակառակը, խօսում են միայն հայերի Ղրիմում գոյութիւն ունենալու մասին մինչև մեծ գաղթականութիւնը, որ ամենայն հաւանականութեամբ ժ.-երորդ դարից առաջ չի եղել։

Յայտնի է, որ հայոց գաղթականութիւնը գլխաւորապէս սկսուեց Բագրատունեաց տէրութեան վերջանալուց յետոյ, երբ բիւզանդացիք կամենալով հայաստանը դատարկել հայերից, ստիպեցին հայոց իշխաններին թողնել իւրեանց հայրենիքը և իւրեանց ժողովրդով տեղափոխուել Եփրատացւոց դաշտավայրը, Կիլիկիան և Փոքր-Հայք։ Անկասկած հայ ժողովուրդը մէկ անգամ արդէն ընտելանալով գաղթականութեան, այդ տեղերում էլ հաստատ չ՚մնաց։ Առևտրական դասակարգը այդ տեղերից էլ տարածուեց Փոքր-Ասիոյ շահաստանները և Միջերկրական, Սև և Ազովի ծովերի ափերը, ուրեմն և Ղրիմի հարաւային ափը, և հետզհետէ բազմացաւ այդտեղ, կազմելով նախկին Յունաց գաղթավայրերում փոքրիկ գաղութներ, շինելով եկեղեցիներ, վանքեր, մատուռներ, և փորագրելով խաչքարեր և յետագայ սերնդին դոցա յիշատակ թողնելով։ Ենթադրում են, որ այդ հին գաղթականներից է մնացել Թէոդոսիոյ թանգարանի այն յասպիս քարը, որի վերայ քանդակուած փոքրիկ խաչերից մէկն իւր պատուանդանի վերայ ունի հետևեալ արձանագրութիւնն ու թուականը. „բարեխաւս է սուրբ նշան.քս Գրիգորին և իւր զաւակին Նհզ.“։ Նոցանից մնացած են համարում այն բոլոր խաչքարերը, որոնք կրում են իւրեանց վերա չ. պ. ջ թուականները, և վերջապէս, նոցա ձեռքով են շինուած համարում ս. Խաչի անտառի մէջ գտնուած վանքը, որի հիմունքը և աւերակները մինչև ցայսօր դեռ երևում են։ Այդ հին գաղթականութիւնը, որ պէտք է եկած լինի, ինչպէս ասացինք, ոչ մի անգա-

միջ, խմբովին, այլ հետզհետէ, բաղկացած է եղել անկասկած զանազան տարրերից, եկած զանազան տեղերից՝ Հայաստանի զանազան նահանգներից, քաղաքներից, գիւղերից և ժամանակի ընթացքում, մեծ գաղթականութիւնից յետոյ, լուծուել ու միացել է նորա հետ։ Մեծ գաղթականութիւնն իւր թուի առաւելութեամբ, իւր միապաղաղ տարրով, իւր անցի վարք ու բարքով, կեանքի տարազով և խօսակցութեան բարբառով, ինչպէս երևում է, մեծ դեր է կատարել, տալով Ղրիմի հայ գաղութին այն բնորոշ յատկութիւնն ու գծերն, որով մենք ճանաչում ենք Ղրիմի և Ղրիմից զանազան կողմեր գաղթած, տարածուած հայերին։

Նախիջևանի յիշատակարանի ասելով, Անեցիք սկսել են գաղթել իւրեանց փառաւոր քաղաքից 1062 թուին, երբ Բագրատունեաց ճոխ մայրաքաղաքը պաշարմամբ առնուել է Զարմաղան խանից և աւերմունքի ու կոտորածքի է ենթարկուել։ Նոքա դուրս գալով Շիրակից, բաժան բաժան են եղել. նոցա մի հատուածը գնացել է դէպի Վասպուրականի Վան քաղաքը, միւսը դէպի Կիլիկիոյ Սիսը, երրորդը դէպի Ջուղայ և չորրորդը դէպի Վօլգայի ստորին ջրաբաշխը։ Այդ չորրորդ մեծ հատուածն էլ հենց կազմել է Ղրիմի մեծ գաղթականութիւնը։ Գաղթականները հասնելով Վօլգայի ջրաբաշխը, նախ և առաջ բնակութիւն են հաստատել Ղազան և Հաշտարխան քաղաքների միջոցավայրում գտնուած Ախսարայում. թաթարաց հաստատած Ոսկեսարայի կամ Ղփչաղների մեծ խանութեան սահմաններում թաթարաց խանի հրամանով և թոյլտուութեամբ 1299 թուին (չխը.)։ Քառասուն և մէկ տարի մնալով այդտեղ, նոքա մտածում են տեղափոխուել Ղրիմի թերակղզին, որովհետև, նախ, մշտական յարաբերութիւն ունենալով Ղրիմեցւոց հետ, լսած են լինում այդ երկրի թէ հողի բարեբերութեան, թէ կլիմայի բարեխառնութեան և թէ քաղաքական յաջող հանգամանքների մասին և, երկրորդ, արդէն շատ նեղուած են լինում թաթարների բռնութիւնից և ցանկանում են մի տեսակ ազատուել նոցա ձեռքից ու իշխանութիւնից։ Նոքա դեսպան են ուղարկում «Ջինիւիզաց» իշխանի մօտ, որ բնակուում էր Թէոդոսիոյ „Ֆռանկ-Հիսարի“ մէջ, պայման են կապում նորա հետ՝ երթալու, բնակուելու նորա կալուածներում, և Ախսարայից դուրս գալով բոլորեքեան՝ իշխանները, ազնիւները և հասարակ ժողովուրդը, դիմում են դէպի Ղրիմի հարաւային ափը, դէպի Թէոդոսիոյ նաւահանգիստը։ Թաթարները 'ի հարկէ, աշխատում են ամեն տեսակ արգելք լինել և բռնութեամբ կասեցնել այդ գաղթականութիւնը, որ շատ վնասակար էր խանութեան, որովհետև հայերը իւրեանց ընդունակութեամբ և աշխատասիրութեամբ մեծ օգուտ էին տալիս թա-

*թարներին, կազմելով միակ երկրագործ, վաճառական և արհեստաւոր դասակարգն անապատական թաթարների մէջ, բայց չեն յաջողում․ Հայերը զէնքի զօրութեամբ ճեղքում են թաթարաց ստուար զօրութիւնը և պատերազմելով ու յաղթութիւն տանելով, հասնում են Ղրիմ 1330 թուին (չհթ.)․*

*Յայտնի է, որ Մոնղոլ-թաթարները ժգ. դարի սկզբներում հզօրանալով, գրաւեցին Ասիոյ մեծ մասը. յայտնի է նոյնպէս, որ նոքա դորանով չ'շատանալով, շարունակեցին իւրեանց արշաւանքը Չինգիզի շառաւիղների առաջնորդութեամբ և մտան Եւրոպա․ Բատին ահագին հրոսակի գլուխ անցած, անցաւ Ուրալ և Վօլգա գետերը և տակն ու վերայ անելով այդ տեղերում եղած բոլոր ազգերն ու տէրութիւնները, տիրեց ամբողջ Ռուսաստանին, հիմնեց Ոսկեսարայի կամ Ղփչաղաց խանութիւնը Վօլգայի ստորին ջրաբաշխում և եղաւ թաթարաց էլ-խաներից մէկը, առերես հնազանդութիւն միայն ցոյց տալով մեծ-խանին և անուանական կապ միայն պահպանելով Ղարաղուրումի մեծ-խանութեան հետ․*

*Ահա հենց այդ ժամանակները Բատիի օգնականներից չորսը իւրեանց ցեղերով—«Դորդ-Օջաղը» մտան Տաւրիկեան թերակղզին և այդ գեղեցիկ երկիրն էլ դարձրին Ղփչաղաց խանութեան մի մասը․ Թաթարաց մեծ խանը Մանգոխանը շնորհում է այդ թերակղզին իւր եղբօրորդի Օրան-Թիմուրին, որ խանի տիտղոս ընդունելով, տիրում է Ղրիմին, Թամանին և Ղուբանի շրջակայքին, իւր հերթով անուանական կապ պահպանելով Ոսկեսարայի հետ, ինչպէս այդ վերջինը Ղարաղուրումի հետ․*

*1261 թուին Ղրիմի խանութիւնը բաժանուում է երկու մասի՝ Ղրիմի խանութեան Տաւրիկեան թերակղզում և Նողայի խանութեան Ղուբանի և Դանուբի մէջ գտնուած երկրներում Նողայի առաջնորդութեամբ, որ ճանաչում էր Ղրիմի խանի իշխանութիւնը․ Եւ, վերջապէս, երբ քայքայուում է Ոսկեսարայի խանութիւնը և նորա աւերակների վերայ առաջ են գալիս հետզհետէ Ղազանի և Հաշտարխանի խանութիւններն իւրեանց անկախ խաներով, Ղրիմի խանութեան երկու մասն էլ նորից միանում են, մի անկախ խանութիւն են կազմում, որ գոյութիւն է ունենում ամբողջ հինգ հարիւր տարի, առաջին ժամանակները կառավարուելով Օրան-Թիմուրի յաջորդների ձեռքով, յետոյ Չինգիզի շառաւիղ Գիրէյների հարստութեան ձեռքով։*

*Օրան Թիմուրը և նորա յաջորդներն իւրեանց թաթարներով բռնում են Ղրիմի անապատային և դաշտային մասերը մինչև լեռները. որովհետև թաթարներն ինքեանք անապատական ժողովուրդ լինելով, պարապելով խաշնարածութեամբ և վրանաբնակ կեանք*

վարելով, ընտելացած էին անապատին և պէտք չունէին Ղրիմի լեռնոտ մասին և հարաւային ամենագեղեցիկ և պտղաւէտ ափին, իսկ միւս մասը—լեռների լանջերն ու ծովափնեայ մասը տալիս են վաղուց 'ի վեր այդ տեղերում ապրող քրիստոնեաներին, գլխաւորապէս Յոյներին, որոնք շատ առաջ դեռ եկած էին այդ երկիրը, հիմնած էին բազմաթիւ գաղութներ և պարապում էին առևտրով։

Առաջին Ջենովացիները, որոնք բնակութիւն են հաստատում Ղրիմում, լինում են երկու վաճառական՝ Բալդօ-Դորիա և Անտօնիօ-Դել Օրտօ։ 1281 թուին դոքա խնդրում ու մեծ փողով գնում են Օրան-Թիմուրից հին Թէոդոսիոյ ծովափը և այնտեղ շինում են իւրեանց համար առևտրական մի փոքրիկ ֆակտորիա։ Ժգ. և ժդ. դարերում հնդկաստանի առևտուրը կատարւում էր Սև ու Ազովի ծովերի վերայով, ուստի և բոլոր առևտրական ազգերը ձգտում էին այդ ծովերի ափերին առևտրական ֆակտորիաներ հիմնելու և գաղութներ հաստատելու։ Իտալիոյ փոքրիկ հասարակապետութիւնները՝ Վենետկեցիք, Ջենովացիք և Պիզացիք այդ ասպարիզում մեծ եռանդով մրցում էին միմեանց հետ։ Վենետկեցիք հեմնել էին Ազովը, Ջենովացիք էլ, ինչպէս ասացինք, հիմնում են իւրեանց ֆակտորիան հին Թէոդոսիայի տեղում, որ ժամանակի ընթացքում ստանում է «Կաֆա» անունը։

Խանը թէև պայմանի համաձայն տալիս է Ջենովացիներին հին Թէոդոսիայի տեղը, թոյլ է տալիս նոցա այդտեղ ֆակտորիա շինելու, աւևտուր անելու և մինչև անգամ առանձին հրամանագրով արգելում է հարաւային ափում ապրող միւս ազգերին առևտրական գործերով պարապելու, այդ մենաշնորհութիւնը տալով միայն Ջենովացւոց, բայց դորա հետ միասին մի ծանր պայման էլ է դնում, որ նոքա ներմուծած և արտահանած բոլոր ապրանքներից որոշեալ մաքս հատուցանեն իւր գանձարանին։

Կարճ միջոցում նորահաստատ ֆակտորիան լցւում է բազմաթիւ իտալացի գաղթականներով, որոնք յաջող առևտրական գործողութիւններով սուղ միջոցում հարստանում են, մեծացնում են իւրեանց բնակութեան տեղը և ձեռք են բերում ընդարձակ կալուածներ Կաֆայի շրջակայքում։ Սակայն մեծացնելով և ծաղկեցնելով իւրեանց գաղութը, իտալացիք նոյն ժամանակ համոզւում են, որ իւրեանց քաղաքը չի կարող լիակատար բարգաւաճման հասնել և ինքեանք ևս չեն կարող ապահով լինել, մինչև որ չամրացնեն իւրեանց քաղաքը և այդպիսով միջոց չունենան ընկած տեղը պաշտպանուելու թաթարներից, որոնք տեսնելով Ջենովացւոց օրըստօրէ հարստանալը, սկսել էին արդէն նախանձել և թշնամական յարաբե-

րութիւն ցոյց տալ։ Այդ նպատակով նոքա նախապէս քաղաքի չորս կողմը փորում են մի աՀագին փոս, որ պէտք է ծառայէր իբրև Հիմք և առաջին ամրութիւն, որի վերայ ապագայում կամաց-կամաց աննկատելի կերպով պիտի աւելանային և ուրիշ ամրութիւններ։

Կասկածոտ խանի աչքից չի խուսափում եւրոպացիների գործողութիւնը։ Նա մեկնութիւն է պաՀանջում, բայց պատասխան է ստանում, թէ այդ փոքրիկ ամրութիւններն ինքեանք շինում են իւրեանց առևտրի մրցակից և Հակառակորդ Վենետկեցիներից պաշտպանուելու Համար։ Եւ ճշմարիտ, շուտով էլ արդարանում են նոցա ասածները։ Վենետկեցիք նախանձելով Կաֆայի յառաջադիմութեան, 1293 թուին յարձակուում են Ջենովացւոց վերայ, աւերում քանդում են քաղաքը, այրում են առևտրական նաւերը և ստիպում են նոցա փախչել Թաթարների մօտ և նոցանից օգնութիւն խնդրել իւրեանց ազահ կրօնակիցների դէմ։ Վենետկեցիք, 'ի Հարկէ, կամենում են մնալ Կաֆայում և բռնել Ջենովացւոց տեղը, բայց Թաթարները վերայ են Հասնում, Հալածում նոցա և աւերուած Կաֆան նորից յանձնում նախկին տէրերին։ Այդ ժամանակ արդէն Ջենովացիք արձակ-Համարձակ, առանց դրդելու Թաթարների կասկածը, սկսում են ամրացնել իւրեանց քաղաքը։ Նոքա աՀագին քարեայ պարիսպ են քաշում քաղաքի չորս կողմը նախկին փոսի եզերքով, ամրացնում են նորան 12 աշտարակով, թողնում են եօթն դարպաս և այդպիսով գոյացնում են մի ամուր բերդ, որ յետոյ սկսում է կոչուել «Ֆռանկ-Հիսար»։ Բացի սորանից, Ջենովացիք ծովախորշում շինում են մի Հսկայական պարիսպ, որի յետևը պէտք է պաՀուէին և պաշտպանուէին նոցա առևտրական նաւերը, եթէ թշնամիները ծովի կողմից կամենային յարձակուել նոցա վերայ։

**Գ.**

Կաֆայի և առՀասարակ Ջենովացւոց բոլոր կալուածների բարգաւաճման և ծաղկելուն Համանաւանդ նպաստում են նոր Ղրիմ եկած Հայերը։ Նոքա Ջենովացւոց իշխանի Հետ կապած իւրեանց պայմանի Համաձայն նախապէս բնակութիւն են Հաստատում Ֆռանկ-Հիսարում, Կազարաթում, Սուրխաթում և դոցա շրջակայքում, յետոյ բազմանալով, տարածուում են և լցնում են այն բոլոր տարածութիւնը, որ գտնուում էր Ղարապազարի, Սուրխաթի և Կաֆայի մէջ։

Թէ որքան է լինում Հայերի թիւը Ղրիմի թերակղզում մեծ գաղթականութիւնից յետոյ —մենք դժուարանում ենք ճշդիւ որոշել։ Ցամենայն դէպս կարող ենք ասել, թէ Հայերն այդ ժամանակները

մի պատկառելի թիւ են կազմել միւս բոլոր Ղրիմաբնակ ազգերի մէջ, որովհետև հենց այդ ժամանակներն է եղել, որ Ղրիմի ծովափնեայ մասը սկսուել է օտարներից Հայաստան կամ Ծովային Հայաստան կոչուել։ Յիշատակարանի ասելով, գաղթական Հայերը շինում են Ղրիմում հարիւր հազար տուն և շատ զօրանում ու բազմանում են։ Եթէ միայն Յիշատակարանի հեղինակը «հարիւր հազար» թիւը չի գործածում իբրև անորոշ մեծութիւն ցոյց տուող մի թիւ և տուն ասելով հասկանում է այնպէս, ինչպէս այժմ մենք ենք հասկանում, կարելի է ուրեմն ամենայն ճշտութեամբ այդ ժամանակուայ Ղրիմաբնակ Հայերի թիւը հաշուել 5 հարիւր հազար հոգուց ոչ պակաս։ Չ՚պէտք է մոռանալ այն հանգամանքը, որ հինգ հոգի թիւը, որ առհասարակ մի միջին թիւ է համարուում ամեն մի տան համար, շատ էլ չի յարմարուում Հայերի տան կամ ընտանիքին, որովհետև, ինչպէս յայտնի է, Հայոց տները չեն սիրում բաժանուել և այդ պատճառով էլ շատ բազմամարդ են լինում։

Հայերը մի կողմից իւրեանց յատուկ աշխատասիրութեամբ, աչքաբացութեամբ և ընդունակութեամբ, միւս կողմից էլ երկրի բարեբերութեան և առևտրական գործերի յարմարութեան շնորհիւ շատ շուտով մոռանում են իւրեանց հայրենիքից գաղթելու և թաթարների մէջ ապրելու ժամանակամիջոցում քաշած նեղութիւնները. Նոքա կարճ միջոցում բարւոքում են իւրեանց կեանքը, հարստանում են, ծաղկում են, կամ, ինչպէս ասում է Յիշատակարանը, զօրանում են։ Նամանաւանդ շատ առաջ է գնում առևտրական դասակարգը, յաջող հանգամանքներից օգտուելով և նաւահանգստների ու առևտրական շուկաների գործերի մեծամասնութիւնն իւր ձեռքը ձգելով։ Հայ վաճառականները յաջողութեամբ մրցում են իտալացիների հետ և իւրեանց ճարպիկութեամբ և հմտութեամբ պատուաւոր տեղ են գրաւում թէ Ջանովացի իշխանաւորների առաջ և թէ ընդհանրապէս բոլոր ազգաբնակութեան մէջ։ Նոքա վաճառում են իտալական և գերմանական գոյնզգոյն մահուդներ, անկուածներ, ապակի, գինի, մարգարիտ, կարմիր կաշի և ձեռք են բերում թաթարներից մեծ քանակութեամբ գոհարեղէն և ոսկի, որ նոքա կողոպտել ու յափշտակել էին Հնդկաստանում, Չինաստանում և Պարսկաստանում։

Նիւթական բարգաւաճման հետ զուգընթացաբար առաջ է գնում և Հայերի մտաւոր զարգացումը։ Նոքա շինում են բազմաթիւ եկեղեցիներ, վանքեր ու մատուռներ, որոնցից որը կանգուն, որը կիսակործան, որն էլ իսպառ աւերուած մինչև ցայսօր դեռ երևում են հետաքրքիր ճանապարհորդի աչքին, եթէ նա անցնում է Թէոդոսիայի արևելեան կողմից լեռների վերայով մինչև Էսկի-Ղրիմ և Ղա-

ռասու։ Յիշատակարանն ասում է, թէ գաղթականների կառուցած եկեղեցիների թիւը եղել է հազար. թէ ինչու անպատճառ հազար — մենք չ՚գիտենք. կարելի է Յիշատակարանի հեղինակը կամեցել է Անեցի գաղթականների շինարարութիւնը նմանեցնել Անի քաղաքին, որ ինչպէս ասում է աւանդութիւնը, ունեցել է հազար ու մի եկեղեցի։ Բայց մենք կարծում ենք, թէ ճշմարիտ որ Ղրիմի Հայերը խիստ շատ եկեղեցի են շինել. միայն Կաֆան ունեցել է 45 եկեղեցի, ինչպէս ցոյց են տալիս եկեղեցիների այժմուայ բազմաթիւ աւերակները և տեղերը և ինչպէս պատմում է յայտնի «Քէֆէ քաղաք ծովահայեաց» երգը, որի մէջ յիշուում են 24 եկեղեցու անուն, որոնք դեռ շէն ու զարդարուած են եղել մինչև անցեալ դարի վերջերը։ Այս բոլոր եկեղեցիները, վանքերը և մատուռները զարդարուած են եղել թանկագին ոսկէ և արծաթէ սպասներով, մետաքսեայ, բեհեզեայ, եկեղեցական զգեստներով, վարագոյրներով ու փռուածքով, ականակուռ խաչերով, սաղաւարտներով ու վակասներով։ Տաճարների պատերի մէջ դրսից ու ներսից հագցրած են եղել բազմաթիւ որձաքար և մարմարիոնեայ խաչքարեր նուրբ քանդակներով ու արձանագրութեամբ, որոնց շինելու, քանդակելու ու փորագրելու դժուար արհեստը գաղթականները բերած են եղել հայրենիքից։ Եկեղեցիներից նամանաւանդ նշանաւոր է եղել Թէոդոսիոյ Ս. Սարգիսը, որ եղել է «աթոռակալ» կամ մայր-եկեղեցի, իսկ վանքերից՝ Ս. Նշանը կամ Ս. Խաչը, որտեղ նստել են ղրիմաբնակ հայերի առաջնորդները և ամբողջ հինգ հարիւր տարի կառավարել են հայոց այդ հեռաւոր թեմը։ Բոլոր հին շինութիւնները՝ վանքերը, եկեղեցիները, մատուռները և աղբիւրների աւազանները շինուած են եղել հայկական ոճով ու ճաշակով և զարդարուած են եղել քանդակագործ փայտեայ ամուր դռներով, որոնցից շատերը գաղթականները շատ ուրիշ եկեղեցական զարդերի ու սպասների հետ միասին բերած են եղել Հայաստանից։

Ղրիմաբնակ Հայերն ունեցել են բազմաթիւ հոգևորական դաս կուսակրօն և ամուսնացեալ, որոնք դատարկաձեռն չեն անցկացրել իւրեանց օրերը։ Նոքա ամուր կապ են պահպանել Մայր-Աթոռի հետ, հոգացել են գաղթականների մտաւոր և բարոյական կրթութեան վերայ, իւրեանց խցերը դպրոց դարձնելով ժողովրդի մատաղ սերնդի կրթութեան համար, իսկ գիտնական աբեղաները «հողէ տներ» են շինել և իւրեանց կեանքն անց են կացրել, մագաղաթ պատրաստելով և թանկագին ձեռագրեր արտագրելով «ընդ հովանեաւ» բազմաթիւ վանքերի ու եկեղեցիների, որոնք շինուած են եղել սիրելի հայրենիքի եկեղեցիների ու վանքերի անուններով։

Առաջին անգամ Ղրիմի լուսաւորչեան հօտը պառակտուել է

1438 թուին։ Հռովմի պապերն օգտուելով այն հանգամանքից, որ Ղրիմի մի մասին իշխում են կաթոլիկ Ջենովացիք, հաստատում են 1320 թուին եպիսկոպոսական աթոռ Կաֆայում և ապա սկսում են ուղարկել ճիզուիթեան կարգի աբեղաներ քարոզչութեան։ Ճեզուիթները նախապէս իւրեանց նպատակ են դնում քրիստոնեայ դարձնել թաթարներին, բայց երբ այդ նոցա չի յաջողում, նոքա իւրեանց քարոզչական գործունէութիւնը փոխադրում են հայաբնակ տեղերը, օգտուելով իւրեանց աթոռակալ եպիսկոպոսի իշխանութիւնից և վայելելով Ջենովացւոց իշխանի հովանաւորութիւնը։ Սակայն հեշտ չէր և հայերին կաթոլիկ դարձնելը. Նոցա հոգևորականութիւնն արթուն էր, ինքը ժողովուրդն էլ սիրով և ամուր կապերով կապուած էր իւր հարազատ եկեղեցու հետ։ Հարկաւորում է մի երկար և յամառ մաքառումն, որի մէջ մեծ դեր է կատարում մարմնաւոր իշխանութեան ճնշումն, մինչև որ կաթոլիկները կարողանում են հասնել իւրեանց նպատակին։ Ժամանակի կոնսուլ Պուալօ Իմպերիալէն սկսում է զօրեղ կերպով իւր ազդեցութիւնը բանեցնել վիճակաւորի և հայ հարուստ դասակարգի ու ազնուականութեան վերայ, սպառնալով, որ եթէ հայերը յամառեն, կ'զրկուին իւրեանց ունեցած արտօնութիւններից, իրաւունքներից։ Նեղն ընկնելով ու ուրիշ ճար չ'գտնելով ազատուելու Ջենովացւոց բռնութիւնից, նոքա առաջին նուագ համաձայնում են միայն ընդունել պապի գլխաւորութիւնը, կարծելով, թէ այդ կաթոլիկութիւն ընդունել չի նշանակում։ Ճիզուիթները շատ զգուշութեամբ են վարուում. Նոքա, նախ, մուտ են գործում հայոց եկեղեցիները, յետոյ հետզհետէ սկսում են փոփոխել լուսաւորչական եկեղեցու ծէսերը և, վերջապէս, բանն այն տեղն են հասցնում, որ սկսում են լատիներէն աւետարան կարդալ և առհասարակ լատիներէն ժամասացութիւն էլ կատարել։ Միով բանիւ գործն այնպիսի խոհեմութեամբ ու «տակտով» է առաջ տարուում, որ հայ ժողովուրդը կամաց-կամաց ընտելանում է կաթոլիկութեան, այնպէս որ հայերը մէկ էլ աչք են բաց անում և տեսնում են, որ արդէն կաթոլիկ են։ Ազգային եկեղեցուն հաւատարիմ է մնում միայն գաղթականների հասարակ դասը—ամբոխը։

Առհասարակ Ջենովացիք սիրով են վերաբերուում դէպի հայերը, Նոցա ըստ ամենայնի հաւասար իրաւունքներ շնորհելով իտալացիների հետ։ Նոքա նամանաւանդ սիրով են վերաբերուում դէպի հայ ազնուական ու հարուստ դասակարգը, որոնցից առաջնին տալիս են մեծամեծ պատիւներ, պաշտօններ ու իշխանական իրաւունքներ, իսկ երկրորդին լիաձեռն ազատութիւն առևտրական ասպարիզում և ամեն տեսակ արտօնութիւններ։ Եւ այդ բոլորն 'ի զուր չէր, որովհետև հայերն

իօկապէս օգտաւէտ տարր էին հանդիսանում Ջանովացւոց կալուածներում նիւթականապէս և բարոյապէս։ Հայ երկրագործը բարձրացնում էր երկրի արդիւնաբեր. Դինը, արհեստաւորը ծաղկեցնում էր արհեստները, վաճառականը, բացի երկրի առևտուրը զարգացնելուց, յանձն էր առնում ամեն տեսակ զոհողութիւն բերդեր շինելու և քաղաքներն ամրացնելու գործում և, վերջապէս, հայ իշխանը բազմաթիւ մարդկանց գլուխ անցած՝ իւր զէնքի զօրութեամբ պաշտպանում էր Ջանովացւոց կալուածները թշնամիների յարձակմունքից։ Հայերն են շինում «Հայոց-բերդ» կոչուած Կաֆայի նշանաւոր ամրութիւնը, հայերն են իւրեանց զէնքի զօրութեամբ երկար ժամանակ թև ու թիկունք լինում Ջանովացւոց՝ նոցա թաթարների դէմ մղած երկարատև ու բազմաթիւ կռիւներում, վերջապէս, հայերն են լինում, որ իւրեանց իշխանների առաջնորդութեամբ կարողանում են երկար ժամանակ պաշտպանել Կաֆան Օսմանցիների յարձակմունքի ժամանակ։

1344 թուին թաթարները յարձակուում են Սուղակի վերայ և սկսում են սպառնալ Կաֆային և Ջանովացւոց միւս կալուածներին։ Ահա այդ ժամանակ հայոց մեծամեծները հաւաքուում են կոնսուլի մօտ և խորհրդակցում են նորա հետ Կաֆայի հին բերդի — «Ֆռանկ-հիսարի» մօտ մի նոր բերդ շինելու և այդպիսով աւելի ևս ամրացնելու քաղաքը։ Նոքա մտածում են այդ բերդով պաշտպանել հայոց թաղը, որ բոլորովին անպաշտպան էր, որովհետև հայերը մեծ գաղթականութեան ժամանակ «Ֆռանկ-հիսարում» բնակութեան տեղ չըգտնելով. բնակուել էին հին բերդից դուրս քաղաքի արևելեան կողմը։ Ջանովացի կոնսուլը լաւ հասկանալով հայերի դիտաւորութեան օգտակարութիւնը, ոչ միայն թոյլ է տալիս, այլ և խրախուսում է նոցա և յորդորում փութով ձեռնարկելու գործին, եռանդով առաջ տանելու և շուտով ի կատար ածելու։ Վճռում են Ֆռանկ-հիսարի պարիսպների պէս մի նոր աւելի հաստակառոյց ու աւելի մեծ տարածութիւն բռնող, աշտարակազարդ և մեծամեծ դարպասներով պարիսպ քաշել, շրջապատել ամբողջ հայոց թաղը և մէջ առնել Ֆռանկ-հիսարը, սկսելով ծովածոցի հարաւային կողմից և անցնելով լեռների վերայից դէպի ծովածոցի հիւսիսային կողմը, որտեղ գտնուում էր Ֆռանկ-հիսարի «Իսկիլէ-Ղափու» կոչուած դուռը։ Որոշուում է, որ մեծատուն հայերից իւրաքանչիւրը, որ պէտք է մասնակցէր շինութեան գործին, յանձն առնէր պարսպի միայն մի մասը շինելու և դորան համեմատ որոշեալ քանակութեամբ քար ու ատաղձ բերել տար ու կուտէր նշանակուած տեղը, իրաւունք ստանալով իւր անուամբ կոչելու իւր շինած պարսպի մասը և իւր յիշատակարանը գր-

բելու նորա վերայ։ Ասում են, թէ սորանից է առաջ եկել Ղրիմեցի գաղթականների մէջ նոցա միմեանց հարստութիւնը չափելու յայտնի տարօրինակ սովորութիւնը։ Կաֆացիք, երբ որ կամենում էին ասել, թէ այս ինչ մարդը այսքան հարստութեան տէր է, սովորութիւն էին արել ասելու, թէ այս ինչ մարդը կարող է քաղաքի ամրութիւնների համար այսքան քար տալ։

Մեծ եռանդով հայերը ձեռնարկում են գործին և կարճ միջոցում պատրաստւում է ահագին պարիսպը, որ ամեն մի 20, 40 և 60 սաժէն տարածութեան վերայ ունենում է մի մի աշտարակ որմնածերպերով և ինը դարպաս իւր բոլոր երկարութեան վերայ։

Ոմանք ասում են, թէ հայոց բերդի շինութեան պատճառը եղել է ոչ թէ թաթարների Սողդայի կամ Սուդակի վերայ յարձակուելը, այլ մի ուրիշ դէպք։ Պատմում են, որ մի անգամ Ջենովացի առևտրականներից մէկը վիճաբանութեան է բռնուում մի թաթար վաճառականի հետ, որ մի հարուած է տալիս իտալացու երեսին։ Ծագում է կռիւ և Ջենովացին սպանում է թաթարին։ Ջանիբէկ խանը ուխտում է վրէժխնդիր լինել եւրոպացի վաճառականից. Նա մարդ է ուղարկում և պահանջում, որ մարդասպանին իւր ձեռքը տան, բայց մերժումն ստանալով, գալիս, պաշարում է քաղաքը։ Ահա այդ ժամանակ, ասում են, հայերը, որոնք պաշարումից դեռ շատ առաջ տեղեկացած են լինում խանի դիտաւորութեան մասին, հաւաքւում են կոնսուլի մօտ և թոյլատւութիւն են խնդրում ամրացնելու քաղաքն իւրեանց ծախսով ամենավտանգաւոր կողմից, այն է ծովափից դէպի այն կողմը, որտեղ այժմ գտնուում է գերեզմանոցը։

Պաշարումը տևում է երկու տարի, բայց խանը և ոչ մի վնաս չի կարողանում տալ քաղաքին, որովհետև պարիսպները շատ ամուր էին և լաւ պաշտպանուած։ Ճիշտ է, խանը մտածում է մեքենաներով քանդել պարիսպները, բայց քաղաքացիք յանկարծակի դուրս են խուժում քաղաքից և այնպիսի ջարդ են տալիս նորան, որ նա ստիպուած է լինում թողնել պաշարումը և հեռանալ քաղաքից։ Նա իւր զայրոյթը թափում է Բալըխլուի վերայ, որ առնում և այրում է։ Ջենովացիք ընկնում են նորա յետևից, աւերում են Ազովի ծովի ափերը և այնպիսի սարսափ են ձգում խանի վերայ, որ նա հարկադրուում է խաղաղութեան դաշն կապելու։

Ղրիմի հայ ազնուական դասի մէջ նշանաւոր են լինում չորս իշխանական տուն կամ տոհմ՝ Պահլաւունիք, Մուղալենք, Դարեջանենք և Աղամալենք, որոնց վերայ յետագայ ժամանակներում աւելանում է և Բագրատունի տոհմը։ Սոքա մեծ յարգանք են վայելում ժողովրդից և մեծամեծ պատիւների ու պաշտօնների են արժանա-

նում «Ջինիւիզաց» իշխաններից։ Պարսպաշինութեան ժամանակ
Պաճլաւունի Տէր-Մաղաքիա աւագ երէցն իւր պապի եղբօր Թոռան
Պետրոսի հետ շինում են պարսպի մի մասը «ԵՃ. կարտի» տարածու-
թեամբ և գրում են իւրեանց յիշատակարանը նորա վերայ. Մուղա-
լենց Մարգար իշխանը Ջանովացւոց Միրին իշխանի հրամանով նշա-
նակւում է Ջինիւիզաց կալուածների պահապան և իւր զօրագնդով
նստում է Կարաբաժում, ուստի և Թաթարները սովորութիւն են
անում նորա տոհմի անունով Կարաբաժի համանուն գետը կոչել
«Մուղալլէօղէն». Խարիջանենց աւագ-պարոն Մուրատի Յովսէփ որ-
դին համարւում է Կաֆայի առաջին նախարարը. Աղամալենց Մես-
րոպ իշխանը նշանակւում է Կաֆայի չորրորդ գնդապետ, և այլն։

Այսպիսի բարւոք վիճակի մէջ ապրում է Ղրիմի հայ գաղթա-
կանութիւնը մինչև 1475 թուականը, երբ գալիս, տիրապետում են
Կաֆային Օսմանցի Տաճիկները և կոտորում, հալածանքի են ենթար-
կում հայերին ու նոցա զանազան կողմեր ցրուելու պատճառ լինում։

Օսմանցւոց արշաւանքի պատճառները զանազան աղբիւրներ
զանազան տեսակ են պատմում։ Ոմանք, ինչպէս Նախիջևանի Յիշա-
տակարանը, պատմում են, որ 1344 թուականի պատերազմներից յե-
տոյ Ղրիմի խաներն ընդհանրապէս խաղաղութեամբ են կառավա-
րւում Ջանովացւոց հետ և սիրով պահպանում իւրեանց գրած դա-
շինքը և ուխտը մինչև 1468 թուականը, երբ նորից անհամաձայնու-
թիւն է ծագում երկու ազգի մէջ, որ և Կաֆայի աւերմունքի պատ-
ճառ է լինում. Այդ թուին, ասում է Յիշատակարանը, խանը կնու-
թեան է առնում իւր որդուն Ջանովացւոց Միրին իշխանի դուստրը։
Խնամութիւն կապելուց յետոյ, Միրինը հրաւիրում է իւր մօտ փեսա-
յին, որից օգուտ քաղելով թշնամիները, սկսում են գրգռել խանին
Ջանովացւոց դէմ, ասելով, թէ Միրինը հրաւիրեց քո որդուն իւր մօտ
խորհրդակցելու, որ նորան նստեցնէ քո տեղ խան, և Միրինին խանի
դէմ, ասելով, թէ փեսադ եկել է քո մօտ, որ քեզ հալածէ ու սպա-
նէ։ Թշնամիները հասնում են իւրեանց նպատակին։ Միրինը հաւատ
ընծայելով բանսարկուների խօսքերին և կասկածելով փեսայի սիրոյ
և հաւատարմութեան վերայ, անակնկալ կերպով բռնում է նորան և
բանտարկում, տալով նորան «'ի պահեստ լատին իշխանին»։ Խանը,
որովհետև յոյս չի ունենում իւր ոյժերով յաղթելու Ջանովացւոց և
իւր որդուն ազատելու, դեսպան է ուղարկում Օսմանցւոց սուլթանի
մօտ և խնդրում նորա աջակցութիւնը, ասելով, թէ թող Կաֆա քա-
ղաքը ձերը լինի, միայն որ իմ որդուն բանտից ազատէք ու ինձ
յանձնէք։ Սուլթանը համաձայնում է և Թաթարները ցամաքից, իսկ
Թուրքերը ծովից պաշարում են քաղաքը։ Երկար ժամանակ պաշա-

րում են քաղաքը, բայց չեն կարողանում առնել, որովհետև Ֆռանկ-Հիսարը և Հայոց բերդը ամուր էին և հայոց իշխաններն միացած Ջենովացւոց հետ ոգի 'ի բւին ընդդիմանում ու պաշտպանում էին նորան։ Սակայն շուտով պաշարը վերջանում է, Ջենովացւոց զօրքը թուլանում, ինքը իշխանն էլ յոյսը կտրելով, թողնում, փախչում է։ Հայերը, մինակը, անօգնական ու անճար մնալով, ստիպուած են լինում ընդունել Թուրքերի առաջարկութիւնը, բանալ քաղաքի դըռները և անձնատուր լինել, ազատ ու անվնաս մնալու պայմանով։

Ոմանք էլ, ինչպէս Ղրիմի պատմագիր Կոնդորակին, նոյն պատմութիւնն ուրիշ տեսակ են պատմում։ Նոքա ասում են, թէ Ջենովացիք ստիպում են Մինգլիգիրեյ խանին պաշտօնանկ անել իւրեանց սահմանակից ղաւառի իշխան Էմինեկ բէկին և նորա տեղը նստեցնել են տալիս Թաթարներից ատուած մէկին։ Էմինեկ բէկն ապստամբում է խանից, մեծ կուսակցութիւն է կազմում և դեսպաններ ուղարկելով Օսմանցւոց Մէհէմմէտ բ. սուլթանի մօտ, որ այդ ժամանակներն արդէն առել էր Պօլիսը, խնդրում է նորա ձեռնտուութիւնը Ջենովացւոց դէմ, խոստանալով մտնել նորա գերիշխանութեան տակ։ Նշանաւոր սուլթանը, որ այդ ժամանակները պատրաստուած է լինում արշաւելու Իտալիա, Ալբանիա, Կանդիա և Հռոդոս և այդ նպատակի համար մի մեծ նաւատորմիղ է կազմած լինում, ըմբռնում է Էմինեկ-բէկի առաջարկութեան օգտաւէտութիւնը Օսմանեան կայսրութեան համար և պատրաստի նաւատորմիղն ուղարկում է Սև ծովը դէպի Կաֆա։ Նաւատորմղի պետ Ահմադ Կեդիկ Կապուտան փաշան հասնելով Կաֆայի նաւահանգիստը, հրամայում է նախապէս թնդանօթներն ուղղել դէպի քաղաքի պարիսպները և ռմբակոծել, յետոյ նա զօրք է իջեցնում ցամաք և չորս տեղ մարտկոց շինելով, շարունակում է ռմբակոծութիւնը ցամաքից և ծովից, ճիգ թափելով քանդել պարիսպները։ Երբ որ այսպէս հինգ օր շարունակ տևում է ռըմբակոծութիւնը և ամուր պարիսպները չ'դիմանալով, փլչելու նշաններ են ցոյց տալիս, Ջենովացւոց վերջին կոնսուլ Անտօնիօ-դելլա-Գաբելլան և նորա խորհրդական Ուբերտօ-Սկուարչիաֆիօն դուրս են գալիս քաղաքից և յանձնում են փաշային քաղաքի բանալիները, նախապէս խօսք առնելով չ'վնասել քաղաքացւոց և ձեռք չ'տալ նոցա ստացուածքին։ Ասում են, թէ դոքա կաշառուած են լինում և հէնց իւրեանց այդ գործողութեան համար ստանում են իւրեանց արժանաւոր պատիժը։ Անտօնիօն դատապարտւում է տաժանակիր աշխատանքի, իսկ խորհրդականը տարւում է Կոստանդնուպօլիս և նահատակւում է կապանքների մէջ։ Ասողներ էլ կան, թէ դաւաճանողներն եղել են ոչ թէ կոնսուլն ու նորա խորհրդականը, այլ

ութ ականաւոր մարդ հայ մեծամեծներից, որոնք ժողովրդին գրգռել են իշխանաւորների դէմ և ստիպել են նոցա քաղաքը յանձնել Թուրքերին, որի համար դոքա էլ կրել են իւրեանց արժանաւոր պատիժը։ Փաշան հրամայել է նոցա գլխատել։

Եւ զարմանալին այն է, որ այդ անհաւասար պատերազմում, բացի հայերից, ոչ ոք չի օգնել Ջենովացւոց, չ՚նայելով, որ նոքա պատերազմից դեռ շատ առաջ զգալով, որ Թուրքերը պիտի միանան խանի հետ և արշաւեն իւրեանց վերայ, օգնութիւն էին խնդրել իւրեանց Պոժից և նորա միջոցով դիմել էին Անգլիացւոց և Հունգարացւոց թագաւորներին։

Կոնդորակին Թուրքաց աղբիւրներից առնելով, ասում է, թէ այդ ժամանակները Կաֆան ունեցել է վեց հազար քրիստոնեայ ընտանիք, որոնք իւրեանց հերթով ունեցել են 30 հազար ստրուկ։

## Դ.

1475 Թուի պատերազմից յետոյ Ղրիմի խանութիւնը վասալական երկիր է դառնում Օսմանեան կայսրութեան։ Մինգլիգիրէյը, ինչպէս որ պայմանաւորուած է լինում պատերազմից առաջ, մտնում է սուլթանի գերիշխանութեան ներքոյ հետևեալ պայմաններով՝ ա. խանը լիակատար իշխանութիւն ունի իւր խանութեան մէջ. Նա ընտրուում է Գիրէյներից, բայց հաստատուում է սուլթանից. բ. Սուլթանը Ղրիմի Ծայրագոյն Թագաւորն է. Նա միայն իրաւունք ունի Թաթարներին պատերազմ տանելու, պատերազմ հրատարակելու և խաղաղութեան դաշն կապելու. գ. Սուլթանն իբրև խալիֆա համարուում է խնամակալ մահմեդական կրօնքի, ս. գերեզմանների և ուխտատեղիների, դ. Սուլթանը պահապան զօրք է պահում Գիօզլեվում։ Սակայն այդ դեռ սկզբնական պայմաններն են լինում։ Յետագայ ժամանակներում սուլթանի իշխանութիւնը գնալով զօրանում է և խանը կամաց-կամաց բոլորովին ընկնում է նորա իշխանութեան ներքոյ։ Մինգլիգիրէյի Մահմեդ որդուց յետոյ խաները սկսում են նշանակուել ուղղակի սուլթանից և համարուել նոցա տեղակալները Ղրիմում. նոքա մինչև անգամ ռոճիկ էլ են ստանում սուլթանից և նորա ցանկութեան համեմատ գահավիժուում ու գահ են բարձրանում։

Կապուտան-փաշան բռնելով Կաֆան, հրամայում է քաղաքացիներին նախ, ցուցակագրել իւրեանց ստացուածքը, որովհետև, ինչպէս ասացինք, պայմանաւորուած էր ձեռք չ՚տալ նոցա ունեցած չունեցածին։ Բայց յետոյ տեսնելով, որ ցուցակների մէջ մտել են և ստրուկները, նա հրամայում է խլել ստրուկներին նոցա ձեռքից և ստի-

պում է քաղաքացիներին նորից նոցա յետ գնել, մեծ փրկանք վճարելով։ Յետոյ օտարահպատակ վաճառականներից նա առնում է 25 հազար դուկատ տուգանք, իսկ Ջենովացիներից պահանջում և ստանում է մի այնպիսի գումար, որ հաւասար էր նոցա ստացուածքի արժէքի կիսին։ Վերջապէս, նա հրամայում է բոլոր Ջենովացիներին պատրաստուել դուրս գալու և գնալու Ստամբոլ, քաղաքի ամենաընտիր և ականաւոր երիտասարդներին ենիչար է ընտրում-առնում, սպանել է տալիս 300 քաղաքացի ամենահարուստներից և 162 վալահայլ վաճառական. առաջիններին՝ որովհետև կամենում էր տիրանալ նոցա հարստութեան, երկրորդներին՝ իբրև վրէժխնդրութիւն, որովհետև Մոլդաւացւոց Պալադինը նախընթաց տարին սպանել էր տուել թուրք գերիներին։

Բայց ամենամեծ հարուածը նա տալիս է հայերին։ Նա չշատանալով նորանով, որ կողոպտում է քաղաքի հարուստ հայերին, որ շատերին սպանել է տալիս և ընտիր երիտասարդներին ենիչէր է առնում, սպանում է և բոլոր հայ գլխաւորներին, իշխաններին, ազնուականներին և ընդհանուր կոտորածի է ենթարկում բոլոր հայերին Սուրխաթում, Ղարապազարում և միւս հայաբնակ տեղերում։ Յայսմաւուրքի Յիշատակարանը շատ հետաքրքիր մանրամասնութիւններ է պատմում հայոց գլխաւորներին սպանելու մասին։ Փաշան, ասում է նա, քաղաքն առնելուց յետոյ, երեսանց սէր է կապում հայոց առաջաւորների հետ, յաճախակի նոցա իւր մօտ խնջոյքի հրաւիրելով և խօսակցելով նոցա հետ։ Նա այդպէս է վարւում, որովհետև միտքը դրած է լինում նոցա մահմեդական կրօնքին դարձնելու։ Սակայն նա կամաց կամաց համոզւում է, որ այդ անհնարին է, որովհետև նոքա նորա բոլոր յորդորանքին պատասխանում են, թէ իրենք պատրաստ են ամեն զոհողութեան, մինչև անգամ զոհելու իւրեանց կեանքը. բայց հաւատափոխ և հաւատավաճառ լինելու չեն յօժարիլ։ Այն ժամանակ փաշան մտածում է վրէժխնդիր լինել նոցանից։ Նա մի օր համոզում է հայերին առանց զէնքի իւր մօտ խնջոյքի գալու, և երբ որ, խնջոյքը վերջանալուց յետոյ, նոքա դուրս են գալիս ապարանքից, որ գտնւում էր «Խիկլէ ղափուսի» մօտ «՚ի վերայ չորրորդ դստիկոնի պալատին», և սկսում են վայր իջնել բարձր սանդուղքից, նա հրամայում է դահիճներին մէկ մէկ սպանել նոցա և ձգել ծովը։ Այս այնուհետև պակասում է հայ բնակութիւնը Կաֆայում և ընդհանրապէս բոլոր Ղրիմում, որովհետև սպանուողը սպանւում է, գերուողը գերւում է, մնացեալ մասն էլ ահաբեկուած դուրս է գալիս թերակղզուց և ցրւում զանազան տեղեր՝ Լեհաստան, Մոլդաւիա, Վալահիա և ուրիշ տեղեր։ Ճիշդ է, հայերի Ղրիմում մնա-

ցած մասը յետագայ ժամանակներում նորից աճում է, որովհետև ՌԾԱ. թուին Հայաստանից նոր գաղթականութիւն է գալիս Ղրիմ, բայց նոքա այլևս ոչ իւրեանց թուով, և ոչ իւրեանց մտաւոր և բարոյական զարգացմամբ, ոչ էլ իւրեանց նիւթական բարօրութեամբ չեն կարողանում հասնել առաջուայ դրութեան։ Այդ նոր գաղթականութիւնը, որի թիւը և գաղթականութեան հանգամանքները մեզ լաւ յայտնի չեն, որովհետև Յիշատակարանը այդ մասին միայն հաբևանցի է յիշում, եղել է Շահ-Աբբասի արշաւանքների ժամանակները։ Յայտնի է, որ Շահ-Աբբասի և Օսմանցւոց պատերազմների ժամանակ Հայաստանի զանազան մասերը յաճախակի անտէր մնալով, ենթարկուեցան բազմատեսակ աւազակային խմբերի արշաւանքների, աւազակների, որոնք մեր պատմութեան մէջ յայտնի են «Ջալալիք» ընդհանուր անունով։ Դոքա գալիս էին, ինչպէս յայտնի է, արևմուտքից—Կիլիկիոյ և Փոքր-Ասիոյ զանազան նահանգներից և բաղկացած էին Օսմանցւոց դէմ ապստամբած կուսակալներից և Շահ-Աբբասի դէմ պատերազմող Սինան-փաշայի զօրքի մնացորդից։ Նամանաւանդ նշանաւոր էին երկու խումբ՝ Քանաքիրլի-Մահմեդլի և Թոփալ-Օսմանի, որոնք պատահելով միմեանց Այրարատի Կոտայից գաւառում, պատերազմում են միմեանց դէմ։ Թօփալ-Օսմանն այդ ճակատամարտում յաղթող հանդիսանալով, տիրապետում է Այրարատին, հալածում է Ահմադին և ինքն իր բնակութիւնը հաստատելով Արագածոտն գաւառի Կարբի աւանում, այդտեղից ուղարկում է դէպի Հայաստանի զանազան կողմերն իւր հրոսակները։ Ահա հէնց այդ ժամանակներն աւերուում ու քանդուում է, 'ի միջի այլոց, և Սիւնեաց նահանգի Ծղուկք գաւառը – Որոտն և Վաղանդ նշանաւոր աւանները, որոնց բնակիչների մի մասն իւր գլուխը գերուելուց, կողոպտուելուց և կոտորուելուց ազատելու համար, թողնում, փախչում է հեռաւոր տեղեր և գալիս է Ղրիմ։

Դոցա հետ գալիս է Ղրիմ և Աբրահամ Պահլաւունի իշխանը, որի նախնին Պետրոս իշխանը վերոյիշեալ Մաղաքիա աւագ երէցի հետ, պարսպաշինութիւնից յետոյ, վերադարձել էր Ղրիմից իւր հայրենիքը և բնակութիւն հաստատել Նախիջևանում։ Յայսմաւուրքի Յիշատակարանը պատմում է, թէ Որոտնի ընդհանուր աւերմունքի ժամանակ, երբ շատերը գերի էին վարուում, գերուում է և այդ Աբրահամը իւր քեռորդի Պետրոս Բագրատունու հետ։ Բայց դոքա ճանապարհին յաջողում են սպանել իւրեանց գերավար չորս պահապաններին և փախչում գալիս են Քէֆէ, որտեղ ազնիւ Մուշալենց Մարգարը 'ի պատիւ դոցա տոհմին շատ սիրով ընդունում է նոցա ու տալիս է բնակութիւն ու մեծամեծ ստացուածք։ Պետրոս Բագրատունին 1618 թուին

վախճանում է, իսկ Աբրահամ Պահլաւունին ամուսնանում է Մուղալենց Գէորգ իշխանի Թագուհի դստեր հետ և ունենում է այդ ամուսնութիւնից մի արու զաւակ Տրդատ անունով և մի աղջիկ Աննա անունով։ Ահա այդ բարեյիշատակ Տրդատն ու Աննան են լինում, որ շինում են Քէֆէի Ս. Նիկողայոս եկեղեցին բարձր լերան վերայ 'ի յիշատակ 1475 թուի հայ նահատակների և իւրեանց ծնողաց և իւրեանց անունները գրել են տալիս եկեղեցու արտաքին դրան վերայ. դոքա են լինում, որ գրել են տալիս Յայսմաւուրքում վերոյիշեալ նշանաւոր Յիշատակարանը և դորա վերջում դնել տալիս իւրեանց ազգաբանութեան ծառը. դոքա են լինում, վերջապէս, որ կարգադրում են, որ իւրեանց յետնորդներն ամեն տարի տօն կատարեն Ս. Նիկողայոս եկեղեցում 'ի յիշատակ նահատակների և յիշեն իւրեանց ծնողաց՝ մօրը Թագուհի դշխոյն, հօրը-Աբրահամին, ազգականներին՝ Պետրոս Բագրատունուն, աւագ-պարոն Դարիջանենց Մուրատին, Մուղալենց Մարգարին, Ակորին, Աղամալենց Թաթէլին, և հետզհետէ աճեցնեն ազգահամարութեան ծառի վերայ իւրեանց արական ճիւղերը։

1475 թուից մինչև 1778 թուականը, երբ լինում է գաղթականութիւնը դէպի Ռուսաստան, Ղրիմում մնացած հայերը միւս քրիստոնեայ ազգաբնակութեան՝ բազմաթիւ Յոյների և սակաւաթիւ Վրացիների և Վալահացիների հետ, որոնք գերուած էին և կոչւում էին «եսիրներ», հպատակում են Ղրիմի խանութեան, որ իւր սուլթանութեան կազմակերպութեամբ և կառավարութեան եղանակով մի ազնուապետական միապետութիւն էր։ Խանութեան գլուխը կանգնած էր խանը, որ կառավարում էր երկիրն ազնուական դասակարգի մասնակցութեամբ, որ և սահմանափակում էր խանի միապետական իշխանութիւնը։ Այդ ազնուականներն առաջ էին եկել Ղրիմի թերակղզին առաջին անգամ նուաճողներից և գլխաւորապէս «Դորդ-օջաղից», և կոչւում էին բէյեր։

ԺԷ. դարում իւրեանց նշանակութեամբ հռչակւում էին Նամանաւանդ բէյական հինգ տոհմ՝ Շերինեան, Բարինեան, Սեդջեվուդեան, Մանսուրեան և Արգինեան, որոնք հետզհետէ մեծամեծ կալուածների տէր են դառնում և խանութեան համարեա թէ բոլոր կառավարութիւնն իւրեանց են սեփհականացնում։ Բէյերի կալուածները կոչւում էին «բէյլիկներ» և գլխովին ենթարկուած էին բէյերի իշխանութեան։ Բէյերն էին իւրեանց բէյլիկում ապրող ժողովրդի անձնիշխան տէրն ու պարոնը. նոքա հարկ էին ժողովում նոցանից, դատում էին նոցա և մինչև անգամ մահուան պատիժ էին տալիս, թէև խանութեան մէջ կար և տէրութենական ընդհանուր դատաւոր, որ կոչւում էր «կադի-ասկեր»։ Խաները չէին խառնւում բէյերի գործերին. նոքա

մինչև անգամ գլխահարկ ևս չէին առնում բէյլիկներում ապրող ժողովրդից։ Խանութեան մէջ ոչ մի գործ չէր կարող կատարուել առանց բէյերի խորհրդին։ Խանը պէտք է խորհուրդ կազմէր և ստանար բէյերի համաձայնութիւնը պատերազմ հրատարակելու կամ խաղաղութեան դաշը կապելու համար. մի խօսքով ինքը խանն էլ մի մեծ բէյ էր, ունէր իւր առանձին բէյլիկը և զանազանուում էր միւս բէյերից միայն նորանով, որ աւելի մեծ բէյլիկ ունէր և պատերազմի ժամանակ ընդհանուր զօրավար լինելու և բէյերից մի սայլ պաքսիմատ, հազարական պիաստր և մի գունդ զօրք իւր բէյի առաջնորդութեամբ պահանջելու իրաւունք ունէր։

Բէյերի կրտսեր սերունդը կոչուում էր «էմիր-զադէ» և կազմում էր ազնուական դասակարգի երկրորդ ճիւղը կամ ստորին ազնուականութիւնը, որի անդամները յետագայ ժամանակներում սկսում են կոչուել «մրզաներ», որ ոչ այլ ինչ է, եթէ ոչ աղճատուած «էմիր զադէ» կոչումը։ Բացի տոհմական մրզաներից կային այլ ևս բազմաթիւ ուրիշ մրզաներ, որոնք իւրեանց տիտղոսն իւրեանց կալուածների հետ միասին ստացել էին խանից, նորան մի որ և է ծառայութիւն մատուցած լինելու համար դեռ այն ժամանակները, երբ խանութեան մէջ ազատ հողեր, ջրհորներ, առուներ շատ կային։

Խանից յետոյ երկրորդ տեղը տէրութեան մէջ իւր նշանակութեամբ բռնում էր «կալգա-գիրէյը», որ տէրութեան ընդհանուր զօրավարը, խանի տեղակալը և ընդհանրական բարձրագոյն դատաւորն էր, և խանի մահից յետոյ մինչև նոր խանի ընտրուելը կառավարում էր տէրութիւնը։ Երրորդ անձը տէրութեան մէջ համարուում էր «նուրեդինը», որ բռնում էր կալգա-գիրէյի տեղը նորա մահից յետոյ, և, վերջապէս, չորրորդն «օր-բէյն» էր, Պերեկոպի նահանգապետը կամ կառավարիչը։

Բէյերը, մրզաներն իւրեանց բէյլիկներից ստանում էին երեք տեսակ հարկ՝ «Ուշուր»,— տասանորդ բոլոր պտուղներից, «Ջիքեաթ» —հինգ տոկոս թռչուններից ու անասուններից և «Պեսիր»—մի տեսակ հոգևոր հարկ։ Բացի սորանից, հարկ էին առնում և օտարադաւաններին պատկանած վարելահողերից, այգիներից և պարտեզներից։ Խանն էլ ուրիշ բէյերի պէս հարկ էր ժողովում իւր բէյլիկից, բայց ոչ անձամբ, այլ «աշնաների»—կապալառուների—ձեռքով։ Խանին տուած «Ուշուրը» տասանորդ չէր, $^1/_8$ մասը։ Հայերն էլ միւս քրիստոնեաների հետ միասին ապրում էին խանի, բէյերի և մրզաների կալուածներում և ենթարկուած էին այն հարկապահանջութեան, որին ենթարկուած էին և միւս քրիստոնեանները և թաթար ժողովրդի հասարակ դասակարգը։ Ղրիմի խանութեան մէջ, եթէ չ՛հաշուենք

վերոյիշեալ փոքրաթիւ եսիրներին, ստրկութիւն չ՚կար ընդհանուր մտքով, բայց որովհետև ժողովուրդն ապրում էր բէյլիկներում և ամեն բանում ենթարկուած էր խանի, բէյերի և մրզաների կամայականութեան, կարելի է ասել, որ նոցա դրութիւնը, եթէ ոչ ստրկութեան, գոնէ, խիստ ծառայութեան հաշուի էր։ Հայերը շարունակում էին պարապել իւրեանց նախկին պրադմունքներով՝ երկրագործութեամբ, պարտիզպանութեամբ, այգեգործութեամբ, արհեստներով և առևտրով, բայց արդէն չէին կարողանում առաջուայ բարօրութիւնը ձեռք բերել, որովհետև ոչ մի արտօնութիւն չունէին, մեծամեծ հարկեր էին վճարում և, որ գլխաւորն է, ենթարկուած էին մեծ կամայականութեան։ Սորա վերայ պէտք է աւելացնել և այն, որ հայերն օտարադաւան էին, որ և առիթ էր տալիս իշխող մահմեդականներին խստիւ վերաբերուելու, խէթիւ նայելու նոցա վերայ և ընկած տեղը կրօնական հալածանք յարուցանելու նոցա դէմ. մի խօսքով այստեղ ևս կրկնուում է այն, որ եղել է և այժմ էլ լինում է բոլոր մահմեդական տէրութիւններում, որոնց սահմաններում քրիստոնեաներ են բնակուում։ Սակայն Ղրիմում այս կողմնակի նեղութիւնները տեղի են ունենում միրապէս առաջին ժամանակները։ Յետագայում թաթարները բոլորովին ընտելանում են քրիստոնեաներին, ձեռք են վեր առնում կրօնական հալածանքներից ու նեղութիւն տալուց և սկսում են մինչև անգամ նոցա պաշտպանել և կրօնական արտօնութիւններ տալ։ Եւ խանը, բէյերը և մրզաներն այսպէս էին վարուում, որովհետև տեսնում էին, որ իւրեանց բէյլիկներում միակ աշխատաւոր ժողովուրդը քրիստոնեաներն են, որոնք իւրեանց պարտէզներից, այգիներից և վարելահողերից հատուցած մեծաքանակ տուրքով լցնում էին թէ խանի գանձարանը և թէ իւրեանց ձեռքի աշխատանքով մշակում ու հարստացնում էին երկիրը։ Քրիստոնեաներն էլ իւրեանց հերթով կամաց կամաց ընտելանում են թաթարներին, ծանօթանում են նոցա տէրութեան և կենցաղավարութեան, կարգ ու կանոնին և, վերջ 'ի վերջոյ, մշակում են մի տեսակ modus vivendi, որ բաւականութիւն է տալիս թէ իւրեանց և թէ տէրերին։ Այդ modus vivendi-ն, այդ իւրեանց դրութիւնից ու վիճակից բաւական լինելը, ինչպէս երևում է հանգամանքներից լինում է ոչ թէ առ հարկի, ոչ թէ որովհետև ուրիշ ճար չ՚կար, այլ բոլորովին բնական կերպով, այնպէս որ երբ 1778 թուին Ռուսները բռնում են Ղրի'ը և առիթ է ներկայանում գաղթելու Ռուսաստան և բարւոքելու իւրեանց դրութիւնը, նոքա դժուարանում են, չեն ուզում թողնել իւրեանց համար արդէն երկրորդ հայրենիք դարձած երկիրը։ Ռուսաստան գաղթած հայերն իւրեանց գաղթելուց առաջ ապրում են եղել Ղրիմի հետևեալ տեղե-

րում՝ Քէֆէ, Բախչեսարայ, Կարասուբազար, Գեօզլեւ, Ակմեչիդ, Եսկի-Կրիմ քաղաքներում և Թուզլու, Սալա, Սուլթան-Սալա, Օրթալան, Կամչըլըկ, Չուրուկսու, Բուրունչուկ Օթար և Թուպչակ գիւղերում։

## Ե.

Ղրիմի Ռուսաց զօրքի հրամանատար ժեներալ-պորուչիկ Պրոզորովսկին Ռումեանցովից հրաման ստանալով Ղրիմաբնակ քրիստոնեաներին գաղթեցնելու մասին, առաջին նուագ մեծ դժուարութեան մէջ է ընկնում, որովհետև այդ հրամանագրի մէջ չէր յիշուած, թէ արդեօք ստացուած է այդ մասին կայսրուհու հաճութիւնը և թէ պէտք է այդ մասին իմաց տալ խանին, թէ ոչ։ Դրութիւնը շատ փափուկ էր, որովհետև թաթարների ապստամբութիւնն ընկճուած էր, թէև Ղրիմը բռնուած էր Ռուսաց զօրքերով և Շահինգիրէյն ապահով բազմած իւր գահի վերայ, այնուամենայնիւ արգելքներ ու դժուարութիւններ դեռ շատ կային։ Չափաւոր կուսակցութիւնը Ռուսաց այդ քայլը մի կողմից պէտք է մեկնէր նոցա ձգտումով խառնուելու խանութեան ներքին գործերին, միւս կողմից էլ Շահինգիրէյին պիտի ներկայացնէր իբրև մի դաւաճան, որ ծախում է իւր երկիրն օտարներին։ Բարձր-Դուռն էլ պիտի օգտուէր հանգամանքներից, խլրտումն ձգէր բոլոր երկրի մէջ, գահավիժէր Ռուսաց կուսակից խանին և իւր ազդեցութիւնն առաջ տանէր։ Գաղթականութեան չէր համակրել ոչ խանը, որովհետև դորանով նա կ'ձգէր իւր վարկն իւր հպատակների առաջ, ոչ ազնուականութիւնը, որովհետև դորանով նա կզրկուէր իւր եկամտի գլխաւոր աղբիւրից, ոչ էլ ինքեանք քրիստոնեաները, որովհետև նոքա չէին ցանկանալ թողնել իւրեանց տուն ու տեղը, իւրեանց հայրերի գերեզմանները, իւրեանց սրբատեղիները։ Եթէ լինէր կայսրուհու հրովարտակը դեռ կարելի էր, թէև այդ էլ ոչ առանց մեծ դժուարութիւնների, համոզել խանին, որովհետև նա բարերարուած լինելով նորանից, չէր անցնիլ նորա խօսքից ու ցանկութիւնից. ինչ որ վերաբերում էր ազնուականներին ու քրիստոնեաներին,—կարելի էր առաջիններին նիւթական վարձատրութիւն տալով, իսկ երկրորդներին մեծամեծ արտօնութիւններ խոստանալով ու նոցա գլխաւորներին զանազան պատիւներ տալով, գործը մի տեսակ գլուխ բերել։ Իսկ կայսրուհու հրովարտակը չ'կար, որովհետև Ռումեանցովը կայսրուհուն գաղթականութեան մասին ներկայացրած իւր զեկուցագրի պատասխանը դեռ չ'ստացած արդէն 1778 թուի Փետրուարի 25-ին մասնաւորապէս հրամանագրել էր ձեռնարկել այդ գործին։ Պրոզորովսկին կշռելով բոլոր հանգամանքները և գործի դժուարութիւնն

'ի նկատի առնելով, անիրագործելի և անժամանակ է համարում այդ միջոցում այդ խնդրի յարուցանելը և այդ մտքով էլ հենց պատասխան է գրում Ռումեանցովին։ Նա կարծում է, թէ քրիստոնեաներին գաղթեցնելն առիթ կ'տայ Ղրիմի իշխանաւորներին մտածելու, թէ Ռուսաստանը կամենում է տիրել թերակղզուն, Օսմանեան կայսրութիւնն էլ Ռուսաստանի այդպիսի գործողութիւնն այդպէս կ'հասկանայ, որի հետևանքը կ'լինի պատերազմ, իսկ խանն աւելի շուտով կըհամաձայնի վայելուչ թոշակով թողնել խանութիւնը, քան թէ թոյլ տալ քրիստոնեաներին գաղթելու։ Սակայն երբ ստացւում է կայսրուհու վերոյիշեալ ուկազն ու ռեսկրիպտը և դոցա հիման վերայ նորանոր հրամանագրեր են հասնում Պրոզորովսկու ձեռքը Ռումեանցովից և Պատեօմկինից, նա անյապաղ ձեռնարկում է գործին։

Հրամանատարը նախապէս այդ մասին խորհրդակցում է «ռեզիդենտ Կոնստանտինովի հետ, որ երկար ժամանակ Ղրիմում ապրած լինելով, շատ լաւ ուսումնասիրել էր թաթարների վարքն ու բարքը, խանութեան կարգն ու կանոնը, յետոյ նա կոչում է իւր մօտ Յունաց մետրոպոլիտ Իգնատիոսին և յորդորում է նորան նպաստել այդ գործին, խոստանալով մեծամեծ արտօնութիւններ ժողովրդին և մեծամեծ պատիւներ իրեն մետրոպոլտին։ Նոյն տեսակ յորդորանք և խոստումներ լինում են և Լուսաւորչական հայերի առաջնորդ Մարկոսեան Պետրոս վարդապետին և կաթոլիկ հայերի առաջնորդ Վարդերեսովիչ Յակովբ վարդապետին։ Քրիստոնեաների հոգևոր պետերը թէև սկզբունքով տալիս են իւրեանց համաձայնութիւնը, բայց յաջողութեան մասին խօսք չեն տալիս, որովհետև գործը դժուար էր և ինքեանք վախենում էին իւրեանց հօտից։ Նոքա նախապէս կամենում են իմանալ իւրեանց ժողովրդի միտքը, կամենում են խորհրդակցել իւրեանց հօտի գլխաւորների հետ, կշռադատել գործի կարելիութիւնը, օգտաւէտութիւնն ու վնասակարութիւնը, մի խօսքով կամենում են գործի բոլոր հանգամանքներն, բոլոր մանրամասնութիւններն 'ի նկատի առնել և այնուհետև իւրեանց վերջնական որոշումն յայտնել և մի քանի պայման առաջարկել։ Հանգամանքները նպաստում են նոցա։ Ապրիլ ամիսն էր և զատկական տօների ժամանակը, ուստի և հեշտ էր նոցա յարաբերութիւն ունենալ ժողովրդի հետ, առանց դրդելու թաթար իշխանաւորների կասկածները։ Հրահանգ է տրւում քահանաներին մտնել ժողովրդի մէջ և աշխատել հասկացնել նոցա Ռուսաց առաջարկութեան միտքը և դորանից քրիստոնեաների համար ծագելիք օգուտները, հրահանգ է տրւում քարոզիչներին զգուշութեամբ քարոզել եկեղեցիներում և գաղթականութեան համար կամաց կամաց հող պատրաստել, շեշտելով իւրեանց քարոզների մէջ այն անդորր և

խաղաղ կեանքի վերայ, որ նոքա կունենան քրիստոնեայ թագուհու իշխանութեան ներքոյ, այն շլացուցիչ արտօնութիւնների վերայ, որ նոքա կ'վայելեն սերնդէ սերունդ Ռուսաստանում։ Ինքեանք հոգևոր պետերն էլ ձեռքերը ծալած չեն նստում. նոքա էլ իւրեանց մօտ մուտք ու ելք ունեցող ժողովրդի գլխաւորներին համոզում և հասկացնում են. ինքեանք էլ ընկած տեղը քարոզում ու աշխատում են ժողովրդին ընտելացնել գաղթելու մտքին։

Միւս կողմից էլ ցրուում, մտնում են ժողովրդի մէջ Պրօպօրովսկու և Կոստանդինովի բազմաթիւ հայ և յոյն էմիսսարները, որոնք բարերարուած լինելով պատիւներով, աստիճաններով և նիւթական վարձատրութեամբ, ոչ մի ջանք չեն խնայում յաջողեցնելու գաղթականութեան գործը։ Կայսրուհու ռեսկրիպտի ու ուկազի մէջ ասուած էր, թէ պէտք է գործ դնել ձեռքից եկած բոլոր միջոցները, որ քրիստոնեաները յօժարակամ համաձայնեն թողնել Ղրիմը և տեղափոխուել Ազովի և Նովոռուսիոյ նահանգները։ Ռուսաց գլխաւոր պաշտօնեաները ռեսկրիպտի այդ կտորի միտքն այնպէս էին հասկացել, թէ պէտք է գործ դնել անխտիր ամեն միջոց քրիստոնեաներին գաղթեցնելու համար, և համաձայն դորան էլ հրահանգներ էին տուել իւրեանց էմիսսարներին, իւրեանց ստորադրեալ պաշտօնեաներին։ Թաթարները, եթէ յաջողի նոցա նորից ապստամբել, միտք ունեին հալածանք յարուցանելու քրիստոնեաների դէմ և բռնութիւն գործ դնելու։ Օսմանցիք, եթէ կարողանան զօրք իջեցնել Ղրիմի ափերը, անպատճառ վրէժխնդիր կ'լինեն քրիստոնեաներից, իբրև Ռուսաց դաշնակիցներից և կողմնակիցներից. խանը բաշխել է քրիստոնեաներին Ռուսաց և հրամայել է նոցա փութով թողնել Թերակղզին և տեղափոխուել Ռուսաստան, և այլն և այլն—ահա այն սովորական յորդորանքը, որ անում էին էմիսսարները, այն սպառնալիքները, որ տալիս էին քրիստոնեաներին գաղթեցնողները, կամենալով ահ ձգել ժողովրդի սիրտը և ստիպել նոցա շուտով կատարելու Ռուսաց ցանկութիւնը։

Ժողովուրդը մի կողմից լսելով իւրեանց հոգևոր պետերի յորդորանքը, միւս կողմից էլ ահաբեկուած սպառնալիքներից, չ'գիտէր, թէ ինչ անէր. թողնել գեղեցիկ Ղրիմը, ձգել տուն-տեղ, արտ ու դաշտը պարտէզ ու այգի, եկեղեցի ու վանք և գնալ մի անծանօթ երկիր, նա չէր ուզում, բայց մնալ ու զոհ դառնալ Թաթարների ու Օսմանցիների բռնութեան դորանից էլ վախենում էր։ Երկբայութիւնը, կասկածը, տատանումը տիրել էր ամեն տեղ և առաջ բերել մի ընդհանուր խլրտում բոլոր քրիստոնեաբնակ վայրերում, որ, յայտնի բան է, չէր կարող աննկատելի մնալ, խուսափել տիրող Թաթարների աչքից,

Ինքեանք քրիստոնեաներն էլ շատ տեղ չէին ծածկում եղելութիւնը թաթարներից, արձակ-համարձակ ձեռնարկելով ծախելու իւրեանց անշարժ կալուածները և պատրաստուելով գաղթելու, պատճառը հարցնողներին էլ պատասխանելով, թէ խանը քրիստոնեաներին տուել է ռուսներին, չ՚պատրաստուողներին էլ յորդորելով, թէ ինչ էք հանգիստ նստել, միթէ չգիտէք, որ հրաման կայ թողնելու ու հեռանալու Ղրիմից. Նոյն իսկ հայ քահանաները գնում են թաթարների մօտ և յայտնում են նոցա գործի եղելութիւնը։

Սակայն չ՚նայելով այս բոլորին, քրիստոնեաները դարձեալ դանդաղ են շարժուում և գաղթել ցանկացողների թիւը շատ չնչին է լինում, իսկ մեծամասնութիւնն ամենևին հակումն չի ցոյց տալիս գաղթելու։ Այսպէս շարունակուում է գործը, մինչև որ ժեներալ-պորուչիկ Պրոզորովսկին, որի յարաբերութիւնը կանազան պատճառներով լարուած է լինում Ռումեանցովի հետ, թողնում է իւր պաշտօնը և հեռանում Ղրիմից և նորա տեղը հրաւիրուում է բռնել նշանաւոր Աղէքսանդր Վասիլեվիչ Սուվորովը, որ նոր եռանդ ու աշխոյժ է մտցնում այդ գործի մէջ։ Բայց այդ գործն այնքան դժուար է լինում, որ մինչև անգամ Սուվորովը ևս, որի վճռականութիւնը և իւր նպատակին հասնելու համար ոչ մի արգելքի առաջ կանգ չառնելը յայտնի է պատմութիւնից, առաջին նուագը տատանուում է։ Նա իւր զեկուցումներից մէկի մէջ այդ մասին գրում է Ռումեանցովին. «Մէկ Աքրանացի անցեալ խառնակութիւնների ժամանակ ամուսնացել էր մի թաթար կնոջ հետ, որ շուտով դորանից յետոյ մկրտուել էր։ Թաթար կառավարութիւնը պահանջում էր, որ կինը թողնէ քրիստոնէութիւնը և նորից մահմեդական դառնայ, ծնողներն էլ համոզում էին նորան, բայց նա չէր ուզում և իւր հերթով խորհուրդ էր տալիս իւր ծնողներին, որ նոքա էլ քրիստոնեայ դառնան։ Ռեզիդենտը թաթար պատգամաւորների ներկայութեամբ քննելով այդ գործը, եկաւ այն եզրակացութեան, որ «տրակտատին» հակառակ է այդ կնոջը կառավարութեան ձեռքը յանձնելը, որի համար և կառավարութիւնը խռովեց ինձանից և մինչև անգամ սպառնալիքներ կարդաց։ Այժմ նորին պայծառափայլութիւն իշխան Գրիգորի Ալէքսանդրովիչը գրում է ինձ քրիստոնեաների յայտնի գաղթականութեան մասին։ Առանց մեծ խռովութեան այդ գործը գլուխ բերել չի կարելի, թէև ես բոլոր ջանքս գործ եմ դնում դորանից ծագելիք խառնակութիւնների առաջն առնելու»։

Հոգևոր պետերը, վերջապէս, 1778 թուի Յուլիսի 17-ին ներկայացնում են իւրեանց պայմանները և խնդրում են, որ կայսրուհին յառաջագոյն իւր բարձր հրովարտակով հաստատէ այդ պայմանները և

յետոյ արդէն ձեռնարկում ժողովրդին տեղահան անելու գործին։ Որոշւում է երկու տեսակ պատգամաւորութիւն ուղարկել Ռուսաստան.—մէկն Ազովի նահանգն՝ առաջարկուած հողերը դիտելու համար, միւսը Պետերբուրգ՝ կայսրուհուն ներկայանալու, պայմանագիրը հաստատելու և արտօնութիւնների հրովարտակը ստանալու համար. որոշւում է նոյնպէս գաղթականութեան գործին այնպիսի ձև տալ, որ իբրև թէ Ռուսաստանը չէ, որ գաղթեցնում է ժողովրդին, այլ ինքը քրիստոնեայ ժողովուրդն է, որ թոյլտուութիւն է խնդրում տեղափոխուելու Ռուսաստան։ Միևնոյն ժամանակ Սուվորովը յորդորանքով, սպառնալիքով, աջ ու ձախ պատիւներ, աստիճաններ, ընծաներ բաժանելով, սրան-նրան ազդեցիկ մարդկանցից նիւթական վարձատրութիւն տալով, կարողանում է համոզել նոցա, որ այլ ևս գործը յետ չձգեն և հէնց մինչև պատգամաւորների վերադառնալը հոգևոր պետերը հրովարտակներ արձակեն իւրեանց հօտերին և սկսեն տեղափոխուել։ Ի միջի այլոց, Իգնատիոս մետրոպոլիտին տրւում է ընծայ փողով՝ 6,500 ռ., Պետրոս վարդապետին 2,800 ռ., Յակովբ Վարդերեսովիչին 1,500 ռ., և երեքին միասին կառքերի, արդուզարդի և ձիերի փող 2,799 ռուբլի։

Հոգևոր պետերի Սուվորովին և նորա ձեռքով Ռումեանցովին և կայսրուհուն ներկայացրած պայմանագրի կէտերից արժանի են ուշադրութեան հետևեալները. Ա. Բաւականացուցիչ վարձատրութիւն Ղրիմում թողնելիք անշարժ կալուածների համար, Բ. Արքունի ծախսով տեղափոխութիւն, Գ. Կայսրուհու անունով խոստացած հողը Դնեպր, Սամարա և Օրեօլ գետերի ջրաբաշխում, Դ. Անխառն բնակութիւն միւս բոլոր ազգաբնակութիւնից առանձին, և մի մի քաղաք իւրեանց գիւղերով իւրաքանչիւր ազգի համար առանձին, Ե. Հոգևոր պետերի իւրեանց հօտերի վերայ լիազօրութիւն, Զ. Տասնամեայ ազատութիւն բոլոր հարկերից և բոլոր մասնաւոր ու արքունի պարտականութիւնից, Է. Ազատութիւն զինուորագրութիւնից, Ը. Ազատ կառավարութիւն իւրեանց օրէնքներով և իւրեանց միջից ընտրուած մարդկանց ձեռքով տեղական նահանգապետի հսկողութեան ու պաշտպանութեան ներքոյ, Թ. Սերմացու առաջին տարին մինչև նոր ցորենի հասնելը և նիւթեր ու ատաղձ շինութիւնների համար, Ժ. Վարձատրութիւն թողնելիք ցանքսերի և թաթարների վերայ մնալիք պարտքերի փոխարէն։

Խանը, որ մինչև այդ ժամանակները չտեսնողս և չիմացողս էր լինում, թէև նորա ձեռքը թաթար իշխանաւորներից և ազնուականներից հասել էին բազմաթիւ թղթեր, որոնց մէջ մանրամասն նկարագրուած էին Ռուսաց ռեզիդենտի և լիազօրի գործողութիւն-

ները գաղթականութեան վերաբերմամբ, տեսնելով, որ, ճիշդ որ, քրիստոնեաները պատրաստուում են գաղթելու, և խելամուտ լինելով այն մեծամեծ վնասների մասին, որոնք կարող են առաջ գալ քրիստոնեաների հեռանալուց, իւր ստացած բոլոր թղթերն իւր նոցա տուած պատասխանագրերի հետ միասին ուղարկում է Սուվորովին և Ռումեանցովին, աւելացնելով իւր կողմից, թէ ինքը բոլորովին չի հաւատում այդ բանին, որովհետև չի հասկանում, թէ ինչ կարիք ունի Ռուսաստանը ղրիմաբնակ քրիստոնեաներին և ինչ օգուտ կարող է ստանալ նա, գաղթեցնելով նոցա իւր սահմանները։ Սուվորովը և Ռումեանցովը, որոնք մինչև այդ ժամանակները գաղթականութեան մասին աւելորդ էին համարել իմաց տալու Ղրիմի տիրոջը, հաւաստիանալով, որ բանն արդէն բացուած է և պաշտօնապէս մեկնութիւն պէտք է տալ իւրեանց գործողութիւնների համար, պատասխանում են, թէ այդ գործում ոչ ռեզիդենտը, ոչ էլ լիազորը մատ ունին, այլ ինքեանք քրիստոնեաներն են, որ ձգտում են գաղթելու և կայսերուհու հովանաւորութեան տակ մտնելու։ Խանը պիտի հասկանայ, որ կայսրուհին չէր կարող մերժել իւր կրօնակիցների խնդիրքը, որովհետև նոքա կարող են ենթարկուել թաթարների հալածանքին, եթէ նորից ապստամբութիւն պատահի Ղրիմում, կարող են ենթարկուել Օսմանցիների վրէժխնդրութեան, եթէ միայն նոքա գան Ղրիմ։ Սակայն խանն այդ բանից ամենևին չ'պէտք է նեղանայ, կայսրուհու պահանջը մի շատ չնչին տրիտուր է այն բոլոր բարիքների փոխարէն, որ նա առատութեամբ բաշխել է իրեն խանին և ընդհանրապէս բոլոր թաթարներին, նոցա ազատ կացուցանելով Օսմանցիների իշխանութիւնից և ծառայութիւնից, նամանաւանդ որ նիւթական վնաս էլ չի լինի, որովհետև կայսրուհին հրամայել է վարձատրել նորան այն բոլոր կորուստների համար, որ նա կունենայ քրիստոնեաների գաղթելու պատճառով։ Բայց խանը թէև առերես ցոյց է տալիս, թէ ինքը խոնարհում է կայսրուհու ցանկութեան առաջ, այնուամենայնիւ խռովում է ռեզիդենտից և լիազորից և ձեռքի տակից ամեն միջոց գործ է դնում կասեցնելու գաղթականութիւնը. նա մի կողմ թողնելով այն մեծ նիւթական վնասը, որ պէտք է ստանար իւր երկիրը գաղթականութիւնից, նա մանաւանդ ցաւում է այն բարոյական վնասի համար, որ պէտք է հասնէր իրեն դորանից։ Հակառակ կուսակցութիւնը պէտք է ասէր, թէ ահա արդարացաւ իւր ասածը,— թէ Շահինգիրէյը Ռուսի մարդ է, թէ նա իւր հայրենիքը ծախել է Ռուսներին, և այլն և այլն։

Գաղթականութեան կասեցնելն էլ արդէն շատ հեշտ էր, որովհետև մեծամասնութիւնը, ինչպէս արդէն ասացինք, չէր ուզում

թողնել իւր տունն ու տեղը կասկածում էր, չէր հաւատում խոստումներին, նամանաւանդ որ դեռ իւրեանց առաջարկած պայմաններն էլ չէին հաստատուած, պատգամաւորները դեռ չէին վերադարձած և կայսերական հրովարտակն էլ այդ մասին դեռ չէր հրատարակուած։

Հայ և յոյն հասարակութիւնների ներկայացուցիչները հաւաքւում են Բախչիսարայ և մատուցանում են խանին մի մի խնդրագիր, որոնց մէջ նոքա բողոքում են գաղթականութեան դէմ։ Հայերն իւրեանց աղերսագրի մէջ ասում էին. «Մենք-Ձեր ծառաներս և հպատակներս աճա այս երեք հարիւր տարի է, որ բնակում ենք Ձեր տէրութեան մէջ և ոչ մի անհանգստութիւն չենք տեսել։ Այժմ մեզ կամենում են հալածել, հանել այստեղից։ Մենք աղերսում ենք յանուն Աստուծոյ, Մարգարէի և Ձեր նախնեաց, որ Դուք ազատէք մեզ այս բռնութիւնից. դորա համար մենք հանապազ աղօթող կ'լինենք Բարձրեալին Ձեր կենաց համար»։

Թաթար իշխանաւորներն էլ խնդրագիր են մատուցանում Ռումանցովին և կայսրուհուն, մինչև անգամ իսկ պատգամաւորներ են ուղարկում Պետերբուրգ, և լիազօրից 25 օր ժամանակ են խնդրում մինչև որ ստացուի իւրեանց դրածների պատասխանը։ Բայց ոչ մի բան չի օգնում, 25 օրուայ ժամանակամիջոցն իսկ չի տրուում։ Կայսերուհու հրամանն անդառնալի էր. քրիստոնեաները պէտք է գաղթէին։

Այլ այնուհետև անտանելի է դառնում քրիստոնեաների դրութիւնը Ղրիմում 1778 ի Յուլիսի 17-ից մինչև Սեպտեմբերի 28-ը, երբ կատարւում է գաղթականութիւնը, որովհետև թաթարները կատաղած սկսում են սոսկալի նեղութիւններ տալ նոցա և վրէժխնդիր լինել։ Ճիշդ է, Ռուսաց զօրքերը պաշտպանում են նոցա և թաթարներից. բայց ծածուկ, Ռուսաց զօրապետների աչքից ու հսկողութիւնից հեռու տեղերում, շատ նեղութիւնների են ենթարկւում նոքա, մեծամեծ անօրէնութիւններ ու անգթութիւններ են կատարւում նոցա գլխին։ Վախը, նեղութիւնը, տաժնապն այնքան սաստիկ են լինում, որ Իգնատիոս մետրապոլիտը փախչում է Ռուսաց բանակը և պաշտպանուում զօրքի մէջ, իսկ Պետրոս վարդապետը շտապում է Բէֆէ և պատսպարուում է Հայերի բազմութեան մէջ։

Գաղթականութիւնը կատարւում է երեք մեծ խմբերով՝ Յուլիսի 18-ին, Օգոստոսի 20-ին և Սեպտեմբերի 28-ին։ Ճիշդ է, Սեպտեմբերի 28 ից յետոյ էլ դեռ մինչև Հոկտեմբերի 19 ը շարունակուում է գաղթականութիւնը, բայց դոքա արդէն յետ ընկածներն են լինում, որոնք իւրեանց մասնաւոր գործերով մնացած են լինում Ղրիմի գանազան քաղաքներում։ Միայն Հոկտեմբերի 19-ին ճանապարհ են

ընկնում դէպի Ռուսաստան գաղթականների յետևից և Իգնատիոսն ու Պետրոս Մարկոսեանը։

Գաղթականներից հարուստներն իւրեանց սայլերով, իսկ աղքատները արքունի սայլերով հասնում են Պերեկոպ կամ, ինչպէս հայերն ասում են, «Դուռն», որտեղից հետզհետէ առնում են նոցա Ազովի նահանգապետ Չերտկովի պատրաստած վեց հազար սայլերը և տեղափոխւում են դէպի Ալեքսանդրովսկի բերդաւանը և այնտեղից էլ դէպի Դնեպր գետի Սամարա և Օրիօլ ճիւղերը, որոնց մէջ գտնուած տարածութիւնը աէրութիւնը խոստացել էր տալ նոցա բնակութեան համար։ Ղրիմաբնակ հայերից գաղթում են ընդամէնը—12,598 հոգի, որոնց ինչ տեղերից լինելը և քանի հոգի արական և իգական սեռին պատկանելը կարելի է տեսնել հետևեալ աղիւսակից.

## ԱՂԻՒՍԱԿ

| | | ԻՆՉ ՏԵՂԵՐԻՑ | Երկու սեռի անձանց թիւը | | Ընդամենը |
|---|---|---|---|---|---|
| | | | Արական | Իգական | |
| Քաղաքներ | 1. | Քէֆէյից | 2,781 | 2,730 | 5,511 |
| | 2. | Բախչիսարայից | 702 | 673 | 1,375 |
| | 3. | Կարասու-Բազարից | 1,419 | 1,390 | 2,809 |
| | 4. | Գեօզլիւից | 667 | 637 | 1,304 |
| | 5. | Ակ-Մեզիդից | 145 | 114 | 259 |
| | 6. | Էսկի-Կրիմից | 87 | 73 | 160 |
| | | | 5,801 | 5,617 | 11.418 |
| Գիւղեր | 1. | Թոփլու | 112 | 100 | 212 |
| | 2. | Սալա | 115 | 109 | 224 |
| | 3. | Սուլթան-Սալա | 34 | 23 | 57 |
| | 4. | Օրթալան | 214 | 192 | 406 |
| | 5. | Մէլիք | 39 | 33 | 72 |
| | 6. | Կամըշլըկ | 62 | 59 | 121 |
| | 7. | Չուրուկ-Սու | 20 | 20 | 40 |
| | 8. | Բուրունդուկ-Օթար | 17 | 21 | 38 |
| | 9. | Թոփչակ | 7 | 3 | 10 |
| | | | 620 | 560 | 1,180 |

## Զ.

Գաղթականների Ռուսաստանի սահմաններն ոտ կոխելուն պէս, սկսուում են նոցա նեղութիւնները։ Նոքա նեղուում են ցրտաշունչ քամիներից, աշնան անձրևներից, որովհետև ցրտերն արդէն սկսուել էին, իսկ գաղթականներն անծանօթ լինելով Ռուսաստանի կլիմային, դուրս էին եկել Ղրիմից իւրեանց ամառուայ թեթև զգեստներով։ Ճիշդ է, Ազովի նահանգապետը և գաղթականութեան գլուխ կանգնած միւս գործակալները շտապում են արքունի ծախսով տաք վերնազգեստներ ու մուշտակներ բաժանել չքաւորներին, բայց ո՞ր մէկին և ո՞րքան պէտք է բաժանէին, որ կարողանային գաղթականների այդ կարօտութիւնը լրացնել։ Հարուստների թիւը շատ քիչ էր, մեծամասնութիւնը չքաւոր էր։ Բացի դորանից, գաղթականներին հարկաւոր էր հանդստութիւն, տաք անկիւն, որ նոքա, 'ի հարկէ, չէին կարող ունենալ, քանի որ պէտք է շարունակ ճանապարհ գնային, մինչև որ հասնէին նշանակուած տեղերը։

Այսպիսի հանգամանքներում նոքա ճանապարհորդում էին և անձրևի տակ, ենթարկուում էին և ցրտին և դառնաշունչ հողմերին, ստիպուած էին լինում քնել յաճախակի բացօդեայ կամ բարակ վրանների տակը, ուրեմն ի՞նչ տաք զգեստ կարող էր օգնել նոցա, եթէ մինչև անգամ բոլորեքեան ևս ունենային, բոլորեքեան ևս տաք հանդերձներ ստանային տէրութիւնից։ Նամանաւանդ ցաւալի էր մանուկների, կանանց, ծերունիների, հիւանդների և անկարողների դրութիւնը. նոքա չ'կարողանալով դիմանալ անսովոր կլիմային, երկար ճանապարհի դժուարութիւններին, զրկուած լինելով տաք, սննդարար կերակուրներից, հարիւրներով մեռնում էին և իւրեանց գերեզմանների անշուք թմբիկներով զարդարում էին այն ընդարձակ, միապաղաղ, ձանձրալի փոշոտ դաշտավայրը, որ ձգուում է Պերեկոպի պարանոցից մինչև Դնեպր գետի Սամարա և Օրիօլ ճիւղերը և որի միջով յամրաքայլ շարժուում էին Ղրիմի «մաջառ-արաբաները» և նահանգապետի ուղարկած ռուսական սայլերը, որոնց վերայ բարձուած էին գաղթականների բոլոր շարժական գոյքը, եկեղեցիների սուրբ սպասները, անօթները, զգեստները, պատկերները և մինչև անգամ խաչքարերը և եկեղեցիների հին դռները։

Ի մեծ զարմանս գաղթականների երբ նոքա հետզհետէ տեղ են հասնում, կարելի չեն համարում տալ նոցա Դնեպր, Սամարա և Օրիօլ գետերի մէջ գտնուած տարածութիւնը, որ տեսել և հաւանել էին նոցա պատգամաւորները և որ, ինչպէս ասացինք, խոստացուած էր

նոցա, որովհետև այդ տեղերը մասամբ արդէն վաղուց բռնուած էին, մասամբ էլ բռնուելու վերայ էին արքունի և կալուածատիրական գիւղացիների բնակութեամբ. կարելի չեն համարում տալ նոցա և Ե. կատարինասլաւն իւր գաւառով, որ խնդրում էին գաղթականները, ցանկալով մօտ լինել Դնեպրին, որ կարողանան օգտուել գետի ընձեռած առևտրական գործողութիւնների յարմարութիւնից և ձկնորսութիւնից։

Գաղթականների բնակութեան համար շատ ընտիր տեղեր կային և Դնեպրի ափին Աղեքսանդրեան ամրոցից սկսած դէպի ցած, բայց այդ էլ նահանգապետն անյարմար էր համարում տալու գաղթականներին, որովհետև այդ հողերը շատ մօտ էին Ղրիմին։ Կարելի չեն համարում, վերջապէս, գաղթականներին բնակեցնել, ձմեռն անցկացնելու համար, Օրիօլ գետի վերայ գտնուած Նովոսելիցա, Կամենկա, Պրոտովչի և միւս գիւղերում, ինչպէս ինքեանք գաղթականներն էին ցանկանում և ինչպէս որ արդէն խոստացուած էր նոցա, այսինքն այդ գիւղերի բնակիչների երկու տունը մէկ անելով և այդպիսով իւրաքանչիւր գիւղում տների կէսը դատարկելով և գաղթականներին տալով, այլ առաջարկում են նոցա բնակել նոյն Օրիօլ գետի վերայ գտնուած միւս գիւղերում, ուղղակի ռուս գիւղացիների տներում, որպէս զի նոքա կարողանան առաջին նուագ օգնութիւն ստանալ ռուսներից և ընտելանան այն ժողովրդի վարք ու բարքին, լեզուին ու կենցաղավարութեան տարազին, որի հետ նոքա այնուհետև պէտք է ապրէին։

Այսպիսի հանգամանքներում գաղթականներն ընկնում են անելանելի դրութեան մէջ. նոքա ստիպուած են լինում կամ իւրեանց վրաններով թափառել տեղից տեղ ձիւն ձմեռ օր, կամ միմեանցից շատ հեռու ընկած գիւղերում երկու-երեք ընտանիք մի տան մէջ ապրել և կամ այստեղ ու այնտեղ ժամանակաւոր հիւղեր շինել ու բնակել անտէր, անօգնական, որից 'ի հարկէ, շատերը հիւանդանում են, շատերն էլ մեռնում են, չենք խօսում արդէն այն անտանելի նեղութիւնների մասին, որ նոքա քաշում են չքաւորութիւնից, աւազակների յարձակումներից ու կողոպտումներից և ուրիշ այդպիսի դէպքերում սովորաբար տեղի ունեցող պատահարներից։ Դեռ այս բոլորը բաւական չէր, Պետրոս վարդապետն էլ, որ հայերի միակ խնամակալն էր, միակ ներկայացուցիչն իշխանութեան առաջ, անտանելի նեղութիւններից հիւանդանում է և 1779 թուի Յունուարին մեռնում ու թաղուում է «Սամարում», իւր սկսած գործի վերջը չ'տեսնելով։ Նորան տիրապէս հալ ու մաշ են անում ոչ այնքան ճանապարհի դժուարութիւնը և Սամարում քաշած նեղութիւնները, որ-

.քան ժողովրդի իրաւացի տրտունջը և այն միտքը, թէ ինքն է եղել պատճառ խեղճերի այդ դրութեան։ Գաղթականները մնում են բոլորովին անտէր-անտիրական, խեղճ, աղքատացած և օտարների մէջ ցրուած։ Դրութիւնը յուսահատական էր, հանգամանքները վհատեցուցիչ։

Այդ դժուար դրութեան մէջ թշուառ ժողովրդի աչքերը դառնում են դէպի Ռուսաստանի այդ ժամանակուայ հայոց առաջնորդ Յովսէփ արքեպիսկոպոս Երկայնաբազուկ Արղութեանը, որի մօտ նոքա դեռ Պետրոս վարդապետի կենդանութեան ժամանակ պատգամաւորութիւն էին ուղարկել և խնդրել, որ նա գործ դնէ իւր ազդեցութիւնը և նպաստէ հրովարտակը փութով ստանալու գործին։ Ճիշդ է, նոքա դեռ Ղրիմից հրովարտակը ստանալու համար պատգամաւոր էին ուղարկել Պետերբուրգ իւրեանց երևելիներից՝ Փառակեցի Իգնատիոսի որդի մահտեսի Յարութիւնին և Փառակեցի Տէր Ոսկանի որդի Կարապետին, բայց նոքա տեղական լեզուին և կարգ ու կանոնին անծանօթ լինելով, չէին կարողացել հասնել իւրեանց նպատակին, նամանաւանդ որ պատգամաւորներից մէկն էլ՝ Տէր-Ոսկանի որդի Կարապետը մեռել էր մայրաքաղաքում։

Նոյն ժամանակ 1779 թուի Ապրիլի 18-ին գաղթականները բողոքախառն խնդրագիր են ուղարկում ժեներալ Սուվորովին և իշխան Պատեօմկինին, նկարագրում են նոցա իւրեանց կացութիւնը և իւրեանց ցաւերին դեղ ու դարման են հայցում։ Այդ խնդրագրերից, որոնցից առաջինը գրուած է ամբողջ հայ հասարակութեան բերանից, իսկ երկրորդը Կարապետ Ոսկանեան, Սարգիս Մաթվէլեան և Յակովբ Օքսենտեան երևելիների բերանից, երևում է, որ գաղթականները, բացի նորանից, որ այդ ժամանակները չեն ստանում եղել խոստացուած պաշարեղէնը, ռոճիկը, ցանկացած հողերը, պատրաստի բնակարաններ Ղրիմում թողածի փոխարէն, բացի նորանից, որ նոքա անդադար ենթարկուել են եղել բազմադիմի զրկանքների, որից ունևորներն անգամ այն տեղն են հասած եղել, որ ողորմութիւն են ժողովում եղել, շատերն էլ չնչին փողերով իւրեանց զաւակներին սորան-նորան ծառայութեան տալով և թեփ ուտելով են անցկացնում եղել իւրեանց օրերը, վերջապէս, բացի նորանից, որ նոքա ապրելիս են եղել արձակ դաշտում, ենթարկուելով անձրևի, արևի և եղանակների զանազան փոփոխութիւնների վնասակար ազդեցութեան, որից շատ շատերը մեռնում են եղել, այլ և տեղական իշխանութիւնը ևս կամենում է եղել երկրագործներին բաժանել և հեռու Տերս գետի ափին բնակեցնել և ստիպում է եղել, որ գաղթականները ստորագրութիւն տան, թէ ինքեանք բաւական են իրենց տրուած անփայտ և

անչրգի հողերից և առհասարակ իւրեանց դրութիւնից և մինչև իսկ արգելում են եղել բարձր իշխանութեան խնդրագիր կամ որ և իցէ թուղթ ուղարկելու։

Յովսէփ արքեպիսկոպոսի մօտ ուղարկած պատգամաւորները՝ կապիտան Յովհաննէս Աբրահամեանը, Փառակեցի Պետրոսի որդի Մկրտիչը, Մահտեսի Դանիէլը և միւսները պատահում են առաջնորդին այն ժամանակ, երբ նա Հաշտարխանից դուրս գալով, ճանապարհ էր ընկել գնալու Պետերբուրգ հայոց եկեղեցին, որի շինութիւնն այդ ժամանակ արդէն վերջացել էր, օծելու։ Պատգամաւորները ներկայանում են նորան, յայտնում են նորան իւրեանց վիշտն ու ցաւերը և խնդրում են նորա աջակցութիւնը հրովարտակը ստանալու համար։ Առաջնորդն ընդունում է նոցա գուրգուրալով, քաջալերում, սիրտ է տալիս և խոստանում է նոցա համար անել ամեն բան, ինչ որ միայն իւր ձեռքից կ՚գայ և նոցա իւր հետ առնելով, տանում է Մոսկուա, այնտեղից էլ Պետերբուրգ։ Այդ ժամանակից է իսկապէս սկսւում Յովսէփի Նախիջևանցւոց հովուելու գործը, որովհետև թէև տակաւին պաշտօնապէս ոչ կաթուղիկոսից, ոչ էլ տէրութիւնից է յանձնուած լինում նորան գաղթականների հոգսը, բայց նոցա բոլոր կարևոր գործերը՝ արքունիքի հետ գաղթականների վերաբերութեամբ բանագնացութիւններ անելը, խնդիրներ մատուցանելը և հրովարտակ ստանալը նա է կատարում։

1779 թուի Նոյեմբերի 14-ին պատգամաւորների հետ միասին կայսրուհուն աղերսագիր մատուցանելուց յետոյ վերջապէս, առաջնորդը կարողանում է յաջողեցնել գործը, և Պատեօմկինի և Յովհաննէս աղա Եղիազարեանի միջնորդութեամբ ստանում է ցանկալի հրովարտակը։ Նա իսկոյն և եթ յանձնում է հրովարտակը պատգամաւորներին և ուղարկում է նոցա Կասարինասլաւ, պատուիրելով, որ նոքա շտապով ժողովեն լուսաւորչական հայերին և տանեն հրովարտակում նոցա համար նշանակուած տեղը, իսկ ինքը մնում է Պետերբուրգում աւարտելու այն գործը, որի համար իսկապէս եկել էր – օծելու նորակառոյց եկեղեցին։ Պատգամաւորները շտապում են կատարել սրբազանի հրամանը. Նոքա հասնում են գաղթականների ցրուած տեղերը, հապճեպով ժողովում են լուսաւորչական հայերին և տանում են նոցա դէպի Դօնի ափը։ Չարչարուած, տանջուած ժողովուրդը տեսնելով պատգամաւորներին և նոցանից տեղեկանալով հրովարտակի ստացուելու մասին, կարծես մի առժամանակ մոռանում է իւր կրած նեղութիւնները, իւր աղքատութիւնը, տնանկութիւնը. Նա խրախուսւում է և մի վերջին անգամ էլ ճիգ թափելով հաւաքում է իւր ունեցած-չունեցածը և հասնում է այն տեղը, որ կոչւում էր «Ռոս-

տով սրբոյն Դեմեդրի», 1780 թուի Յունուարի 14-ին։ Իսկ կաթոլիկ հայերը, որոնց թիւը հասնում է եղել 80 տան, առանձին հրովարտակ են ստանում և բնակւում «'ի Սամար առ Տնիբէր գետով», Կատարինասլաւ քաղաքի մօտ, որտեղ հրովարտակի զօրութեամբ տրւում է նոցա ընտիր հողեր թէ քաղաքում և թէ նորա շրջակայքում։

Յովսէփ արքեպիսկոպոսը մայրաքաղաքի եկեղեցու օծման շքեղ հանդէսը կատարելուց յետոյ, պատրաստւում է ճանապարհ ընկնել գնալու գաղթականների մօտ և հոգալու նոցա քաղաքի հիմնարկութեան, շինութեան և կառավարութեան գործերը, որովհետև արդէն թէ մարմնաւոր և թէ հոգևոր իշխանութիւններից նորան էր յանձնուել գաղթականների հովուելը։ Այդ մասին արդէն կայսերական հրովարտակ էր հրատարակուել և Պատեօմկինի ձեռքով հրաման էր արձակուել Ազովի նահանգապետ Չերտկովին, որ նորեկ հայերը ևս, ինչպէս Ռուսաստանի բոլոր հայերը, պէտք է ենթարկուեն Արղութեանի առաջնորդութեան իրաւասութեան։ Ստացուել էր և երջանկայիշատակ Սիմէօն կաթուղիկոսի կոնդակը, որով նա պատուիրում և յորդորում էր իւր սիրասուն աշակերտին շտապել, գնալ գաղթականների բնակութեան տեղը և սահմանել նոցա խնամելու գործը։

1780 թուի Մայիսի 9-ին առաջնորդը Յովհաննէս աղա Լազարեանի հետ ներկայանում է կայսրուհուն և Թագաժառանգին «Ցարսկի-Սելօ» ամարանոցում. նա շնորհակալութիւն է մատուցանում իրեն շնորհած պարգևների համար և մնաս բարեաւ հրաժեշտը տալով, ճանապարհ է ընկնում դէպի «Ռոստովի ֆորշտատը», ուր և ժամանում է նոյն թուի Նոյեմբերի 14-ին և ձեռնարկում է հիմնարկելու Նախիջևան քաղաքը և նորա հինգ գիւղերը՝ Մեծ-Սալա, Սուլթան-Սալա, Թոփտի, Չալթիր և Նեսուիթայ։

Տէրութիւնը բոլոր գաղթականութեան գործի վերայ ընդհանրապէս ծախսում է 75029 ռուբլի 92 կ., որի կէսը մօտաւորապէս ծախսուում է Հայերի վերայ, որովհետև Հայերն իւրեանց թուի քանակութեամբ կազմում էին համարեա թէ բոլոր գաղթականների կէսը։

Թէ ինչ առարկաների և գաղթականների ո՛ր պիտոյքների վերայ որքան է ծախսուել այդ գումարից,—այդ կարելի է տեսնել հետևեալ հետաքրքրական «ծախուց-ցուցակից», որ մենք քաղելով Ն. Դուբրովինի պաշտօնական վաւերաթղթերից, դնում ենք այստեղ։

## ՑՈՒՑԱԿ ԾԱԽՈՒՑ ԵՂԵԼՈՑ ՅԱՐՔՈՒՆՈՒՍՏ ՎԱՍՆ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՔՐԻՍՏՈՆԷԻՑ։

| | | Ռուբ. | Կ. |
|---|---|---|---|
| 1 | Իգնատիոս միտրապոլտին պարգև | 6,500 | |
| 2 | Հայոց վարդապետ Մարկոսեանին պարգև | 2,820 | |
| 3 | Կաթոլիկ պատեր Յակովբին պարգև | 1,250 | |
| 4 | Դոցա երեքին միասին կառքերի, ձիերի, լուծքի և ուրիշ պարագաների փող | 2,799 | |
| 5 | Հոգևոր և աշխարհական երևելիներին ընծաների և հիւրասիրութեան համար | 3,140 | 10 |
| 6 | Քրիստոնեաներին նոցա թողած պարտէզների համար | 4,511 | 60 |
| 7 | Չքաւոր քրիստոնեաների Թաթարներին ունեցած պարտքերի համար | 204 | 45 |
| 8 | Քրիստոնեաներին նոցա ճանապարհին սատկած եզների համար | 65 | |
| 9 | Բաժանուած է զգեստի, կերակրի և այլ կարիքների համար | 1,287 | 40 |
| 10 | Պետերբուրգ ուղարկուած յոյն և հայ պատգամաւորների ճանապարհածախսի համար | 619 | |
| 11 | Ճանապարհապաշարի համար*) | 23,345 | 67 |
| 12 | Մինչև Ալեքսանդրովսկ վարձուած սայլերի համար | 3,876 | |
| 13 | Ազովի նահանգապետի ուղարկած սայլերին վարձադրամ | 2,780 | 78 |
| 14 | Սայլերի հետ եկած սլիստաւներին | 10 | |
| 15 | Զօրքերին նոցանից առած սայլերի համար | 8,951 | 40 |
| 16 | Սատկած և կորած եզների համար | 645 | |
| 17 | Անասունների կերի և սայլերի կպրի համար | 366 | 46 |
| 18 | Տաս հատ սայլի գին և կոտրուած սայլերի կարկատանի և նորոգելու համար ծախս | 139 | 30 |
| 19 | Յունաց եկեղեցական իրեղէնների փոխադր. համար | 254 | |
| 20 | Տրուած է կոնֆիդենտին և թարգմանին | 132 | |
| 21 | Թաթարներից գնած եսիրների համար | 240 | |
| 22 | Հին Ղրիմի հայոց վանքի վանահայր վարդապետից գնած խոտի և փայտեղէնի համար | 270 | |
| 23 | Կաֆացի Ռափայէլ հային նորա խանի համար շինած կառքի փողը | 60 | |
| 24 | Իգնատիոս Յոյնին Ենիկալէցի Սպերօյից նորա ստանելիք փողը | 40 | |
| 25 | Դոնի ղազախներին նոցա ձիերը պահելու համար**) | 58 | 58 |
| 26 | Գաղթականութեան պատճառով եղած դիւանական ծախսերի համար | 124 | 70 |
| 27 | Գաղթականութեան համար զանազան կողմեր ուղարկուած սուրհանդակներին | 2,468 | 56 |
| 28 | Ղրիմի կապալառու Խոխլով վաճառականին քրիստոնեաների տարած ապրանքի մաքսագին | 4,000 | |
| 29 | Զանազան մանր ծախքեր | 252 | |
| 30 | Կազի-գէրէյ Սուլթանին նորան մի Յոյնից հասանելիք պարտքը | 120 | |
| | | 75,029 | 92 |

*) Պաշարեղէն չուզեցողները փոխարէնը փող են ստացել։

**) Բախչիսարայում քրիստոնեաների դուրս գալու պատճառով կանգնած։

Ճայադաւանները Նոր-Նախիջևան քաղաքը և նորա գիւղերը հիմնարկելուց յետոյ, մշտապէս բնակութիւն են հաստատում Ռուսաստանում, իսկ կաթոլիկները 12 տարի Կատարինասլաւում մնալուց և այդտեղ Ս. Լուսաւորիչ անունով մի փայտաշէն եկեղեցի կառուցանելուց (1781—1782) յետոյ, Յովսէփ արքեպիսկոպոսի միջնորդութեամբ իրաւունք են ստանում վերադառնալու Ղրիմ և վերաբնակելու Կարասու-Բազարում, որտեղից տիրապէս դուրս էին եկել նոքա։ Ճիշդ է, հայադաւանները ևս յուսախաբուելով և չ'հաւանելով իւրեանց նոր բնակութեան տեղերին, հակումն են ցոյց տալիս հետևելու կաթոլիկների օրինակին և մինչև իսկ մի երկու ընտանիք փախչում են Կատարինասլաւ և կաթոլիկների հետ միասին վերադառնում են իւրեանց նախկին բնակութեան տեղերը, բայց չեն յաջողում. նոքա ստիպուած են լինում իշխանութեան հանած խիստ արգելքների դէմ գլուխ խոնարհեցնել, և հետզհետէ ընտելանում են իւրեանց նոր հայրենիքին։

Ժողովրդի յուսախաբուելը և իւր նոր բնակութեան տեղերին չ'հաւանելը հետևանք էր մի կողմից նոցա տրուած տեղի անբերրիութեան և կլիմայական խստութեան, համեմատելով նորան Ղրիմի հետ, միւս կողմից էլ այն միջոցների, որ գործ էին դրել մարմնաւոր և հոգևոր իշխանութիւնները նոցա պաղթեցնելու համար։ Հետաքրքրական է այս դէպքում բուն ժողովրդի կարծիքն իւր գաղթականութեան մասին, որ մենք գտնում ենք մի ձեռագիր հաւաքածուի մէջ, որ գրուած է գաղթականութեան մասնակցող Քէֆէցի Տէր Մարտիրոս Դպիր Աւետիքով քահանայի ձեռքով 1794—1799 թուականներին Նոր-Նախիջևանի Նխսուիթայ գիւղում։ «Թվին ռմիէ ամսեանն յուլիսի, ասում է Տէր-Մարտիրոսը, խօսելով գաղթականութեան մասին, մէկէն ըսկըսվեցավ Ղրիմի եղեալ հայք և հոռոմք գրնալ 'ի ռուստաց երկիրն վասն մեր ծովացեալ մեղացն բարկացեալ էր Աստուած 'ի վերայ մեր խաբէութեամբ հանեցին քաղաքներէս տուներըս մլքերըս պաղպաղճաներըս բոլորը ձքէցինք մեր կամավըն որդոք դըստերօք սիրելօք և բարեկամօք խաղալ խըն դալով մէկ տարի ռուստաց գիւղ քաղաք մաշեցանք այս բանէս Կատարինէ թագուհին չէր խապար. լիեն մեծամեծքըն ասել են թէ Ղրիմի մէջի եղեալ թուրքն բազում նեղութիւն կուտան տիվ գիշեր. թագաւոր ապրած կէնաս քեզմէն ողորմութիւն կուխնդրեն կուհայցեն թէ ըզմեզ այս հողէս վերցնես 'ի հող բերես մենք քեզ ծառայեմք որդոց որդիս, որովհետև պիս սիրով խընդրել են հրաման է թող հայոց խընդիրքն թող հայոց հայցուածքն կատարվի, շատ բան ըլլաւն ետքը եկինք ռաստովի հողըն. Թէնի (Դօնի մի ճիւղին Չալթրցիները մինչև ցայսօր ևս

«Թեն» են ասում) քընարն քաղաքի տեղ չաբեցին տըվին մէկ մէկ հատ միրքի (?) դո ն պարգեւք արաւ Թագուհին. 5-ական բռուլլինոց որն բաղէ որն քէրբինճէ. ոմանք ուժ ունեցօղը իւր բողովըն շինեց մինչեւ բճ. բռուլլիէն բռ. գռ. դռ. բռուլլիի շինեցին. քաղաքին անունը դրին 'ի Նորըն Նախիջեւան. առաջնորդ եղեւ մեզի Յովսէփ արքեպիսկոպոսն որոյ Տէր Աստուած տացէ երկար կեանք. Ամէն»։

Ժողովրդի նոյն յուսախաբութեան եւ գաղթականութեան նոյն տխուր հանգամանքների ազդեցութեան ներքոյ է, գուցէ, գրել Տէր-Մարտիրոսը եւ այն գովասանքը Կաֆա քաղաքի մասին, որ մենք գտնում ենք նոյն ձեռագիր հաւաքածուի բազմաբովանդակ յօդուածների շարքում եւ որի մէջ Ղէֆէն ներկայանում է մեզ ինչպէս մի ամեն բանով բարեշէն եւ գեղեցիկ բնակութեան տեղ, հակառակ գաղթականների նոր բնակութեան տեղին, որ այն ժամանակ բոլորովին անշէն եւ ամայի էր։

Աստուած թող շէն պահէ զԿաֆայ,
Բոլոր պարիսպն, որ 'ի նմա կայ.
Գերահռչակ անուն նորա,
Աստուած թող շէն պահէ Կաֆայ։
Դռներն ամուր, ինչ 'ի նմա,
Եկեղեցիքն գերակայ,
Զանգակներուն ձայնն կուգայ,
Ել իւր վանքերն շրջակայ.
Աստուած թող շէն պահէ Կաֆայ։
Եպիսկոպոս մեծ եւ արքայ,
Ընտրեա մաքուր սուրբ քահանայ,
Թագ պարծանաց յերկրի վերայ.
Աստուած թող շէն պահէ Կաֆայ։
Ժամատեղաց նման չիկայ,
Իւր քահանայքն փիլիսոփայ,
Լուսոյ մաքուր շատ աբեղայ.
Աստուած թող շէն պահէ Կաֆայ։
Խոճանին դեկան կուտայ
Ծառայ դնեն եւ ազատեն զնա.
Կարգեն կնա, առնեն տղայ.
Աստուած թող շէն պահէ Կաֆայ։
Հայոց տուն է այժմ Կաֆայ,
Ձայնն ընդհանուր յերկիր կերթայ,
Ղրիմն 'ի հետ իւր մերձակայ.

Աստուած թող չէն պահէ Կաֆայ․
Ճոխայ ամէն մարդն և խնդայ,
Մանուկ և՛ մեծ և՛ երեխայ,
Յերեսնուն լոյս ցայթեալ ցոլայ.
Աստուած թող չէն պահէ կաֆայ․
Նաւն ի ծովին շատ բարեօք գայ,
Շուրջ վանքերօքն ուրախանայ.
Որդիք մարդկան 'ի յուխտ կերթան.
Աստուած թող չէն պահէ Կաֆան․
Զար թշնամին թող վերանայ,
Պատիւ հայոցս մեծանայ.
Ջաղջնին իւր քամով շուրջ գայ.
Աստուած թող չէն պահէ Կաֆայ։
Ռամիկ մարդիկ իշխանք որ կայ,
Սարկաւագեր և քահանայ
Վարդապետին հնազանդ կենայ.
Աստուած թող չէն պահէ կաֆայ։
Տիկին կանայք սպարկեշտք նոքա,
Բամեալ մարդկան պարծանք նոքա,
Ցնծայ ամէն և ուրախանայ.
Աստուած թող չէն պահէ Կաֆայ։
Հիւանդ հոգով ես ձեզ ծառայ.
Փառք Աստուծոյ յերակ ասա,
Քեզ Մարտիրոս Աստուած գթայ.
Աստուած թող չէն պահէ Կաֆայ։

## ՆՈՐ-ՆԱԽԻՋԵՒԱՆԻ ԵԿԵՂԵՑԻՆԵՐԸ

Նախիջևանն ունի եօթն եկեղեցի։ Դոցանից վեցը ծխական են, իսկ մէկը հանգստարանի, որ թէև իւր առանձին ծուխը չունի, բայց քաղաքին շատ մօտ լինելով, համարեա թէ ծխականի հաշուի է, որովհետև ունի իւր միաբանութիւնը և միւս եկեղեցիների պէս կանոնաւոր ամենօրեայ ժամասացութիւն ու պաշտօնակատարութիւն։ Դորա ծուխը քաղաքի ամբողջ հայ հասարակութիւնն է, երէցփոխն էլ ընտրում է բոլոր ծխերից։

Ի սկզբանէ, երբ դեռ հանգստարանի եկեղեցին չի եղել, ծրագրուած է եղել քաղաքում եօթն եկեղեցի շինելու Ղրիմի եկեղեցիների անունով, և հէնց այդ նպատակով էլ քաղաքիս հրապարակներից մէկն էլ նշանակուած է եղել այդ եօթներորդ եկեղեցու հա-

մար, որ պէտք է կոչուէր «Ս. Կարապետ»։ Բայց երբ շինուել, աւարտուել են վեց եկեղեցիները, ժողովուրդը համոզուել է, որ ժողովրդի բազմութեան նայելով, այդ վեց եկեղեցին աւելի է ու պակաս չէ, ուստի և յետաձգուել ու ապագային է թողնուել եօթներորդի շինութիւնը։ Իսկ երբ բարեպաշտ տիկին Եկիւլինէ Ալաջալեանի ծախսով շինուել է հանգստարանի եկեղեցին Ս. Յովհաննու Կարապետի անունով, իսպառ թողնուել է ծրագրուած եօթներորդ եկեղեցու շինութեան միտքը և հրապարակը պարտէզի է վերածուել։

## Ս. ԼՈՒՍԱՒՈՐԻՉ

Քաղաքի միջավայրում կանգնած է Ս. Լուսաւորիչ եկեղեցին, որ ամենամեծն է և համարուում է քաղաքիս մայր-եկեղեցին։ Դա շինուած է այն հրապարակում, որ մինչև ցայսօր ևս կոչուում է «Ժամի ազպար»[1] և որի չորս կողմը սկզբից, քաղաքի հիմնադրութեան օրից կառուցուել են քաղաքի խանութները, իսկ մէջտեղը մնացած ազատ տեղը նուիրուել է եկեղեցուն իբրև խանութներին անպէտք տարածութիւն։

Ս. Լուսաւորիչը, ինչպէս և քաղաքիս միւս եկեղեցիները, հիմնարկել է երջանկայիշատակ Յովսէփ արքեպիսկոպոս Արղութեանը բարեպաշտ ժողովրդի և օտար երկրի հայերի օժանդակութեամբ և կարգաւորել է, որ ապագայում դորա բակում շինուին և առաջնորդարան և՛ ուսումնարան և՛ Հոգևոր-Դատարան, և դա լինի առաջնորդանիստ ու մայր-եկեղեցի։ Ս Լուսաւորիչը միանգամից չի շինուել. առաջ հրապարակի մի անկիւնում շինուել է նորա համար փայտեայ փոքրիկ շինութիւն, յետոյ արդէն հրապարակի մէջտեղը նորա այժմուայ քարեայ շինութիւնը։ Եկեղեցու փայտեայ շինութեան տեղը մինչև ցայսօր ևս երևում է, որովհետև նորա սեղանի տեղում հանգուցեալ Յովհաննէս Մարկոսեան Պոպովը շինել է մի վանդակապատ մատուռաձև շինութիւն, որի գագաթը զարդարում է խաչը, իսկ արևելեան կողմի երեսը Ս. Լուսաւորչի մեծադիր պատկերը։

Եկեղեցու քարէ շինութիւնը, որի ծաղկաշատ և ծառաշատ բակն այժմ շրջապատուած է մեծածախս երկաթէ վանդակով, շատ երկար է տևել, որովհետև, նախ, նիւթական միջոցների պակասութիւն է եղել, երկրորդ, ջանք է եղել նորան իբրև մայր-եկեղեցի աւելի ընդարձակ ու շքեղ կառուցանելու։ Սորա հիմնարկութիւնն եղել է 1783 թուին, իսկ շինութիւնն առաջ է տարուել Ղարասուե-

[1] Ազպար—բակ։

ցի Փանոսի որդի Գասպարի աշխատանքով, որին Արքեպիսկոպոսը վերակացու է նշանակել շինութեան վերայ։ Այս մասին Սրբազանն իւր ձեռագիր «Դաւթարում» ասում է. Եւ 'ի սոյն 1783 թուին Փրկչի և 'ի Հայոց ռմլբ. Սեպտեմբերի Թ.-ին արկաք զհիմն սուրբ Լուսաւորչի սուրբ եկեղեցւոյն, որոյ վերակացու կարգեցաք Ղարասուեցի Փանոսի որդի պրն. Գասպարն, որ յոյժ հաւատարմութեամբ ծառայէր շինութեան»։

Հիմնարկութեան ժամանակ սեղանի տակը դրուել է շատ անյայտ սրբերի մասունք և մի թուղթ հետևեալ բովանդակութեամբ. «Շնորհօք ամենազօրին Աստուծոյ. հիմնեցաւ սբ. Լուսաւորիչ եկեղեցիս յամի մարդեղութեան Փրկչին մերոյ Յի. Քի. 'ի 1783 թուին, և հայոց ռմլբ. թուին. սեպտեմբերի Թ. 'ի տօնի երեք հարիւր տասն և ութ հայրապետացն սբ. ժողովուն Նիկիու, որ 'ի բարեկենդան շբթ. օրն սբ. Խաչի։ Ի թագաւորութեն Մեծի Եկատարինէ երկ. կայսերուհւոյն ամ. ռուսաց, որ զազգս մեր 'ի Ղրիմու հանեալ եբեր 'ի թաթարաց, եբեր 'ի յերկիրս ռուսաց, 'ի գւռս. Ազովու որ կոչի Ռոստով, յորում քղք. շինել. անուանեցաք Նախիջևան ըս. անուան քղքամօրն աշխրհի. և 'ի վեհագոյն ժռնգրդոյն կայսերկն. բարձրւեց.՝ մեծ իշխան Պաւլ Պետրովիչին և նորին զուգակից մեծ դշխոյ Մարիա Ֆեոդորովնին և զաւակաց նոցա՝ մեծ իշխան Ալէքսանդր Պաւլովիչին և Կոստանդին Պաւլովիչին և մեծ Դշխոյ՝ Ալէքսանդրա Պաւլովնային, և 'ի հայրապետութեան սրբոյ Աթոռոյն Էջմիածնի, տեառն Ղուկաս սրբազան կաթողիկոսին ամենայն հայոց։ Ձեռամբ սրբոյ Աթոռոյն Էջմիածնի ծայրագոյն նուիրակ, ռուսաց երկրի հայոց Առաջնորդ և նոր քաղաքիս Նախիջևանայ հիմնադիր, 'ի Քրիստոս հանգուցեալ Սիմէօն կաթուղիկոսի աշակերտ և Սանահնեցի՝ Արղութեանց Զումենց՝ իշխան Շիօշբեղի որդի Յովսէփ Արք եպիսկոպոս Մեղապարտի՝ որ օծի զհիմունս քաղաքիս և եդի 'ի չորս կողմն-սորին քաղաքիս։ Եւ զհիմն սուրբ Լուսաւորիչ եկեղեցւոյս եդի 'ի չորս անկիւն սորին՝ երեք երեք քար, յանուն երկոտասան առաքելոցն Քրիստոսի։ Եւ 'ի ներքոյ սեղանոյն եդի գքարն օծեալ յանուն Փրկչին, ընդ նմին եդի և զբազում մասունս սրբոց, բայց անյայտս. Վասն զի 'ի գալն ժողովրդեան մերոյ, 'ի Ղրիմու 'ի Սամար և 'ի Կատարինէսլաւ բնակութիւնսն, անդ այրեցեալ էր բոլոր գպեստն և անօթն Ղարասու կոչեցեալ քաղաքին, ուստի արծաթեայ պահարանք սրբոց մասանց հալեցեալք էին և նշխարք սրբոց ամբողջ մնացեալք սակայն մեզ անյայտ։ Յարուոք համարեցաք աստ ամփոփելն։ Ընդ ամեն օծաք և զհիմունս վանիցն որ յանուն Փրկչին և սուրբ խաչին։ Ըպայն հանդիպողքդ յիշեցէք զմեզ ծնօղօք մերովք»։

Թէ երբ է վերջացել շինութիւնը և օծուել,- մեզ անյայտ է։ Մենք միայն գիտենք, որ 1800 թուի օգոստոսին, երբ երջանկայիշատակ Յովսէփն արդէն ընտրուել էր կաթուղիկոս և ճանապարհ էր ընկել գնալու Ս. Էջմիածին, դեռ դորա շինութիւնը պատրաստ չի եղել։ Մեր ձեռքին գտնուում է «Ընտրեալ կաթուղիկոսի» այդ թուին Նախիջևանում արձակած կոնդակներից մէկը պարոն Աստուածատրի, գլխաւոր պարոն Կարապետ Յովհաննիսեանի, պարոն կարապետ Սահակեանի, պարոն Յարութիւն Տէր-Մկրտչեանի, պարոն Յարութիւն Ղաթրանեանի և պարոն Յովհաննէս Սարգսեանի անունով, որի մէջ կաթուղիկոսը դոցա յանձնելով Լուսաւորչի շինութեան աւարտելու գործը, մի քանի կարևոր կարգադրութիւններ է անում։ Նա հրամայում է նոցա մի առանձին մատեան կազմել և շինութեան բոլոր ծախսերը մանրամասնաբար գրել նոցա մէջ, որպէս զի յետոյ հեշտ լինի իմանալ, թէ որքանով է գլուխ եկել բոլոր շինութիւնը։ Նա յորդորում է նոցա աշխատել այդ բարեպաշտութեան գործի համար և ուրիշներին ևս համոզել նուիրաբերութիւն անել. Նա խոստանում է յանձնել նոցա իւր ձեռքում գտնուած վեց ոսկէ խաչերը և այլ կոտրատուած արծաթեղէնը, պատուիրելով հալել նոցա, ծախել և գոյացած գումարը գործ դնել շինութեան վերայ, մինչև որ ինքը կարողանայ հաւաքել և հասցնել նոցա եկեղեցու կառուցման և աւարտման համար հարկաւոր բոլոր փողը։ Նախիջևանցիք, չ'գետենք ինչ վաւերաթղթի հիման վերայ, ասում են, թէ եկեղեցու շինութիւնը վերջացել ու օծուել է 1807 թուին։

Եկեղեցու շինութեան ոճը, ինչպէս և միւս եկեղեցիներինը, ռուսական-բիւզանդական է, և ներսից ու դրսից պատերը զարդարուած են Ղրիմից բերած խաչաքարերով, որոնց վերայ գրուած արձանագրութիւնները յիշատակ են և բարեխօս զանազան բարեպաշտ մարդկանց։ Եկեղեցին ունի երեք դուռն՝ արևմտեան, հարաւային և հիւսիսային։ Արևմտեան դրան ձախ կողմը ներսից պատի մէջ հագցրած է մի փոքրիկ խաչքար, որի վերայ փորագրուած է «Յիշատակ է սուրբ նշանս Յովհաննէս եպիսկոպոսին փեսին պարոն Իւսուֆին եւ իւր ծնողացն եւ կենակցին Եղիսաբեթին որ փոխեցան առ Քրիստոս թվ. պղա. (891—1442)։ Յովհաննէս եպիսկոպոսին է այս»։

Հարաւային դրան աջ կողմը դրսից կայ մի խաչքար, որ ունի հետևեալ արձանագրութիւնը. «Սուրբ նշանս բարեխօս է Ստաթ խաթին եւ Բաղտատ խաթնի եւ իւրեանց մօրն Սուլթանչ մելիքին թվ. Ջ. (900—1451) Յունվարի է.»։

Հիւսիսային դրան ձախակողմը դրսից գտնուում է մի խաչքար, որի վերայ փորագրուած է. «Յիշ. սուրբ նշանս Ահրոն քահանային

եւ Տոնիկին եւ Ներսեսին եւ կողակցին Մարթայ խաթունին եւ իւր
որդուն Յովհաննեսին թվ. ջլ. (930—1481) Ձեռամբ Ջարակոբին»։

Բեմի ճակատին հագցրած է մի նուրբ քանդակուած խաչքար,
որի վերայ կարդացուում է. «Որ նշանիս բարեխաւս է Սիմեոն Քահ·
նին եւ իր երեցկնոջն Էմին մելքն եւ իւրեանց ծնող(ացն) թվ։ ջժգ
(913—1464) Ձեռամբ Ք. Սիմեոնին»։

Եկեղեցին ներսից խաղաներկ է, իսկ չորս հաստամարմին սիւները,
որոնք բռնում են մեծ գունից սիւնազարդ գմբէթը, մաքուր բռած են
գունաւոր մարմարիոնի ձեւով ու նմանութեամբ։ Բեմը շատ ցած է.
ունի վերնատուն, մի սեղան փոքր և մեծ վարագոյրներով, ոսկեզօծ
փառաւոր խաչկալով և երկու կողմը մի մի խորան, որոնց, չ՚գիտենք
ինչ պատճառով, Նախջևանցիք «մատուռ» անունն են տալիս։ Յա-
տակը մաքուր „պառքէ" է, պատերը զարդարած բազմաթիւ պատկեր-
ներով, որոնցից մի մասն ոսկէզօծ արծաթապատ շրջանակների մէջ
առած, կախուած են պատերից ու սիւներից, միւս մասն ուղղակի նը-
կարուած են խաղաներկ պատերի, սիւների խոյակների և գմբէթի վերայ։

Դրսից մաքուր սպիտակցրած է և գարձեալ զարդարուած պատ-
կերներով, որոնք նկարուած են թիթեղների վերայ և կպցրած դռնե-
րի ճակատին և գմբէթի վերայ սիւների մէջ։

Արևմտեան դրան առաջ շինուած է փոքրիկ գաւիթ «պառքէ»
յատակով և խաղաներկ պատերով, որի վերայ բարձրանում է ռուսա-
կան ոճի յատկանիշ եռայարկ բարձր զանգակատունը քաղաքային մեծ
ժամացոյցով։ Թէ գմբէթի և թէ զանգակատան գլուխներն ոսկեզօծ
են և զարդարուած ոսկեզօծ բարձր խաչերով, իսկ հարաւային և հիւ-
սիսային դռներն իւրեանց առաջ ունին սիւնազարդ, որ մի առան-
ձին գեղեցկութիւն է տալիս ամբողջ շինուածքին։

Եկեղեցուն այժմ պատկանում է ոչ բոլոր «ժամի ագբարը»,
այլ միայն նորա այն մասը, որ շրջապատուած է վանդակապատով,
որովհետև քաղաքն եկեղեցու հարաւային և հիւսիսային կողմերից
փողոցներ անցկացնելով, սեփականացրել է իրեն, չ՚գիտենք ինչ իրա-
ւունքով, «ժամի ագպարի» մեծ մասը և քաղաքային «սկվերներ» է
շինել, այնպէս որ մինչև անգամ նախկին փայտեայ եկեղեցու սեղանի
տեղում շինուած վերոյիշեալ մատուռը ևս ներկայումս մնացել է հիւ-
սիսային „սկվերի" մէջ բուն եկեղեցուց բաւականին հեռու։

Եկեղեցու բակում ներկայումս չ՚կան ոչ թէ միայն Յովսէփ ար-
քեպիսկոպոսի ծրագրած Առաջնորդարանը, հոգևոր Դատարանը և Լու-
սաւորչեան դպրոցը, այլ և ոչ մի շինութիւն, բացի մի փոքրիկ փայ-
տեայ կրպակից, որ մոմ է բաշխում քաղաքի և գիւղերի բոլոր հայ
եկեղեցիներին։

Գաւթի պատերի մէջ եկեղեցու արևմտեան դրան աջ ու ձախ կողմը կանգնեցրած են երկու մեծ խաչքար, որոնցից մէկի-աջակողմեանի վերայ փորագրուած է. «Կանգնեցաւ սբ խաչս պր Յովակիմին եւ կենակցին Մարիամին եւ զաւակացն Մինասին, Խասպէքին եւ ծնօղացն Ածատրին եւ Եաղուբին եւ եղբարցն Լոյսպարոնին եւ Խաչերեսին եւ Նիկողոսին եւ Լուսեղէնին եւ այլ զարմից. Ձեռամբ Մարգար գրչի թվին ռճկբ (1162—1713)»: Իսկ միւսի-ձախակողմեանի վերայ փորագրուած է. „Կանգնեցաւ սբ նշանս 'ի բարեխաւսութիւն պր. Սիմէոնին եւ հայրն (Հօրն) պր. Սիրամիրին, մօրն մելիք խաթին եւ կողակցին եւ զաւակացն: թվ: պձ (880—1431). Ձեռագործ է Սիմէօն վարպետին. Յիշ. է քարխանանի Սիմէին. Յունվարի ժէ»:

Նոյն գաւթի մէջ մուտքի աջ ու ձախ կողմը պատերի մէջ դէմուդէմ հագցրած են երկու մեծ մարմարիոն քարեր, որոնցից մէկի վերայ փորագրուած է հետեւեալ հետաքրքրական արձանագրութիւնը. „Դպրատունս այս եւ ուսումնարանս կանգնեցաւ յանուն սրբոյ հօրն մերոյ Գրիգորի Լուսաւորչին, առդեամբ Ջուղայեցի գերապայծառ իշխան աղա Յօհանջանին յանջնջելի իւր եւ կենակցոյն հանգուցեալ Գիւլիստան տիկնոջն, պապուն, Գէրաք աղային, հանուն թագուհի տիկնոջն եւ դստերացն եւ ամենայն ազգայնոցն. յամի Փրկչին 1790.» Իսկ միւսի վերայ փորագրուած է հետեւեալ դրուատը

Յօրինուած պայծառ յարկիս նորասքանչ,
Արամեանց ծագեալ ջինջ արփւոյն նանանչ,
Ուշիմ Յօհանջանու, իշխան քաջալանջ,
Րամին Գէրաքեան պարծանք իսկաքանջ
Վեհափառ դպրոց գիտնոց 'ի կառառ,
Ջաւասոց ամրոց, շնորհաց վանառ
Սուլեալ Ջայկազանց հրաւիրման նառ,
Դասուց որք մանկանց դահեակ անաչառ.
Եկ յոյս, խրախոյս Ասքանազեան փունջ
Երջանկիս բաշխոյս ձօնել համառունչ
Փողեա' 'ի հռչակ հրնուանօք աննինջ,
Տենչալի վինակ երախտեացս անջինջ:

Ս. Լուսաւորիչն ունի մեծաքանակ մեծագին զգեստներ, եկեղեցական թանկագին սպասներ ու զարդեր և երկու մասունք՝ Ս. Լուսաւորչի և կենաց փայտի: Առաջինը մի արծաթեայ ոսկեզօծ մատները խաչակնքելու ձևով շինած և մատին եպիսկոպոսական մատանի հագցրած աջ է, որի մէջ ներփակած է մասունքը, իսկ երկրորդը կենաց

փայտի մասն է, արծաթի մէջ առած և խաչի ձևով շինած։ Բացի սրանցից, եկեղեցին ունի և շատ ձեռագիր մատեաններ, որոնցից ութը միայն արծաթապատ աւետարան են, և բազմաթիւ հին, այժմ անգործածելի, Ղրիմից բերուած խաչեր, վակասներ, բուրվառներ և ուրիշ այսպիսի եկեղեցական սպասներ։

Ս. Լուսաւորիչ եկեղեցու առաջ բարձրանում է Եկատարինէ Բ. կայսրուհու շքեղ արձանը, որ 1893 թուին կանգնեցրել է քաղաքի հայ հասարակութիւնն 'ի նշան իւր երախտագիտութեան։ Արձանը ձուլածոյ է, կանգնեցրած չղկուած ու ապակու պէս փայլեցրած որձաքար գեղեցիկ պատուանդանի վերայ, որի մի կողմում ուռուցիկ ձևով քանդակուած է Յովսէփ Արղութեանի վեղարազարդ գլուխը, միւս կողմում քաղաքի նշանը և հիմնարկութեան թուականը, իսկ երրորդ և չորրորդ կողմերում գտնւում են ռուսերէն ոսկետառ արձանագրութիւններ։ Պատուանդանի եկեղեցու դէմ ու դէմ գտնուած երեսի վերայ գրուած է. «Աղեքսանդր Գ. կայսեր թագաւորութեան ժամանակ 1893 թուին», իսկ հակառակ, դէպի մեծ փողոցը գտնուած երեսի վերայ—«Եկատարինէ Բ. կայսրուհուն երախտապարտ հայերը»։

## Ս. ՆԻԿՈՂԱՅՈՍ.

Քաղաքիս հիւսիս-արևմտեան անկիւնում շինուած է Ս. Նիկողայոս եկեղեցին, որ համարւում է քաղաքի անդրանիկ տաճարը, որովհետև նորա քարէ շինութիւնն ամենից առաջ է վերջացել ու օծուել։ Մենք ասում ենք «քարէ շինութիւնը», որովհետև եթէ հաշուելու լինենք փայտէ շինութիւնները, Ս. Աստուածածինը կ'լինի ամենահինը, քանի որ հէնց սկզբից շինուել է դորա փայտէ շինութիւնը, առաջին անգամ պատարագ է մատուցուել և հէնց դորա մէջ էլ օծուել են միւս եկեղեցիների, դոցա թւում և Ս. Նիկողայոսի, հիմնաքարերը։ Ս. Նիկողայոսը հիմնարկուել է «Ս. Համբարձման» հետ միասին 1781 թուի Մայիսի 2-ին և աւարտուել ու օծուել է 1783-ին։ Որ սա հիմնարկուել է 1781 թուին և Ս. Համբարձման եկեղեցու հետ միասին,—այդ երևում է Յովսէփ արքեպիսկոպոսի ձեռագիր «Դաւթարից», որի մէջ այդ մասին գրուած է. «'ի սմին թուոջ (1781) եւ 'ի Մայիսի 2։ Օծաք եւ զսբ Համբարձում եւ սբ Նիկողայոս եկեղեցւոյ հիմանց քարինսն եւ մեծափառ հանդիսիւ տարեալ 'ի սբ Ածածին յեկեղեցւոյն, եդաք 'ի տեղիս իւրեանց. գոյին եւ բազումք իշխանք ազգին ռուսաց»։ Իսկ որ նա աւարտուել ու օծուել է 1783-ին, այդ էլ երևում է նորա բեմի ճակատին դրած մարմարիոն քարից, որի վերայ փորագրուած է. «Կառուցաւ տաճարս ածային

յանուն սբյ Նիկողայոսի հայրապետին հոգեւորական արդեամբք յօժան-դակութեամբ եւ օծմամբ սրոյ աթոռոյն Էջմիածնի ծայրագոյն նուի-րակ եւ ռուսաց երկրի ամենայն հայոց առաջնորդ եւ նոր քաղաքիս Նախիջեւանայ հիմնադիր Սանահնեցի Յովսէփ արքեպիսկոպոսին Արղութեանց 'ի թագաւորութեան մեծին Եկատարինէի երկրորդի կայ-սերուհոյն ամենայն ռուսաց 'ի հայրապետութեան սրոյ աթոռոյն Էջ-միածնի տն Ղուկաս կաթուղիկոսի ամ հայոց թվին 1783»։ Սա աւելի փոքր է, քան թէ Ս. Լուսաւորիչը, բայց շինութեան ոճն ընդհա-նուրում համարեա թէ մի և նոյնն է։ Նոյն երեք դուռը, նոյն սիւ-նազարդերը դռների առաջ, նոյն գաւիթը արևմտեան դրան առաջ և զանգակատունը նորա վերայ։ Վերջին ժամանակները միայն, երբ Սար-գիս Խաչեան երեցփոխի օրով հիմնաւորապէս վերանորոգուել է այդ եկեղեցին, նորա գմբէթի և զանգակատան գլխի ձևը հայկականի է փոխուել։

1883 թուին լրացած լինելով դորա հարիւրամեակը, հանդիսա-ւորապէս տօնուել է դորա յոբելեանը, որ և արժան է համարել ժա-մանակի երէցփոխն իւր անուան հետ միասին յաւերժացնել հետևեալ ճապաղ ոտանաւոր արձանագրութեամբ, որ փորագրել է տուել մար-մարիոն քարի վերայ և հագցրել գաւթի աջակողմեան պատի մէջ.

'Ի 16 Նոյեմբերի 1883 ամի
Յիշատակ հարիւրամեակի
Կառուցման Ս. Նիկողայոսի,
Նոր-Նախիջեւան քաղաքի.
Տօնեցաւ տօն յոբելենի
Քաղաքիս նախահիմ տաճարի
Յաւուրս Մակար սրբազանի
Եւ թեմակալ առաջնորդի,
Իսկ սրբոյ տանս երեցփոխի,
Պատուամեծար Վարդերեսի
Մկրտչեան Օրմաքէշեանի։

Բացի այս երկու՝ բեմի ու գաւթի արձանագրութիւն ունեցող քարերից, եկեղեցու պահարանում պահւում է և մի փոքրիկ նրբա-քանդակ մանր խաչերով մարմարիոն, որ գաղթականները բերել են իւրեանց հետ Ղրիմից։ Դորա շուրթի վերայ գրուած է. «Բարեխօս է Ասվատուրի որդի Խաչերեսին. ՌՃԿԷ (1167—1718)».

Այս եկեղեցու մէջը շատ գեղեցիկ է. պատերը ներկած ու զար-դարած են զանազան նկարներով, ունի վերնատուն, մի սեղան փոքր

ու մեծ փորագրութիւններով և երկու խորան, ինչպէս Լուսաւորչանը։ Բայց որ մի առանձին գեղեցկութիւն է տալիս նորան,—այդ այն է, որ, նախ, դորա բեմը հայկական ճաշակով աւելի բարձր է շինուած և, երկրորդ, դորա խաչկալն և պատկերները Թանկագին ընկուզենուց են կերտուած միաձև, նրբաքանդակ և գեղեցիկ պարզութեամբ։

Ս. Նիկողայոսի ամենամեծ սրբութիւնները համարւում են Ս. Նիկողայոս հայրապետի մասունքը, կենաց փայտի մի կտորը [1]) և Ս. Փրկիչը։ Ս. Փրկիչ ասելով, հասկանում են ձախակողմեան դասում գտնուած պահարանը, որի մէջ պահւում է մի երեք կտոր եղած մեծ յեռ քար, որի մէջտեղը բոլորաձև տաշուած է և վերան մի փոքրիկ խաչ ձևացրած։ Այդ քարը, որ կոչւում է «Ս. Թադէոսի քար», աւանդութեամբ բերուած է համարւում Հայաստանից և առնուած Թադէոս առաքեալի գերեզմանի վերայից։ Բացի Ս. Թադէոսի քարից՝ պահարանում գտնւում են երկու հասարակ փայտեայ խաչ, մի «Թոփուզ», դերձաններ և արծաթեայ բարակ կտորներից շինուած ոտքեր, ձեռքեր, աչքեր և այլն։ Փայտէ խաչերը, որոնց կոթը կամ բռնելու տեղը ծածկուած է մետաքսէ ոսկեթել և արծաթաթել նախշած կտորով՝ գործ են ածւում այն ժամանակ, երբ երեխաներն ուշ են ոտք լինում։ Խաչերը տալիս են երեխաների ձեռքը և երեք անգամ պտտեցնում են նոցա եկեղեցու չորս կողմը։ «Թոփուզը» մի կարճ փայտ է, ծայրն արճճէ գնտով և ծածկուած՝ խաչերի նման՝ մետաքսէ կտորով։ Երբոր օրհասում գտնուածները չարչարւում են և երկարում է նոցա մահը, այդ «թոփուզը» տանում դնում են հիւանդի կրծքի վերայ, որ կամ այս կամ այն կողմը լինի։ Դերձանները բերում, դնում են պահարանի մէջ հիւանդատէրերը։ Երբոր մէկը հիւանդանում է, հիւանդի տէրը դերձանով չափում է հիւանդի հասակը և հասակաչափ դերձանը բերում, դնում է պահարանը, ուխտելով որ եթէ հիւանդն առողջանայ, նա նորա հասակով մի կերոն Թափել կ'տայ և կ'վառէ Փրկչի առաջ։ Արծաթէ ոտքերը, ձեռքերը, աչքերը և այլն կախւում են պահարանում նոքա, որոնց կամ ոտքերը կամ ձեռքերը և կամ աչքերն են ցաւում։

«Ս. Փրկչի» պահարանը, որ ապակեայ դուռ ունի և որի առաջ յատակի վերայ դրուած է մի անօթ, միշտ լցուած օրհնած ջրով հիւանդների համար, կոչւում է «Ս. Փրկիչ», որովհետև նորա ճակատը զարդարում է Փրկչի մեծադիր պատկերը։ Ժողովուրդը մեծ ջերմեռան-

[1]) Կենաց փայտն իւր մէջ պարունակող արծաթեայ խաչն ունի հետևեալ յիշատակարանը. «Յիշատակ է և բարեխաւս սբ Նշանս Խաչատուրին և իւր կողակցին Թագուհիին հոգւոյն. Ի դուռն սբ Լուսաւորչին թվին ՌՃԼ-ին. Սա է խաչն կափարիճ վիմէն Քի.

*դութեամբ ուխտ է գալիս պահարանում պահուած սրբութիւններին, խնդրում է «բանալ ս. Փրկիչը», մոմ է վառում, խմում է օրհնած ջրից և առատ խաչհամբոյր է տալիս «Փրկիչ բանալու» ծէսը կատարող քահանային։ Ս. Նիկողայոսի ընդարձակ բակի մի մասը բռնուած է հին գերեզմանոցով, մի մասը բաց հրապարակ է եկեղեցու առաջ, մի մասի վերայ էլ գտնուում է Նախկին Սանդխտեան դպրոցի գեղեցիկ շինութիւնը։ Հին գերեզմանների մէջ արժանի է ուշադրութեան ազնուական Յովհաննէս Աբրահամեանի գերեզմանը, որ Պետերբուրգ գնացող և արտօնութեան հրովարտակ ստացող պատգամաւորներից մէկը և Նախիջևանի հիմնարկութեան հէնց առաջին տարիներում գաղթականների մէջ առաջ եկած մեծամեծ խռովութիւնների ժամանակ «Հակաարբազանական» կամ «Աբրահամեան» կուսակցութեան պարագլուխն է եղել։ Աբրահամեանի գերեզմանը, որ գտնուում է բակի դարպասի աջակողմը, ունի մարմարիոն տապանաքար հետևեալ ոտանաւոր արձանագրութեամբ.*

Ի սոյն հանգստեան եդաւ տապանի
Այրս բազմաշխատ ազնիւ, մեծազգի,
Իվան Աբրամովիչ սերունդ Հայկազնի,
Ծնեալ 'ի Խրիմ Քէֆէ քաղաքի,
Այս ծառայեալ կայսեր հզօրի,
Ռուսաց թագուհի Կատարինէի,
Ստացաւ զաւայեր ընծայնս խաչի
Եւ բօտ բօլքօվնիկ հազարապետի։
Յօգնութիւն հասեալ նեղ ժամանակի
Տառապեալ ազգիս, մնացեալ 'ի դաշտի,
Աղէրս մատուցեալ կայսերուհւոյն մեծի,
Շնորհեալ պրիվիլէկ ընդ հրովարտակի,
Եռ հիմնարկութիւն Նոր-Նախիջեւանի
Եւ ազատութիւն մինչ ցտասն ամի։
Յորմէ ընկալեալ զխնդիր բարի,
Հիմնեաց զայս քաղաք յապահով երկրի.
Աստ բերեալ հանգոյց զազգն ողորմելի,
Որք վարեալ էին յերկրէն Խրիմի։
Բազում երախտիս արար իւր ազգի,
Յիշատակ բարեաց թողեալ յաշխարհի.
Սա ինքն ծաղկեալ բարեօք աւուրբ լի,
Հանգեաւ 'ի Քրիստոս առ յոյսն ամենի։
Ով որք հանդիպիք սոյն գերեզմանի,
Ողորմիս ասէք միով հայր մերի։

Ս. Նիկողայոսի գերեզմանոցում են թաղուած և Յարութիւն Խալիբեան ու Մարգար Հայրապետեան մեծատուն վաճառականները, որոնցից առաջինը 12 տարի շարունակ քաղաքագլխութիւն է արել, Ներսէս կաթուղիկոսի ժամանակ Ս. Էջմիածնի աթոռակալն է եղել և Խալիբեան ազգային դպրոցի հիմնադիրը, իսկ երկրորդը «Հակախալիբականների» պարագլուխ և հանգուցեալ Միքայէլ Նալբանդեանցի մտերիմ բարեկամն ու ընկերն է եղել։ Այս եկեղեցին էլ ունի բաւականաչափ ձեռագիր մատեաններ և Ղրիմից բերած եկեղեցական հին սպասներ, որոնք, ինչպէս Լուսաւորչինը՝ նուիրուած են «'ի դուռն եկեղեցւոյն» զանազան բարեպաշտ մարդկանցից «'ի յիշատակ», «'ի բարեխօսութիւն», «'ի քաւութիւն մեղաց» և «'ի փրկութիւն հոգւոյ»։

## Ս. ԹԷՈԴՈՐՈՍ.

Ս. Թէոդորոսը կամ Ս. Թորոսը գտնւում է քաղաքի հարաւարևելեան անկիւնում ընդարձակ բակի մէջ, որի մի կողմը պարտէզը ու ծխական միդասեան դպրոցի շէնքն է, իսկ միւս կողմը հին գերեզմանոցը։ Եկեղեցու շինութեան ոճը և միջի սարք ու կարգը մի և նոյնն են, ինչ որ Ս. Լուսաւորչում և Ս. Նիկողայոսում։ Դա հիմնարկուած է դարձեալ Յովսէփ արքեպիսկոպոսի ձեռքով 1783 թուի Հոգեգալստին և աւարտուած ու օծուած է 1786 թուին։ Այդ մասին արքեպիսկոպոսի ձեռագիր «Դաւթարում» գրուած է. «'Ի սոյն թուոջս (1783.) 'ի հոգեգալստեան արկաք զհիմն սբ Թորոսի։ Թւին 1786, նոյեմբերի 22 օծաք սբ Թորոս եկեղեցին»։

Եկեղեցու մէջ բեմի ճակատին դրուած է մի գեղեցիկ խաչքար, ըստ ամենայնի, Լուսաւորչի բեմի խաչքարի մեծութեամբ և նմանութեամբ։ Նորա վերայ փորագրուած է հետևեալը. «Սբ խաչս բարեխաւս է Ոչտրին Սառային եւ կուսին Հռեփսիմէ եւ Կարապետին»։

Մի փոքրիկ խաչքար էլ, որ հագցրած է արևմտեան դրան աջակողմը ներսից, ունի հետևեալ առանց որ և է արձանագրութեան հին թուականը. „թվ ՊԺԲ. (812—1363)“։

Դրսից գաւթի մուտքի երկու կողմը պատի մէջ հագցրած է մի մի մարմարիոնեայ նուրբ խաչքար։ Մէկի—աջակողմեանի վերայ մենք կարդում ենք. „Բարեխօս են նշանս տր Աւետիսին Ակոբին կողակցին անա իւր որոջն տաս իւր ծնողացն պր Լուսին Ճամ իւր Յովնանին եւ Սիմէօնին“։ Իսկ միւսի—ձախակողմեանի վերայ—„Կանգնեցաւ սբ նշան խաչաց 'ի բարեխօսութիւն երկրպագուաց թվին ՌՂԸ (1098—1649) Յովհաննիսի եւ իւր ծնողաց եւ կենակցի յիշատակի իր եւ ազանց Մուրաս կուլէ սխինճի Թագուհի։ Յիշատակարան տուն ռճ“։ Այս

եկեղեցին ունի Ս. Թէոդորոս զօրավարի մասունքը, որ պահւում է մի արծաթեայ ոսկեզօծ գեղեցիկ տուփի մէջ, և մի սրբութիւն, որ կոչւում է „Այ-Թոդոր“ այսինքն Ս. Թէոդորոս։ „Այ-Թոդորը“ մի լեռ քար է, որ հագցրած է արևմտեան սիւնի մէջ և գոյացնում է Ս. Նիկողայոսի Փրկչի պահարանի պէս մի ապակազարդ պահարան, որի մէջ դրուած են Ս Թէոդորոս զօրավարի ու Տիրամօր պատկերները և օրհնած ջուր։ Այ-Թոդորը մի փոքր քառակուսի քար է, որի վերայ թէև երևում են զանազան կոպիտ քանդակուածներ, բայց դժուար է որոշել, թէ իսկապէս ինչ են արտայայտում դոքա։ Թէ ինչու է այդ քարը յունական անուն կրում և ինչու են յարգանք մատուցանում դորան,—դա մեզ յայտնի չէ. մենք միայն գիտենք, որ դա բերուած է Ղրիմից, պատկանել է „Քաֆայու Ս. Թորոս“ եկեղեցուն և հէնց իւր տեղում էլ կոչուելիս է եղել „Այ-Թոդոր“, որից գուցէ, եկեղեցին էլ ստացել է իւր անունը։

Առհասարակ Նախիջևանի գաղթականների մէջ էլ պահպանուել են քարապաշտութեան հետքեր, որ մենք յաճախ տեսնում ենք Հայաստանի զանազան գաւառների հայերի մէջ. Բացի Ս. Նիկողայոսի և Ս. Թորոսի քարերից, Ս. Լուսաւորիչն էլ ունեցել է մի քառանկիւնաձև քար, որ կոչւում է եղել „Ս. Թադէոսի քար“ և աւանդութեամբ օծուած է համարուում եղել Ս. Թադէոսի ձեռքով և բերուած Անիից Ղրիմ։ Այդ քարը, որի վերայ երկու ոտքի հետք է եղել և որին ժողովուրդը նոյնպէս ջերմեռանդութեամբ ուխտ է գալիս եղել, ունեցել է և մի յունական արձանագրութիւն, որ երբ կարդացուել ու թարգմանուել է, յայտնուել է, որ դա առաջ դրուած է եղել կամ մի հրապարակական տեղ և կամ Թէոդոսիոյ Ապողոնի տաճարում։ Այժմ այդ քարը գտնուում է Պետերբուրգի կայսերական թանգարաններից մէկում։ Բացի վերոյիշեալ խաչքարերից, Ս. Թէոդորոսն ունի այլ ևս ինը մարմարոնեայ հին խաչքար, որոնք այժմ պահուում են եկեղեցու բակում պահապանի տանը։ Դոքա դուրս են եկել գաւթի յատակը նորերումս նորոգելու ժամանակ հին յատակի տակից։ Պէտք է կարծել, որ եկեղեցին շինելու ժամանակ տեղ չի եղել Ղրիմից բերած այդ խաչաքարերը տեղաւորելու, և ստիպուած են եղել դնել գաւթի փայտեայ յատակի տակ և պահել։

Այդ խաչքարերը, որոնք բոլորը ևս „չիշատակ“ և „բարեխօս“ են զանազան բարեպաշտ անձանց, արժանի են ուշադրութեան իւրեանց թուականների հնութեամբ։ Ցաւալի է միայն, որ մի քանիսի թուականները կամ կոտրուած են և կամ այնքան եղծուած են, որ դժուարընթեռնլի են։

ա. Յիշատակ է սբ նշանիս Թագվորշա դպրին որդի Ղազարի եւ հօրն Մկրտչի եւ տոհմին եւ եղբօրն Գրիգորին թվ...

բ. (վերը կլոր ձևով) 'ի ծովն ընկղմեալ Մարտիրոսի հոգւոյն։ (Ներքև) Բարեխօս է սբ նշանիս Ածատուրի քահանային եւ ծնողացն նորին եւ կենակցին քեռն իւրոյ Վարդան եպիսկոպոսին եւ ամ զար-միցն թվ ՌՃԻԱ. (1121—1672.)

գ. Յիշատակ է սբ նշանս Քս մղսի Աքաֆայի...

դ. Սբ նշանիս յիշատակ է Թինկրի-Պիրմիշին եւ զար սորին թվ ՋԺ. (910—1461)։

ե. Յիշատակ է սբ նշանիս Աննա խաթունին եւ Խազարին թվ ջիզ (926 -1477)։

զ Յիշատակ է սբ նշանիս Էմինին եւ իւր կողակցին Զապլունին եւ իւր ծնողացն թվ. պղբ. (892 -1443)։

է։ Յիշատակ է սր. նշանիս Ալէքսիանոսի Գրիգորին Խաչիկին Խազարին Մարտիրոսին թվ Ջժա. (911—1462.)։

ը. Յիշատակ է սբ նշանիս Տովլաթ խթ...

թ. Բարեխօս է սբ նշանս տր Սարգսին կողակցին Մարիամին եւ երից զաւակաց հոգւոյն թվին ՌՃԻԸ. (1128—1679.)։

Ս. *Թէոդորոսն էլ ունի ձեռագիր մատեաններ. իսկ նորա Ղրիմից բերած հին եկեղեցական սպասները նորերումս վաճառուել են իբրև հին և անպէտք արծաթեղէն։*

## ԽՆԴՐԱԿԱՏԱՐ Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ

Ս. *Աստուածածինը կառուցուած է Ս. Նիկողայոսի և Ս. Թորոսի մէջտեղը, քաղաքի հարաւային կողմում։ Սա հիմնարկուել է Ս. Նիկողայոսի հետ միասին 1781 թուին, իսկ աւարտուել ու օծուել է աւելի ուշ, քան թէ Ս. Նիկողայոսը։ Այս մասին Յովսէփ արքեպիսկոպոսի ձեռագիր «Դաւթարում» ասուած է. «'Ի սմին թուոջ* (1781) *երկրորդ կիւրակէին զկնի հգւյգալստենն արկաք զհիմն սբ Աստուածածին եկեղեցւոյն, մեծաւ ցնծութեամբ և փառօք, և 'ի սմին տեղւոջ արկաք զվրան և մատուցաք զպատարագ և ձեռնադրեցաք զՄարտիրոս 'ի քհնյ. եկին գուբեռնաթն Վասիլ Ալէքսէիչ Ջերթկով և ամենայն մեծամեծքն ռուստաց»։ Նորա տեղում նախապէս շինուել է մի փայտեայ փոքրիկ եկեղեցի, որ և պէտքէ իսկապէս համարել Նախիջևանի անդրանիկ եկեղեցին։ Յովսէփ արքեպիսկոպոսը, որովհետև դեռ քաղաքը, պաշտօնապէս չ'հիմնարկուած, ժամանել են զատկական տօները, չըկամենալով ժողովուրդն այդ մեծ տօներին անմխիթար թողնել, ամենից առաջ և շուտափոյթ շինել է այդ փոքրիկ շի-*

նութիւնը և կոչել է նորան հայոց Նախնի եկեղեցու անունով «Խընդ-րակատար Ս. Աստուածածին», ինչպէս և քաղաքը Հայոց Նախնի քա-ղա.քի անունով կոչել էր «Նախիջևան»։

Դոյն Նախնի փայտեայ եկեղեցում է առաջին անգամ, եթէ չըհաշուենք վերոյիշեալ վրանում մատուցուածը, պատարագ մատու-ցուել Նախիջևանում, դորա մէջ են օծուել միւս եկեղեցիների հիմ-նաքարերը, դորա մեջ են օծուել, վերջապէս, և նոյն իսկ քաղա.քի հիմնաքարերը։ Այդ մասին նոյն ձեռագիր «Դաւթարում» մենք կար-դում ենք. «'Ի 1781 թուին և յամսեանն յապրիլի 'ի Նախիջևան քաղաքոջն նա՛ ապէս փայտեայ՝ եկեղեցի մի շինեցա.ք և 'ի զատկին, որ էր տօն սր յարութեան Քի և յապրիլի 14, օծա.ք զնա, յանուն ա-մենաօրհնեալ Սբ Աստուածածնին և անուանեցա.ք զնա Խնդրակատար Սբ Աստուածածին։ Զի Նախկին եկեղեցին աշխարհի, որ կառուցաւ յՆգե-սեայ, այսինքն 'ի յՈւրհայ՝ 'ի Թադէոսէ Առաքելոյ, էր յանուն սբ Աստուածածնին։ 'Ի սոյն թուոջս և ի յապրիլի իա, մատուցա.ք 'ի սը-մին եկեղեցւոջ պատարագ, և օծա.ք զչորեսին հիմանց .քարինսն քա-ղաքիս, յանուն չորից սրբոց Աւետարանչացն, և 'ի նմին օր մեռոնա-թափ արարա.ք, և մեծափառ հանդիսիւ և ամ ժողովրդովք զգեստա-ւորեալք ամ եկեղեցական պատրաստութեամբ․ շրջապատեալ զբոլոր .քաղաքաւն, եդա.ք զհիմունս .քաղաքիս 'ի չորս կողմունս սորին՝ չոր-դաբուխ արտասուօք և բերկրալից ցնծութեամբ. և թափօրիւ անդաս-տան արարեալ օրհնեցաք զհող և զջուր բնակութեանս մերոյ, խա-չիւ.ք, Աւետարանօ.ք և սրբոց մասամբ.ք, որ.ք գոյին 'ի ձեռս բոլոր վարդապետացն և քահանայից։»

Ս. Աստուածածինն իւր շինութեան ոճով, իւր ներքին սարք ու կարգով, ըստ ամենայնի, նման է միւս եկեղեցիներին. միակ, զա-նազանութիւնը միայն այն է, որ սա, բացի մեծ գլխաւոր սեղանից, ունի այլ և ս երկու փո.քրիկ սեղան, որոն.ք շինուած են ոչ մեծ սե-ղանի երկու կողմը, ինչպէս որ լինում է առհասարակ, այլ ցածը լու-սանների առաջ—Ս. Յարութեան և Յովակիմ Աննայի սեղաններ։

Եկեղեցու պատերը ներսից, ինչպէս միւս եկեղեցիներինը, զար-դարուած են գեղեցիկ խաչ.քարերով, որոնցից մի .քանիսի արձանագրու-թիւնները, իւղաներկի հաստ շերտով ծածկուած լինելու պատճառով, դժբաղդաբար լաւ չեն կարդացուում։

Ձախակողմեան դասի պատի մէջ հագցրած մեծ խաչ.քարի վերայ փորագրուած է. «Բարեխաւս է սբ նշանս Մինասին հոգւոյն եւ ծը-նողացն եւ եղբարցն»։

Մեծ սեղանի աջ կողմը գտնուած խաչ.քարի վերայ կարդացուում է. «Յիշատակ է սբ նշանս Պետրոսին կողակցին....»։

Ս. Յարութեան սեղանի կէսը կոտրուած մարմարիոնեայ խաչքարի վերայ գրուած է. «Յիշ. Քուլաֆին հօր Մելիք շահին որդոյն Սեփա-նոսին եւ...։»

Հիւսիսային և հարաւային դռների ճակատին մետաղեայ տախտակների վերայ գրուած է. «Այս երկաթեայ փայտեայ դուռն եկեղեցւոյ սբ Աստուածածնայ 'ի յիշատակ Նախիջեւանցի Մկրտիչ Տէր-Առաքելեան Աջեմեանց 'ի 1857թ.":

Ս Աստուածածնի հին գերեզմանոցում, որ բռնում է եկեղեցու ընդարձակ բակի մի մեծ մասը, գտնուում են բարեգործ Յովհաննէս Մարկոսեան Պոպովի և Ստեփան Գէորգեան Նաթալեանի գերեզմանները [1]։

Յովհաննէս Մարկոսեան Պոպովի շքեղ մահարձանն ունի հետեւեալ արժանի ուշադրութեան տապանագիրը.

Կեանքիդ օրերը չ'խնայելով,
Ինչքդ ստացուածքդ ազգիդ զոհելով,
Դու աղբիւր եղար ծարաւիներուն
Ու պատսպարան կարօտեալներուն։
Այո', փառահեղ կեանքով չ'կեցար,
Բայց նախանձելի մահով հեռացար։
Չեն մոռանայ քեզ որբք Նախիջեւանի,
Քանի որ՞ քաղաքս կայ յակաստանի։

Այս եկեղեցին էլ ունի գրչագիր մատեաններ և երկու մասունք «սբ Գէորգայ» և «անյայտ», որոնք պահուում են խաչաձև շինուած արծաթեայ տուփերի մէջ։

## Ս. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՆ.

Ս. Համբարձման եկեղեցին շինուած է քաղաքի հիւսիս-արևելեան անկիւնում։ Սա հիմնարկուել է, ինչպէս մենք տեսանք Ս. Նիկողայոսի հիմնարկութեան մասին ձեռագիր „Դաւթարում“ գրուած յիշատակարանից, նոյն իսկ Ս. Նիկողայոսի հետ միասին 1781 թուի Մայիսի 2-ին և աւարտուել ու օծուել է 1783 թուի օգոստոսի 27-ին, այսինքն մի քանի օրով առաջ, քան թէ Ս. Նիկողայոսը։ Որ սա օծուել է Ս. Նիկողայոսից մի քանի օրով առաջ — այդ երևում է „Դաւթարից“, որի մէջ եկեղեցիների հիմնադիր Յովսէփ արքեպիսկո-

[1]) Յովհաննէս Պապովը և Ստեփան Նաթալեանը գումարներ են կտակել Նոր-Նախջևանի աղքատների օգտին։

պոսն իւր ձեռքով գրել է. „'ի սոյն թուոջս (1783.) և 'ի յօգոստոսի 27․ Օծաք զսբ Ջմբրձում եկեղեցին․ Եւ 'ի սեպտեմբերի 10, օծաք զսբ Նիկողայոս եկեղեցին“։

Այս այսպէս լինելով, մենք իսկապէս չենք հասկանում, թէ ինչ հիման վերայ քաղաքում ընդունուած է, ինչպէս մենք էլ իւր տեղում նշանակեցինք, Ս. Նիկողայոսը «նախահիմ տաճար» համարելու, նորա յոբելեանն իբրև քաղաքի ամենահին եկեղեցու հանդիսաւոր կերպով 1883 թուին տօնելու և նոյն ժամանակ ամենևին ուշադրութիւն չդարձնելու Ս. Ջամբարձման վերայ։

Եկեղեցու շինութեան ոճն ու միջի սարքն ու կարգը միևնոյնն են, ինչոր մեր նկարագրած եկեղեցիներինը․ Անախորժ տպաւորութիւն են անում հայ աղօթողների վերայ սորա բազմաթիւ պատկերների ոսկեզօծն ու արծաթազօծը, որոնք էժան տեսակից լինելով, իւրեանց անճաշակ կերտուածքով ու անբնական ցոլուածքով մարդու աչք են խտտղեցնում։ Նամանաւանդ տգեղ են դասի առաջ երկու կողմը քահանաների կանգնելու տեղում կանգնեցրած պատկերները, որոնք հէնց մասնաւորապէս դրուած են երևում քահանաների թիկունքը ծածկելու համար, կարծես, եկեղեցու պաշտօնեաները մի գաղտնի բան ունէին անելու և նոցա անպատճառ հարկաւոր էր ծածկել, բաժանել ժողովրդից և այդպիսով տգեղացնել եկեղեցին։

Զարմանալին այն է, որ այս եկեղեցին նոր միայն հիմնովին վերանորոգել են, ուրեմն և միջոց են ունեցել ուշադրութիւն դարձնելու նորա ներքին սարք ու կարգի վերայ, հայկական ձև տալու նորան և շինութեան ոճը հայկականի փոխելու։ Բայց բուն հայրենիքից երկար ժամանակով բաժանուած կտրուած լինելն արդէն իսկ առաջ է բերել գաղթականների մէջ նոր ճաշակ, նոր հասկացողութիւն ու գաղափար կեանքի մի քանի երևոյթների մասին․ Նոքա օտարացել են շատ սեպհական յատկութիւններից և հայկական սարք ու կարգից և, ընդհակառակն, ընտելացել են իւրեանց բնակած տեղի ճաշակին, ոճին ու սարք ու կարգին․ Գաղթականներին տարօրինակ է թւում արդէն և' հայկական ոճը և' պանդակ հնչեցնելու սովորութիւնը և' հայկական կեանքի շատ առանձնայատկութիւնները․

Եւ դեռ եկեղեցու երէցփոխանը և շինութեան հոգաբարձուները մի շքեղ մարմարինեայ տախտակ էլ են պատրաստել և վերան մեծա հնչիւն բառերով արձանագրել տաճարի շինութեան պատմութիւնը, որ պէտք է, 'ի հարկէ, հագցնեն եկեղեցու պատերից մէկի մէջ աչքի ընկնելու տեղում և այդպիսով յաւերժացնեն իւրեանց անունները։

Ս. Ջամբարձումն համեմատաբար աւելի քիչ խաչքար ունի իւր պատերի մէջ, քան թէ միւսները։ Սորա միակ աչքի ընկնելու խաչ-

Ս. Յարութեան սեղանի կէսը կոտրուած մարմարիոնեայ խաչքարի վերայ գրուած է. «Յիշ. Քուլաֆին հօր Մելիք շահին որդոյն Սեփանոսին եւ...։»

Հիւսիսային և հարաւային դռների ճակատին մետաղեայ տախտակների վերայ գրուած է. «Այս երկաթեայ փայտեայ դուռն եկեղեցւոյ սբ Աստուածածնայ 'ի յիշատակ Նախիջեւանցի Մկրտիչ Տէր-Առաքելեան Աջեմեանց 'ի 1857Թ.»։

Ս Աստուածածնի հին գերեզմանոցում, որ բռնում է եկեղեցու ընդարձակ բակի մի մեծ մասը, գտնուում են բարեգործ Յովհաննէս Մարկոսեան Պօպովի և Ստեփան Գէորգեան Նաթալեանի գերեզմանները [1]։

Յովհաննէս Մարկոսեան Պօպովի շքեղ մահարձանն ունի հետեւեալ արժանի ուշադրութեան տապանագիրը.

Կեանքիդ օրերը չ'խնայելով,
Ինչքդ ստացուածքդ ազգիդ զոհելով,
Դու աղբիւր եղար ծարաւիներուն
Ու պաստպարան կարօտեալներուն։
Ոյո՛, փառահեղ կեանքով չ'կեցար,
Բայց նախանձելի մահով հեռացար։
Չեն մոռանայ քեզ որբք Նախիջեւանի,
Քանի որ՝ քաղաքս կայ յակաստանի։

Այս եկեղեցին էլ ունի գրչագիր մատեաններ և երկու մասունք «սբ Գէորգայ» և «անյայտ», որոնք պահուում են խաչաձև շինուած արծաթեայ տուփերի մէջ։

## Ս. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՆ.

Ս. Համբարձման եկեղեցին շինուած է քաղաքի հիւսիս-արևելեան անկիւնում։ Սա հիմնարկուել է, ինչպէս մենք տեսանք Ս. Նիկողայոսի հիմնարկութեան մասին ձեռագիր „Դաւթարում“ գրուած յիշատակարանից, նոյն իսկ Ս. Նիկողայոսի հետ միասին 1781 թուի Մայիսի 2-ին և աւարտուել ու օծուել է 1783 թուի օգոստոսի 27-ին, այսինքն մի քանի օրով առաջ, քան թէ Ս. Նիկողայոսը։ Որ սա օծուել է Ս. Նիկողայոսից մի քանի օրով առաջ—այդ երևում է „Դաւթարից“, որի մէջ եկեղեցիների հիմնադիր Յովսէփ արքեպիսկո-

[1]) Յովհաննէս Պօպովը և Ստեփան Նաթալեանը գումարներ են կտակել Նոր-Նախջևանի աղքատների օգտին։

պոսն իւր ձեռքով գրել է. „'ի սոյն Թուոջս (1783.) և 'ի յօգոստոսի 27. Օծաք զսբ Հմբրձում եկեղեցին. Եւ 'ի սեպտեմբերի 10, օծաք զսբ Նիկողայոս եկեղեցին“։

Այս այսպէս լինելով, մենք իսկապէս չենք հասկանում, թէ ինչ հիման վերայ քաղաքում ընդունուած է, ինչպէս մենք էլ իւր տեղում նշանակեցինք, Ս. Նիկողայոսը «նախահիմ տաճար» համարելու, նորա յօբելեանն իբրև քաղաքի ամենահին եկեղեցու հանդիսաւոր կերպով 1883 Թուին տօնելու և նոյն ժամանակ ամենևին ուշադրութիւն չդարձնելու Ս. Համբարձման վերայ։

Եկեղեցու շինութեան ոճն ու միջի սարքն ու կարգը միևնոյնն են, ինչոր մեր նկարագրած եկեղեցիներինը։ Անախորժ տպաւորութիւն են անում հայ արօթողների վերայ սորա բազմաթիւ պատկերների ոսկեզօծն ու արծաթազօծը, որոնք էժան տեսակից լինելով, իւրեանց անճաշակ կերտուածքով ու անբնական ցոլուածքով մարդու աչք են խտտղեցնում։ Նամանաւանդ տգեղ են դասի առաջ երկու կողմը քահանաների կանգնելու տեղում կանգնեցրած պատկերները, որոնք հէնց մասնաւորապէս դրուած են երևում քահանաների Թիկունքը ծածկելու համար, կարծես, եկեղեցու պաշտօնեաները մի գաղտնի բան ունէին անելու և նոցա անպատճառ հարկաւոր էր ծածկել, բաժանել ժողովրդից և այդպիսով տգեղացնել եկեղեցին։

Զարմանալին այն է, որ այս եկեղեցին նոր միայն հիմնովին վերանորոգել են, ուրեմն և միջոց են ունեցել ուշադրութիւն դարձնելու նորա ներքին սարք ու կարգի վերայ, հայկական ձև տալու նորան և շինութեան ոճը հայկականի փոխելու։ Բայց բուն հայրենիքից երկար ժամանակով բաժանուած կտրուած լինելն արդէն իսկ առաջ է բերել գաղթականների մէջ նոր ճաշակ, նոր հասկացողութիւն ու գաղափար կեանքի մի քանի երևոյթների մասին. Նոքա օտարացել են շատ սեպհական յատկութիւններից և հայկական սարք ու կարգից և, ընդհակառակն, ընտելացել են իւրեանց բնակած տեղի ճաշակին, ոճին ու սարք ու կարգին։ Գաղթականներին տարօրինակ է Թւում արդէն և' հայկական ոճը և' պանգակ հնչեցնելու սովորութիւնը և' հայկական կեանքի շատ առանձնայատկութիւնները։

Եւ դեռ եկեղեցու երէցփոխանը և շինութեան հոգաբարձուները մի շքեղ մարմարիոնեայ տախտակ էլ են պատրաստել և վերան մեծամեծ հնչիւն բառերով արձանագրել տաճարի շինութեան յիշատակարանը, որ պէտք է, 'ի հարկէ, հագցնեն եկեղեցու պատերից մէկի մէջ աչքի ընկնելու տեղում և այդպիսով յաւերժացնեն իւրեանց անունները։

Ս. Համբարձումն համեմատաբար աւելի քիչ խաչքար ունի իւր պատերի մէջ, քան Թէ միւսները։ Սորա միակ աչքի ընկնելու խաչ-

քարը բեմի ճակատինն է, որի վերայ փորագրուած է. (Տակը) «Կանգնեցաւ սբ նշանս Քսի բարեխաւս է Ռ. թի Մուղային։ . . . (վերը) «թվ պձը (888—1439)» (Մէջտեղը) «Կարապետին»։

Աւազանի տակ մարմարիոնեայ քարի վերայ փորագրուած է. «Յիշատակ է սբ աւազանս սբ Համբարձման ժամին Խուպեար օղլուն Յարութեղին հօրն Գրիգորին եւ մօրն Մարիամին հոգուն թվ 1799 դեկտեմբերի 13-ին»։

Դրսից արեւելեան պատի մէջ բարձրում հագցրած մարմարիոնի վերայ գրուած է. «Շնորհիւ եւ ողորմութեամբ Ամենազօրին Աստուծոյ կանգնեցաւ կառուցաւ Սբ. Համբարձման եկեղեցւոյս Ա. Խորանն ար դեամբք եւ ծախիւք Զօրաւորնեան պր Խաչատուր Մատթէոսովին հանդերձ կենակցիւ եւ ծնողիւքս 'ի փառս միոյն Ածոյն 'ի գովեստ եւ 'ի պատիւ նորին։ Արդ որք հանդիպիք եւ ընթեռնուք զայս մատեան եւ եթ յիշեցէք եւ դուք յիշիք յիշեալ Ածոյն յատեան Փրկչին ամենայնի թվ 1799 ին 'ի Նոր-Նախիջեւան 'ի յառաջնորդութեան տեառն Յովսէփայ ածարեալ եւ պսակազգեաց առաքելաշաւիղ սրբազան արքեպիսկոպոսին եւ ծայրագոյն նուիրակին սբոյ աթոռոյ Միածնայ իջի»։

Ս. Համբարձումն էլ ունի ընդարձակ բակ, որի մի մասը բռնում է հին գերեզմանոցը, միւսն երկդասեան ծխական դպրոցի նորակառոյց ընդարձակ շինութիւնը, իսկ երրորդ մասը հրապարակ է եկեղեցու առաջ։ Հին գերեզմանոցումն են թաղուած քաղաքիս «Գոգոյեան հայ օրիորդաց դպրոցի» հիմնադիր յայտնի Մկրտիչ Գոգոյեանը և նորա կինը «Հաճի մամա» Սրբուհի Գոգոյեանը։

Գոգոյեան Մկրտչի թէև գեղեցիկ, բայց այժմ արդէն հնացած ու չորս կողմից կոտրտուած շիրիմի մէջ հագցրած մարմարիոնեայ տախտակի վերայ մենք կարդում ենք. «Աստանօր ամփոփին ոսկերք նորոյս Նախիջեւանայ առաջին կարգի պատուելի քաղաքացւոյ Մկրտչի Կոկոյեան, ծնելոյ 'ի 1797 ամի եւ դարձելոյ յԱստուած 'ի 68 ամաց հասակի իւրում։ Ուսումնարանն որ կտակաւանդեցաւ յերջանիկ հանգուցելոյս կանգնել 'ի սեփական ծախս իւր վասն կրթութեան չքաւոր օրիորդացն Հայոց քաղաքիս բարեգործ կենաց նորին յիշատակ յաւերժական եւ փառաւոր կացցէ ապագայից 27 Յուլիսի 1866 թուին»։

Այս եկեղեցին էլ ունի ձեռագիր մատեաններ, Ղրիմից բերած հին եկեղեցական սպասներ և մասունքներ —Ս. Մինաս Եգիպտացւոյ, Ս. Օգսենտիոս Հայրապետի և կենաց փայտի։ Սոքա ներփակուած են արծաթեայ խաչերի մէջ և նուիրուած են եկեղեցուն առաջինը անյիշ թուին, երկրորդը 1890-ին և երրորդը ռձժե-ին։ Այս վերջինն ականակուռ է և յիշատակ է ոմն Ոնոփրիոս վարդապետի։

## Ս. ԳԷՈՐԳ.

Ս Գէորգը շինուած է քաղաքի արևմտեան կողմը Դօնի ափին, քաղաքից դուրս, Ռաստովի ճանապարհի վերայ։ Նա հիմնարկուել է 1783 Թուին և աւարտուել ու օծուել է 1787 Թուին։ Որ սա հիմնարկուել է 1783 Թուին—,այդ երևում է ձեռագիր «Դաւթարից», որի մէջ այդ մասին գրուած է. «'ի սոյն Թուոջս (1783), 'ի 10, կիւրակէն արկաք զհիմն սբ Գէորգի". իսկ որ նա օծուել է 1787 Թուին—այդ էլ երևում է դարձեալ նոյն „Դաւթարից", որի մէջ ասուած է. «Թիւն 1787, Դեկտեմբերի 5, օծաք՝զսբ Գէորգ եկեղեցին. Ղոխմու բերեալ անօթն իւր, ետուք իւրեան»։

Այս եկեղեցին էլ, որ չ'նայելով, որ մէկ անգամ նորոգուել է 1853 Թուին, մի ւս անգամ էլ հիմնովին վերաշինուել է նոր միայն, 1892 Թուին, դարձեալ պահպանել է շինուԹեան նոյն ոճն ու նոյն ներքին սարքն ու կարգը, որ յատուկ է Նախիջևանի բոլոր եկեղեցիներին Միակ կանազանութիւնը կարելի է համարել այն, որ սորա հարաւ ային դրան առաջ էլ կառուցուած է մի գաւԹանման փոքրիկ շինուԹիւն, մուտքը ցրտից ու քամուց պահպանելու համար, որովհետև այդ դռնից է լինում գլխաւորապէս եկեղեցու ելն ու մուտքը։

Սա ունի բազմաԹիւ խաչքարեր, բայց դժբաղդաբար նոցա վերայ փորագրուած արձանագրուԹիւնները չեն կարդացւում, որովհետև նոքա իւղաներկի հաստ շերտով ծածկուած են։ Այդ խաչքարերի մէջ իւր մեծուԹեամբ և քանդակների նրբուԹեամբ առանձին կերպով աչքի է ընկնում մէկը, որ հագցրած է հարաւային դրան ձախ կողմը դրսից։ Դորա վերայ կարդացւում է. Կանգնեցաւ սբ Նշանս 'ի բարեխօսութիւն մնդսի Յովհաննիսին եւ կենակցին. Պիճային որդոյն Գրիգորին, Սեթիաննոսին եւ Մինասին [illegible] Խասպիճային եւ Պահարին եւ ճանի մօրն եւ Շիհրին եւ ամենայն [illegible] թուին ՌՃԼԵ (1135—1686) Ձեռամբ Սարգիս վարպե[illegible]»։

Բարեբաղդաբար սորա հին ոսկեզօծ և արծաԹազօծ շրջանակներով պատկերները վերաշինուԹեան ժամանակ առնուած են և տեղերը դրուած են կարմիր ընկուզենուց կերտած շրջանակներով նոր պատկերներ որոնք իւրեանց պարզուԹեամբ մի առանձին գեղեցկուԹիւն են տալիս եկեղեցուն։ Արժանի է ուշադրուԹեան նամանաւանդ Գէորգ ԴաւԹեան Չեպրեանի նուիրած Ս. Գէորգայ մեծ շքեղ պատկերը, որի տակը շինուած է մի փոքրիկ ապակեդուռն պահարան, որի մէջ պահւում է եկեղեցու գլխաւոր սրբուԹիւնը—Ս. Գէորգ զօրավարի մասունքը։ Այդ մասունքը ներփակուած է մի ճաճանչաւոր ար-

ծաթեայ տուփի մէջ, որի վերայ գրուած է հետևեալ կարճ յիշատա-կարանը. «Յիշատակ միսին Ստեփանի Գենջեցեան 1849 ի սբ Գէորգ Նախիջեւան»։

Բացի Ս. Գէորգայ մասունքից, Ս. Գէորգն ունի այլ և մի սրբութիւն—«Ս. Գէորգայ Թոփուզը», որ գործ է դրուում նոյննպա-տակի համար, որի համար գործ է դրուում և Ս. Նիկողայոսինը։

Ս. Գէորգն էլ ունի ձեռագիր մատեաններ և Ղրիմից բերուած մի քանի խաչեր, որոնք շինուած ու նուիրուած են եկեղեցուն ոճխա, ոձէ, ոհգ և ոհե հայոց թուականներին։



Ռ. ՊԱՏԿԱՆԵԱՆ

Եկեղեցու պահարանում պահւում է և մի պղնձեայ տախտակ, որի վերայ արձանագրուած է եկեղեցու վերոյիշեալ 53 թուի վերանո-րոգութեան հետևեալ յիշատակարանը. «Վերանորոգեցաւ տաճարս յանուն սրբոյն Գէորգայ զօրավարին արդեամբ եւ ծախուք Նոր-Նա-խիջեւանայ երկրորդ կարգի հայկազուն վաճառականի Մատթէոսի Խաչատրեան Երեցփոխեանի առն ածասիրի եւ բարեպաշտի յամի Տեառն 1853 եւ մերոյ ազգականի ոյք. 'ի հայրապետութեան ամե-նայն Հայոց տեառն Ներսիսի ածընտիր կաթուղիկոսի յառաջնորդու-թեան ռուսաբնակ Հայոց տեառն Մատթէոսի արքեպիսկոպոսի»։

## Ս. ԿԱՐԱՊԵՏ.

Ս. Կարապետը կոչւում է «Հանգստարանի եկեղեցի», որովհետև շինուած է քաղաքի հիւսիսային կողմը շինութիւններից դուրս գտնուած «Ս. Լուսաւորչի հանգստարանում»։ Նախիջևանի բոլոր եկեղեցիներն էլ ունին իւրեանց առանձին հանգստարաններն անմիջապէս իւրեանց բակերում, միայն Ս. Լուսաւորիչն է, որ իւր բակում հանգստարան չունին, և Ս. Թորոսն ու Համբարձումն, որոնք, բացի իւրեանց բակերում ունեցած հանգստարաններից, ունին և մի առանձին հանգստարան դարձեալ քաղաքի հիւսիսային կողմում, շինութիւններից դուրս։ Ս. Լուսաւորչի հանգստարանն այժմ համարուում է քաղաքի ընդհանուր հանգստարան, որովհետև եկեղեցիների բակերում գտնուած հին գերեզմանոցներում արդէն արգելուած է մեռեալ թաղելու, իսկ Ս. Համբարձման և Ս. Թորոսի գերեզմանոցում, նորա իւր մէջ եկեղեցի չունենալու և անբարեկարգ վիճակի մէջ գտնուելու պատճառով, թաղուում են միայն այդ եկեղեցիների չքաւոր ծխականները։

Ս. Կարապետի փոքրիկ գողտրիկ շինութիւնը, միակն է քաղաքի բոլոր եկեղեցիների մէջ, որ կառուցուած է հայկական ոճով, ինչպէս որ միակն է իւր շինութեան հայկական ոճով գիւղերի բոլոր եկեղեցիների մէջ Թոփտիի Ս. Փրկիչը։

Դա հիմնարկուած է 1865 թուին և օծուած է 1881 թուի Յունիսի 11-ին հանգուցեալ տիկին Ակիւլինէ Պօղոսեան Ալաճալեանի ծախքով, Սազոնով ճարտարապետի քաշած յատակագծով և հանգուցեալ տիկնոջ ազգական Յովհաննէս Խաթրանեանի անմիջական հրսկողութեամբ։ Այդ մասին եկեղեցու բեմի ճակատին դրած մարմարիոնեայ տախտակի վերայ մենք կարդում ենք. «Եկեղեցիս սրբոյն Յովհաննու-Մկրտչի հիմնեալ 'ի 1875 եւ օծեալ 'ի 11 Յունիսի 1881 ամի Աղքատանոցաւ եւ Հոգետամբ հանդերձ կառուցաւ կտակաւանդութեամբ եւ ծախուք Ազնուհի Ակիւլինեայ Պօղոսեան Ալաճալեանց 'ի Հանգստարանիս Հայոց Նոր-Նախիջեւանայ»։

Ս. Կարապետն աղիւսակերտ է, դրսից անծեփ, իսկ ներսից ծեփած ու սպիտակացրած պատերով. նա ունի երեք դուռն՝ հարաւային, հիւսիսային և արևմտեան և մոզայիկ յատակ։ Դորա միջի սարքն ու կարգը միւս եկեղեցիների նման է. ունի դարձեալ մի սեղան մեծ և փոքր վարագոյրներով, երկու կողմը մի մի խորան և վերնատուն։ Այս եկեղեցին զանազանուում է քաղաքի միւս եկեղեցիներից իւր հայկական եկեղեցիներին յատուկ պարզութեամբ։ Սա չունի ոչ ոսկեզօծ և ոչ արծաթապատ պատկերներ. սորա խաչկալը և խորանների դռները՝ ներ-

տուած են մաքուր ընկուզենուց և ունին նուրբ և ճաշակով ձևացրած քանդակներ, իսկ պատկերները պարզ իւղաներկ նկարներ են, որոնք ուղղակի քաշուած են պատերի վերայ։

Եկեղեցու հիմնադիր տիկնոջ մարմինն ամփոփուած է եկեղեցու հարաւ-արևելեան անկիւնում դրսից։ Հանգուցեալի վերայ կանգնեցրած է մարմարիոնեայ մեծադին շքեղ շիրիմ հայկական վեղարաձև կաթուղիկէի ձևով և հայկական զարդերով, նկարներով ու քանդակներով։ Շիրիմի մի երեսի վերայ ոսկէտառերով փորագրուած է „Աստ հանգչի



Ռ. ՊԱՏԿԱՆԵԱՆԻ ԸՆՏԱՆԻՔԸ ԵՒ ՏՈՒՆԸ

մարմին ազնիւ տիկնոջ Ակիւլինեայ Պօղոսեան Ալանալեան որ 'ի տոհմէ Խաքրանեան վախճանելոյ 3 սեպ 1871 ամի 'ի հասակի 62 ամաց", իսկ միւս երեսի վերայ —.«Շինուածս եկեղեցւոյս Ս. Յովհաննու Կարապետի հոգետան եւ աղքատանոցի նորին կանգնեցաւ ըստ կր-տակի հանգուցեալ տիկնոջն Ակիւլեայ Ալանալեան աշխատութեամբ եղբօրորդւոյ նորա Յովհաննու Խաքրանեան 1875—81»։

Եկեղեցու բակը—Ս. Լուսաւորչի հանգստարանը պահուում է

բարեկարգ վիճակի մէջ։ Նորա ընդարձակ տարածութիւնը շրջապատուած է աղիւսակերտ պարիսպներով, միջից ամեն կողմից ծառուղիներ են անցկացրած և ննջեցեալների գերեզմանները փորուում են կարգով ծառուղիների երկարութեամբ «երամ-երամ», այսինքն իւրաքանչիւր ընտանիքի կամ տոհմի գերեզմանները մի տեղ փայտեայ կամ երկաթեայ վանդակապատների մէջ։ Այս գերեզմանոցումն են թաղուած բարեգործ Գասպար Մարկոսեան Պապովը և Նիկողայոս Աջեմեանը [1]), որոնց վերայ դրուած են և վայելուչ շիրիմներ։ Արժանի է ուշադրութեան նամանաւանդ Աջեմեանի շիրիմը, որ իսկապէս շիրիմ էլ չէ, այլ մի շատ շքեղ կոթողաձև մահարձան, որի պատուանդանը չղկած ու ապակու պէս փայլեցրած որձաքար է, միջին մասը մեծագին սև մարմարիոն, վերին մասը սպիտակ մաքուր մարմարիոն, հանգուցեալի նրբաքանդակ պատկերով։ Սև մարմարիոնի մէջ հագցրած է մի սպիտակ մարմարիոնեայ տախտակ, որի վերայ ոսկէ տառերով փորագրուած է. «Բարեգործ Նիկողայոս Աճեմեան 1818 Ապրիլի 17 1888 Յուլիսի 10»։

Հանգստարանի արևելեան կողմը կառուցուած են եկեղեցու արձանագրութեան և հանգուցեալ Ակիւլինէի տապանագրի մէջ յիշուած Աղքատանոցի և Հոգետան փոքրիկ շինութիւնները և քաղաքիս «Հայոց եկեղեցական Հոգաբարձութեան» Անկելանոցի ընդարձակ և փառաւոր շինութիւնը, որի մէջ խնամուում են վաթսունի չափ աղքատներ, տնանկներ և անկեալներ։

Ս. Կարապետը նորաշէն լինելու պատճառով չունի ոչ ձեռագիր և ոչ հին եկեղեցական սպասներ. նա ունի միայն մի սրբութիւն Ս. Կարապետի մասունքը, որ ընծայել է նորան Ս. Լուսաւորիչ եկեղեցին։ Դա պահուում է մի ենեսը ապակի քաշած արծաթեայ տուփի մէջ, որի շրջանակի վերայ գրուած է. «Յիշատակ է սբ խաչ պատուամին ծնողացն հոգուն 'ի դուռն... մասն Ս. Կարապետին է. թվն ռնխբ.»։

## Ս. ԽԱՉ ՎԱՆՔԸ.

Ս. Խաչ վանքը շինուած է քաղաքից եօթ վերստ հեռու դէպի հիւսիս մի բարձր ձորաբաշի վերայ, որի տակից, ձորի միջով, հոսում գնում են Ս. Խաչի բարեհամ աղբիւրի սառնորակ ջրերը։ Այդ վանքն

[1]) Հանգուցեալ Նիկողայոս Աճեմեանը իւր բոլոր կարողութիւնը կտակել է Նոր Նախիջևանում տեխնիքական դպրոց շինելու ու պահելու համար, իսկ Գասպար Պապով մի տուն է թողել Ռոստովում Նոր-Նախիջևանից պատանիների Ռուսաստանի և արտասահմանի բարձրագոյն դպրոցներում կրթութիւն ստանալու համար։

էլ եկեղեցիների հետ միասին հիմնարկել է Յովսէփ արքեպիսկոպոսը 1783 թուին, շինութիւնն առաջ է տարել 1786 թուին և աւարտել ու օծել է 1792-ին։ Որ դա հիմնարկուել է 1783 թուին—այդ երևում է ձեռագիր «Դուլթարից», որի մէջ այդ մասին գրուած է. „Ընդ սմին, այսինքն Ս Լուսաւորչի հիմնարկութեան հետ միասին (1783 թ.), օծաք զհիմունս վանիցն, որ յանուն Փրկչին և Ս. Խաչին»։ Իսկ որ դորա շինութիւնը սկսուել և առաջ է տարուել 1786 թուին—այդ էլ երևում է դարձեալ նոյն ձեռագիր «Դաւթարից», որի մէջ



Ս. ԽԱՉ.

ասուած է. «1786 յունիսի 21. 'ի սբ. Լուսաւորչու բարեկնդան կիւրակէին վերոյ Փրկիչ եւ կամ սբ Խաչ վանից հիմն արկի, և շինութեան սկիզբն առնել ետու. Ա.Ծ. հասուսցէ 'ի կատարումն, որ անա դեգերիմ 'ի կատար հասուցանել»։ Վանքի շինութիւնն աւարտելու և օծելու 1792 թուականը մենք գտնում ենք տաճարի այժմուայ շինութեան հարաւային դրան ձախ կողմը դրսից պատի մէջ հագցրած

մարմարիոնեայ տախտակի վերայ փորագրած հետեւեալ արձանագրութեան մէջ. «Շնորհօքն Ածոյ կառուցի զսուրբ խաչ վանքս, եւ հաստատեցի սմա զդպրոցս եւ զտպարանս ես Սանահնեցի Արղութեանց Ջիոբէգի



Ռ. ՊԱՏԿԱՆԵԱՆԻ ԿԱԲԻՆԵՏԸ

որդի եւ սբ էջմիածնայ նուիրակ եւ Ռուսաց երկրի Հայոց ազգի առաջնորդ Յովսէփ արքեպիսկոպոս ի կայսրութեան ամենայն Ռուսաց Եկատարինէ Ալեքսեովնին Երկրորդի եւ 'ի հայրապ'տութեան ամենայն

**Հայոց տեառն Ղուկասու կաթուղիկոսին աշխատութեամբ հոգեւոր որդւոյն իմոյ Բայազետցի Կարապետ վարդապետին յամի Տեառն 1791 եւ 'ի Հայոց թուին ռմխ 'ի սեպտեմբերի։ Օծաւ 1792 Նոյեմբերի 27»։** Այս արձանագրութեան մէջ, ինչպէս կարելի է տեսնել, վանքի օծման թուականն երկու տեսակ է նշանակուած՝ «Օծեալ եղև յամի Տեառն 1791 և 'ի Հայոց թուին ռմխ 'ի սեպտեմբերի» և «Օծաւ 'ի 1791 Նոյեմբերի 27»։ Թէև բուն արձանագրութեան մէջ յիշուած է 1791 թուականը, իսկ «Օծաւ 1792 Նոյեմբերի 27» բառերը փորագրուած են մարմարիոնի շուրթի վերայ, բայց մենք այդ վերջինն աւելի ճիշդ ենք համարում, որովհետև վանքն օծուել է Գրիգորոպօլ քաղաքի հիմնարկութիւնից յետոյ, որ, ինչպէս յայտնի է, եղել է 1792 թուին։

Մեզ յայտնի չէ, թէ ինչ ոճով է կառուցուած եղել տաճարի հին շինութիւնը, որովհետև դա հիմնովին վերաշինուել է 1862 թուին Գաբրիէլ վարդապետ Այվազեանի առաջնորդութեան և Մկրտիչ վարդապետ Յովակիմեանի վանահայրութեան օրերով Գէորգ Խաթրանեանի և Ալէքսան Ալաջալեանի աշխատութեամբ, բայց ներկայ շինութիւնը հայկական ճարտարապետութեան և ոչ մի նշոյլ չունի։ Դա իւր գմբէթի լայն-բոլորշի ձևով, հարաւային և հիւսիսային դռների սիւնազարդով աւելի հին բիւզանդական ոճն է յիշեցնում, թէև այդ ոճն էլ շինութեան մէջ լիովին պահպանուած չէ։ Տաճարը թէև վերաշինութեան ժամանակ մի փոքր մեծացրած է, բայց դարձեալ մեծ չէ. նորա երկայնութիւնը՝ սեղանից մինչև արևմտեան դուռը 28 քայլ է, իսկ լայնութիւնը՝ հիւսիսային դռնից մինչև հարաւայինը 20 քայլ։ Արևմտեան դրան առաջ շինուած է զանգակատունը, մի շինութիւն, որ, բացի նորանից, որ շատ անշնորհք ու տգեղ է, այլ և իւր սրածայր աշտարականման ձևով ամենևին չի համապատասխանում եկեղեցու շինութեան ընդհանուր ոճին, որ բաւականին վայելուչ ու զուգորիկ է։

Տաճարի պատերի մէջ դրսից և ներսից զետեղած են բազմաթիւ խաչքարեր, որոնք բոլորը ևս արձանագրութիւն ունին։ Արժանի են ուշադրութեան գլխաւորապէս դրսի խաչքարերը, որովհետև դոքա աւելի խոշոր են, աւելի նուրբ քանդակներ ու ընդարձակ արձանագրութիւններ ունին, քան թէ ներսինները, որոնց համառօտ արձանագրութիւններն էլ ներկուած լինելու պատճառով համարեա թէ չեն կարդացուում։

Դրսի որձաքար և մարմարիոնեայ խաչքարերի վերայ մենք կարդում ենք.

**ա. Սբ խաչս բարեխօս է Պիաքային եւ հայրն Սարգսին եւ եղ-**

բարցն Յովհաննէսին եւ Վարդերեսին թվ. ջհբ (972—1523.) Սեպտեմ-բերի իէ։

բ. Սբ Նշանս բարեխօս է։ է Բլըին. կենակցին սովին Համբէին եւ ծնողացն Սահակի Ղում խթին թվ. ջբ (902—1453.)։

գ. Սբ Նշանս բարեխօս է ի Ծատրին Նուրատին համակողին կո-ղակցին Գուլասէ խթնին թվ. ջիզ (926—1477.)։



Մ. ՆԱԼԲԱՆԴԵԱՆ.

դ. Սբ Նշանս բարեխաւս է Յովհանէսին Ըռնձօր խթն եւ ծնո-ղացն Վարդերին մարինէ Մարթային թվ. ջէ (907—1458.)։

ե. . . . . . . . . Յս Քս. թվ. ռճկա (1161—1712.). . . . . .
եւ ծնօղքն Առաքել մհտսի Մինաս մուրատ կանգցա Սբ Գէորգա նեոս վրակց մհտսի ալսէթեր պալի մհտսի Գրիգոր մհտսի Սողոմոն։

զ. ՅՇԷ ՍԲ. ԽԱՉՍ ՏՐ ՕՎԱՆԷՍԻ ՈՐԴԻ ՄՀՏԻ ՓԱՆՈՍԻՆ ԾՆՈՂԱՑԸ ՀՈՒՌՈՆ ԹՎԻՆ ՌՃԿԱ (1161—1712.)։

է. ՍԲ. ՆՇԱՆՍ ԲԱՐԵԽՕՍ Է ՆԱՀԱՏԱԿԻ Պ ԳՈՐԳԻՆ Թ ՋՁԳ (983—1434)։

ը. ՍԲ ՆՇԱՆՍ ԲԱՐԵԽՕՍ Է ԱԲՐԱՀԱՄԱՅ ՄԵԼԻՔԻՆ ՍԱՐԳՍԻՆ ՄԱՅՐԻՆ ՅՈՒՍԻՆ ԱՎԱՖ ՊՐ ԻՆ ԹՎ ՊԿԸ (868—1449)։

թ. ՅՇԷ ՍԲ ՆՇԱՆՍ ՅՈՎԱՆԷՍ ԱԲԵՂԻՆ ԵՒ ԻՒՐ ԵՂԲԱՒՐՆ ՍԻՄԷՕՆ ԿՐՕՆԱՒՈՐԻՆ ԵՒ ԾՆՈՂԱՑ ԻՒՐՈՑ ԹՎ ՊՂ (890—1441)։

ժ. ԲԱՐԵԽՕՍ ԵՆ ՍԲ ՆՇԱՆՍ ԱՂԻ ՏԻԿԻՆ ՍՈՒԼԹԱՆ ԽԱԹԻՆ ԵՒ ՈՐԴՒՈՅՆ ՆՈՒԱՖԵԼԻՆ Թ. ՋԻԲ (922—1483)։

ժա. ՅԻՇԵՑԷ ՍԲ ՆՇԱՆՍ ՏՐ ՊԵՏՐՈՍԻՆ ԵՒ ԵՐԻՑԿՆՈՋՆ, ԵՒ ԶԱՒԱԿԱՑՆ ՏՐ ՕՎԱՆԷՍԻՆ ՄԱՆՈՒԿԻՆ ՁԵՌԱՄԲ ՊՐՆԻՆ Թ. ՌՃՁԳ (1153—1704).

ժբ. ԲԱՐԵԽՕՍ Է ՍԲ ՆՇԱՆՍ ԵՐԵՈՆ ԵՐԻՑՈՒՆ ՅՈՎՀԱՆՆԷՍԻՆ ՏՐ ՊԱՊԱՅԻՆ ԵՒ ՅՈՒՍՊԻՖԱՅԻՆ ԹՎ. ՋԹ. (909—1460)։

ժգ. ԲԱՐԵԽՕՍ ԵՆ ՍԲ ՆՇԱՆՍ ՏՐ ԱԾԱՏՐԻՆ ԵՐԻՑԿՆՈՋՆ ԶԷՐԻՖ ԽԱԹ. ԷՏԻՆ ԹՎ ՋԻԹ (929—1480)։

*Վանքի բակը, որ երեք կողմից շրջապատուած է պարիսպներով, իսկ մի կողմից վանդակապատով, ունի իւր մէջ, բացի եկեղեցուց, և վանահօր բնակարանը և նախկին «ժառանգաւորաց դպրոցի» ընդարձակ շինութիւնը, որի սենեակները ներկայումս վարձու են տրուում քաղաքից ամառանոց եկողներին։*

*Վանքի հիւսիս-արևելեան կողմն ընկնում է Ս. Խաչի ագարակը «վանքի խուտորը» 30 տուն հայ ժողովրդով, որ համարւում է քաղաքի մասը և որի բնակիչները մշակում են վանքին պատկանած 300 օրավար հողի մի մասը, ամարանոցի են տալիս իւրեանց բնակարանները և զանազան մանր պարապմունքներով հազիւ-հազ հայթհայթում են իւրեանց աւուր պարէնը։ Իսկ հիւսիսային կողմն ընկնում են վանքի ձորը, բանջարանոցը և գեղեցիկ պարտէզը, որոնք միանում են վանքի հետ ձորի վերայ ձգուած փայտեայ կամրջով և բարձր բազմաստիճան սանդղքով։*

*Ամենամեծ սրբութիւնը վանքի մէջ, որ և ծառայել է իբրև հիմք շինութեան և անուանակոչութեան, համարւում է այն մեծ խաչքարը, որ այժմուայ շինութեան մէջ տեղաւորուած է աւագ դասի սիւնի մէջ դէպի ժողովրդի կամգնելու տեղը։ Թէև այդ քարը ոչ մի արձանագրութիւն չունի, բայց 'ի նկատի առնելով նորա յատկութիւնը և նորա վերայ քանդակուած խաչի ձևը, կարելի է ենթադրել, որ նա շատ հին է և, գուցէ, հէնց բերուած լինի Հայաստանից։ Այժմ այդ խաչքարն առնուած է ոսկէզօծ ապակիածածկ շրջանակի մէջ և գոյացնում է մի փոքրիկ պահարան, որի մէջ դրուած է երկու ուրիշ խաչ՝ մէկը*

պղնձէ մեծ՝ առանց մասունքի, իսկ միւսն արծաթէ՝ փոքր անյայտ մասունքով, որոնք մի անունով քարէ խաչի հետ կոչւում են «Ս. Խաչ»։

Վանքի պահարանում պահւում են մի քանի հին ձեռագիր, Յովսէփ արքեպիսկոպոս Արղութեանի և Յարութիւն վարդապետ Ալամդարեանի մեծադիր հին պատկերները և մի երկաթեայ երկգլխանի հասարակ գաւազան, որ աւանդութեամբ ասում են, թէ պատկանել է Ալամդարեանին։

Եկեղեցու պատկերների մէջ արժանի են ուշադրութեան Հոգեգալստի մեծադիր շքեղ ոսկեզօծ շրջանակի մէջ առած պատկերը, որ նկարել է Երուսաղէմի նուիրակ Մամբրէ վարդապէտ Մարկոսեանը և շրջանակի մէջ առել ու նուիրել է եկեղեցուն քաղաքի „Հայոց Բարեգործական



Մ. ՆԱԼԲԱՆԴՅԱՆԻ ՏՈՒՆԸ

ընկերութիւնը“ իւր քսանամեակի առթիւ, և Ս. Աստուածածնի վերափոխման և Տրդատի մկրտութեան պատկերները, որոնք ինչպէս երևում է նոցա նկարի ու գոյների նրբութիւնից, ճարտար արուեստագէտի վրձնի արդիւնք են։ Տրդատի մկրտութեան պատկերը, որի վերայ նկարուած են Ս. Լուսաւորչի, նորա չարչարանքի ու Տրդատի պատկերները, նկարուած է Իտալիայում։ Նա ունի հետևեալ իտալերէն և հայերէն լեզուներով գրած յիշատակարանը. «Scuola di S. Gregorio luminator della Naziona Armena 1692». «Ո՛վ Սբ. Լուսաւորիչդ Գրիգորիէ մաղթեա՛ վասն տառապելեացս եւ մանաւանդ վաճառականաց Հայոց որք ուխտեալք եւ եղբայրացեալք գոլով ետուն տպել զտիպ հրաշալի չարչարանաց քոց ընդ հովանեաւ սբյ եկեղեցւոյն որ

յանուն երեւման Խաչին կայ շինեալ 'ի տեղւոջն Վենետկոյ 'ի մեր թուոյն ռճխա»։ Այս պատկերի հին օրինակը նորոգել տալով, նուիրել են վանքին Գէորգ և Յարութիւն Խաթրանեանները 1836 թ.

Վանքի բագում թաղուած են Միքայէլ Նալբանդեանցը, Ռափայէլ Պատկանեանցը, Յարութիւն վարդապետ Ալամդարեանցը, բարեգործ Գէորգ Տիգրանեանը, Կիւրեղ եպիսկոպոս Սրապեանը և միւսները։

Կիւրեղ եպիսկոպոսի վերայ ձգուած մարմարիոնեայ գերեզմանաքարի վերայ փորագրուած է վեհափառ Հայրիկի գրած հետևեալ տապանագիրը.

Հանգիր, ով ժիր մշակ,
Վաստակեալ 'ի հունձս աւետարանի.
Երուսաղէմի մայր Սիօնի ծաղիկ,
Նուիրեցար Էջմիածնի լուսակերտ Սիօնի.
Այլ աւա՜ղ դու վաղաժամ թառամեցար,
Եւ լռեց քարոզչիդ մշտախօս բարբառ.
Ով դու սիրելի վարդապետ ժողովրդեան,
Եկիր 'ի վերջոյ նորա գիրկ հանգեցար.
Նորոյ Նախիջևանի պատուական ազգայինք
Եդին զայս մահարձան 'ի վերայ գերեզմանիդ.
Որ յօդեաց զանեղծ արձանագիրս
Առ 'ի պահել զանուանդ յիշատակ.
Ելաց 'ի վերայ նշխարաց շիրմիդ
Հայոց վշտակիր Հայրիկ։

Ծերունի Նախջևանցիք պատմում են, թէ առաջները վանքում պահուում է եղել մի տախտակեայ դուռն, որ աւանդութեամբ բերուած է համարուում եղել Անիից։ Վանքի միաբանները դորան իբրև մի անպէտք բան միշտ ձիւնի ու անձրևի տակ պահելով և գործ ածելով իբրև թէյի սեղան, սղոցել, քերել և, վերջիվերջոյ ոչնչացրել են։

Վանքի բանջարանոցի սահմանումն է գտնուում «Սաղլի-Սու» կոչուած սուրբ աղբիւրը, որի տեղը այժմ սափարակ է, իսկ աղբիւրի վերայ շինուած է մի մատռաձև շինութիւն, որի մէջ դրուած պատկերների առաջ ուխտաւորները մոմ են վառում ու աղօթում։

Նախիջևանի գիւղերն ունեն մի մի եկեղեցի, բացի Թոփտիից, որ ունի երկու եկեղեցի, և Եկատերինաւանից, որ եկեղեցի չունի, այլ մատուռ-աղօթատուն վէմ-քարով։

Մեծ-Սալայի եկեղեցին է Ս. Աստուածածինը, Փոքր կամ Սուլթան-Սալային—Ս. Գէորգը, Չալթիրինը—Ս. Համբարձումը, Նիսուլթայինը-

—Ս. Կարապետը, Թոփտիլինը—Ս. Սարգիսը և Ս. Փրկիչը և Եկատերինաւանինը— Ս. Յարութիւնը։

Այս բոլոր եկեղեցիները թէ իւրեանց շինութեան ոճով և թէ ներքին սարգ ու կարգով, ըստ ամենայնի, նման են քաղաքի եկեղեցիներին, բացի Նորշէն Ս. Փրկչից, որ շինուած է հայկական ճարտարապետութեամբ ու ոճով։



Մ. ՆԱԼԲԱՆԴԵԱՆԻ ՇԻՐԻՄԸ Ս. ԽԱՉ ՎԱՆՔՈՒՄ

## ԾԷՍԵՐ ԵՒ ՍՈՎՈՐՈՒԹԻՒՆՆԵՐ

### *Հարսնախօսութիւն եւ նշանդրէք*

*Հարսանիքները, կամ, ինչպէս իրենք Նախիջևանցիք ասում են, «Հարսնիքները», ինչպէս ամեն տեղ, Նախիջևանումն էլ սկսում են աշնանը և շարունակւում են մինչև Մեծ-պասը, երբ գիւղացիք վերջացնում են իրեանց դաշտային աշխատանքները, իսկ քաղաքացիք վերադառնում են ամառանոցներից և սկսում են իւրեանց կեանքի աշնան և ձմեռուան սեզօնները։*

*Հարսնախօսութիւնը սովորաբար լինում է կամ տղայի ու աղջկայ ազգականների ձեռքով, կամ քահանաների միջնորդութեամբ և կամ առանձին հարսնախօսների ձեռքով, որոնք կոչւում են «Պիբօնչի»։ Աղջիկ հաւանելու ու ուզելու գործում, բացի աղջկայ տեսքից ու գեղեցկութիւնից, մեծ դեր է խաղում և աղջկայ վերայ եղած փողն ու բաժինքը, կամ, ինչպէս ասում են, «ջըհէզը»։*

*Նախիջևանում կապուած պսակները մեծաւ մասամբ հաշուի ու գործնական դիտումների արդիւնք են։ Ամուսնութեամբ ինտելլիգենտ մարդիկ կեանքի ապահովութիւն են ձեռք բերում, վաճառականներն իւրեանց մայր գումարներն են մեծացնում և իւրեանց առևտրական գործերն ընդարձակում, գործակատարները դուրս են գալիս իւրեանց «աղաների» ու «չորպաջիների» մօտից և իւրեանց սեփական գործը սկսում, և այլն և այլն։ Հաշուի ամուսնութիւնները, 'ի հարկէ, աւելի յաճախ տեղի են ունենում քաղաքացիների մէջ, քան թէ գիւղացիների, որոնք բնականապէս աւելի են պահպանել իւրեանց նահապետականութիւնը։ «Հէլալ կաթնակեր» և «Օջախի որդի», խօսքերը որոնց մինչև ցայսօր քիչ-շատ դեռ գին են տալիս գիւղացիք, քաղաքացւոց բերանում արդէն կորցրել են իւրեանց խորհուրդը և նշանակութիւնը։ Քաղաքում ոչ մի բանի չեն նայում, մինչև իսկ տեսքն ու գեղեցկութիւնը, «բնութքն» ու «մեարիֆէթը», գիտութիւնն ու կրթութիւնը բանի տեղ չեն դնում։*

*«Կարգուել» ցանկացող քաղաքացի երիտասարդը, երբ «խնամի է ուղարկում» նախապէս և տիրապէս պատուիրում է իմանալ, թէ աղջկայ տէրը ո՞րքան փող պէտք է տայ աղջկայ վերայ, ո՞րքան «ջըհէզ» միտք ունի անելու։ Իւրեանց աղջիկներին „հարս անել“ ցանկացողներն էլ իւրեանց հերթով նախապէս աշխատում են իմանալ, թէ փեսացուն ինչ կարողութեան տէր է։ Գիւղացիք տեսնում ու հաւանում են աղջիկներին եկեղեցիներում, հարսանիքներում ու հրաւէրներում կամ „զիաֆէթներում“ և ուխտագնացութիւնների ժամանակ, մասնաւորապէս վարդավառին ու „խըտրելլեզին“, իսկ քաղաքացիք ամեն տեղ, որովհետև քաղաքի աղջիկները բոլորովին ազատ են և ամեն տեղ լինում են, ամեն տեղ զբօսնում ու շրջում են երիտասարդների հետ։*

*Սիրահարութեամբ, սրտի միտումներով ու զգացմունքի հակումներով եղած ամուսնութիւնների սակաւութեամբ պէտք է մեկնել և այն հանգամանքը, որ Նախիջևանի գաղթականների մէջ համարեա թէ սիրահարական երգ չկայ և յիշողութիւն էլ չկայ, որ մի ժամանակ շատ եղած լինի։ Հաշիւը, կողմնակի դիտումները և կարիքները բանաստեղծութիւն չեն սիրում։ Իդէալների, գաղափարների և զգացմունքների աշխարհ չէ Նախիջևանը. պրոզան, կեանքի լուրջ ու կոշտ պրոզան է այս կողմերի հայ գաղթականների մտքում կառավարողը, սրտին տիրողը, իշխողը։ Մեզ յաջողեց գրի անցնել „Արզու և Խամբեր“ վերնագիր կրող երգը, որ Ղրիմից բերուած լինելով, մինչև ցայսօր դեռ պահպանուել է գիւղացիների բերանում, և որ սիրահարական երգի բոլոր տարրերքն է պարունակում իւր մէջ։ Այդ երգն այլ և՛ս կոչւում է „Աստ ճանի երգ“։*

ԱՐԶՈՒ

1, Փարչս առի, ջուրի գնացի,
Տալտրմիշ արի, վերուցի,
Հոգիս, Հաւատս, Խամբեր,
Օպռճանս կորուցի
Հոգիս, Հաւատս, Խամբեր,
Օպռճանս կորուցի։

### ԽԱՄԲԵՐ.

2, Ես ասօր չորվախ գնացած չիմ,
Ձեռքս, երեսըս լուացած՝ չիմ.
Աղու տասնէ, կը խըմիմ,
Ես քու ապռճանդ տեսած չիմ։

### ԱՐԶՈՒ.

3, Աղու ուզենասնէ, աղու կ'լամ,
Ինձի ուզենասնէ, ես կ'լամ.
Բայց իմ ապռճանս ալ
Ճերմակ ծոցիդ մէջը պէնկ է [1]։

### ԽԱՄԲԵՐ։

4, Քաղաքը փորուած էր,
Ճերմակ օչխարը խուզխով էր
Ապռճանիդ վըրան
Ի՞նչպէս գիր գրած էր։

### ԱՐԶՈՒ.

5, Քաղաքը փորուած էր,
Ճերմակ օչխարը խուզխով էր.
Ապռճանիս վըրան
Անո նս ալ գրած էր։

### ԽԱՄԲԵՐ.

6, Ջուրը կերթար օլուխ, օլուխ [2].
Կ'քաշէին թօլուխ, թօլուխ.
Ապռճանդ գըտնողին
Ի՞նչ պիտ տաս մուշտուլուխ։

### ԱՐԶՈՒ

7, Ջուրը կերթար օլուխ, օլուխ,
Կ'քաշէին թօլուխ թօլուխ.
Ապռճանս գըտնողին
Արզուն կերթայ մուշտուլուխ։

---

1) Պէնկ—խալ, 2) Օլուխ օլուխ—դարխ դարխ,

**ԽԱՄԲԵՐ.**

8, Աստեղը ինձի մեղք կանին,
Կէնճ [1]) կլոխս խըլյմալամիշ կանին [2]),
Եղէր էրկուսս մէկ լանքնէ,
Մեզի զընտան կըձգին.

**ԱՐՋՈՒ.**

9, Տունին տիրէկը [3]) մարջան [4]) է,
Հոգիիս սիրածը տուն իս.
Եղէր էրկուսիս մէկ զնտան ձգիննէ,
Զնտանը մեզի առքայութին է։

**ԽԱՄԲԵՐ.**

10, Բէկը իմիս տայիս է,
Կտրած օրէնքին խայիլ իմ.
Ըլէմ աշխըրքին հետ չիմ փոխիլ,
Արզուն իմիս փսյըս է.

**ԱՐՋՈՒ.**

11, Գետինին վրայէն չորս ձիաւոր կուգան,
Չորսին մէկ հատը մուրատը է.
Ես կ'ճանչնամ Խամբերին,
Օրթայի դոռու [5]) ձիովը Խամբերն է։

**ԽԱՄԲԵՐ**

12, Ինչ որ էղիլ է էղիլ է.
Ճակատս սևը գրուիլ է.
Ճակատս սևը գրուած էր,
Խամբերին զուլում էղաւ.

Սիրահարական երգի տարբերք է պարունակում իւր մէջ և հետևեալ վեց տողը, որ Նախիջևանի պառաւներն սովորաբար ասում են, երբ որ տեսնում են մէկին նստած քունը տանելիս.

Քունն էկիլ է, աչքն առիլ է,
Եարն էկիլ է, դուռը կայնիլ է.
Ինչ գիտէ քի եարին էշթայ,

---

[1]) Կէնճ—երիտասարդ, [2]) խըլյմալամիշ անել—ջարդել, կոտրել, [3]) Տի-րէկ—Սիւն, [4]) Մարջան—Բուստ, [5]) Դոռու—կարմիր.

Ինչ գիտէ քի քունին էշթայ,
Քունն էշթայ-նը, մէմայ կուգայ,
Եարն էշթայ-նը, մէմայ չի գայ [1])

Նախիջևանում հին ժամանակներն ապրելուս է եղել մի ժողովրդական երգիչ Աղապալի անունով, որ ՚ի միջի այլոց, մի քանի սիրահարական երգեր է ասել և տարածել ժողովրդի մէջ, բայց ներկայումս այդ երգերը համարեա թէ ամբողջովին մոռացուել են։ „Աղապալի"-ին է պատկանում յայտնի „Սամաւարի երգը", որ քանիցս տպագրուած է. Նորան է, գուցէ, պատկանում և „Երեք օրուան լուսնի նման ունքերդ" յայտնի երգը, որ իւր գեղեցկութեամբ Նախիջևանի ժողովրդական սիրահարական երգերի մէջ ամենաընտիրը կարող է համարուել։

Երբ որ երկու կողմերից էլ համաձայնութիւնը կայանում է, փեսացուն առնում է իւր հետ իւր ամենամօտ ազգականներին և գնալով աղջկայ տունը, „խօսք" է անում, այսինքն համբուրում է „բիւթայի" և „բլանայի" — աներոջ և զոքանչի ձեռքերը, պաշտօնապէս փեսացու է յայտարարուում և շնորհաւորութիւն ընդունում։ „Նշանտուք" խօսքը, որ Նախիջևանցիք գործ են ածում, արտայայտում է ոչ թէ ընդհանրապէս ամբողջ նշանադրութեան հանդէսը, այլ միայն նշան տալու կամ մատանի փոխելու պարզ գործողութիւնը, որ կատարուում է կամ նոյն խօսքի ժամանակ և կամ „բէհին"։ Ընդհանուր նշանադրութեան գործողութիւնն արտայայտելու համար Նախիջևանցիք սովորաբար գործ են ածում տաճկական այդ „բէհ" բառը, որ, ինչպէս յայտնի է, նշանակում է իսկապէս գրաւական, այսինքն այդ դէպքում հարսնացուն ներկայանում է ինչպէս „բարի" կամ ապրանք, որ գնուած է, բայց տակաւին գինը ամբողջովին չի վճարուած, այլ միայն մի մասը։ Փոխաբերական մտքով, ՚ի հարկէ, „բէհ" բառը կարող է նշանակել և նշանադրութիւն։

„Բէհը" կատարուում է „խօսքից" մի քանի օր յետոյ աղջկայ տանը և շատ հանդիսաւոր կերպով, այնպէս որ շա-

[1]) Այս վեց տողը հաղորդել է մեզ Տէր-Սահակ Ջարիֆեանը։

տերը, որոնք հանդիսաւոր „բէհ" են կատարել, այլ և հան-
դիսաւոր հարսանիք չեն անում, որովհետև „բէհն" էլ հար-
սանիքի պէս բան է և նոյն ծախսն ու „դաւաթն" է պա-
հանջում։ Յաճախակի մեծ ծախսերից խուսափելու համար
„բէհն" ու „խօսքը" միացնում են ու իսկոյն սկսում են հար-
սանիքի պատրաստութիւն տեսնել։

Գիւղերում սովորաբար հասունացած աղջկայ տունը խնամի է
գնում տղայի հայրը կամ մօտ ազգականը։ Հասնելով տուն և
մտնելով բակը, նա անմիջապէս չէ մտնում, այլ նախապէս
կանգնում է դրան առաջ և դուրս է կանչում աղջկայ հօրը
և յայտնում է նորան իր գալու պատճառը։ Եթէ խնամու ա-
ռաջարկութիւնը հաճելի է լինում աղջկայ հօրը, նա իսկոյն և
եթ ներս է հրաւիրում նորան, յարգում և «ջուղար» տալիս, այ-
սինքն նորա առաջարկութիւնն ընդունում է, իսկ եթէ հաճե-
լի չի լինում, նա նորան ճանապարհ է դնում առանց ներս
հրաւիրելու և առանց „ջուղարի"։ Առաջին, այսինքն, առա-
ջարկութիւնն ընդունելու դէպքում տղայի հայրն արտասանում
է „խօսքը մէկ Աստուած մէկ" ասացուածքը, որով և ամ-
րացնում է գործը, և անմիջապէս ընդհանուր համաձայնու-
թեամբ որոշւում է „բէհի" օրն ու տեսակը, որովհետև գիւ-
ղերում բէհը լինում է մեծ և փոքր։ Եթէ որոշւում է „փոքր
բէհ" անել, նշանակուած օրը տղայի ծնողները և ամենամօտ
մարդիկ սահմանափակ թւով գնում են աղջկայ տունը, հա-
մեստ կերպով ուտում, խմում, ուրախութիւն են անում „նշան-
տօք" կատարում, այսինքն մատանի են դնում աղջկայ մատը.
իսկ եթէ որոշւում է „մեծ բէհ" անելու, նշանակուած օրն
աւելի մեծ թւով մարդիկ են գնում, հրաւէրք են անում,
դաբ ու զուռնայ են կանչում և աւելի մեծ հանդիսով են կա-
տարում „նշանտօքը"։ Երկար ժամանակ քէֆ, ուրախութիւն
անելուց, կուշտ ու կուռ ուտել-խմելուց և պարելուց յետոյ, աղջկայ
տանից բոլոր հրաւիրեալները նոր խնամիների հետ գնում են տը-
ղայի տունը „փեսատես", որովհետև դեռ գիւղերում պահպա-
նւել է փեսայի մինչև հարսանիքը աղջիկը չ'տեսնելու և աղ-
ջկայ տունը չ'գնալու սովորութիւնը։ Աղջկայ տանից փոխա-

Ինչ գիտէ քի քունին էշթայ,
Քունն էշթայ-նը, մէմալ կուգայ,
Եարն էշթայ-նը, մէմալ չի գայ [1])

Նախիջևանում հին ժամանակներն ապրելուս է եղել մի ժողովրդական երգիչ Աղապալի անունով, որ 'ի մէջի այլոց, մի քանի սիրահարական երգեր է ասել և տարածել ժողովրդի մէջ, բայց ներկայումս այդ երգերը համարեա թէ ամբողջովին մոռացուել են։ „Աղապալի“-ին է պատկանում յայտնի „Սամաւարի երգը“, որ քանիցս տպագրուած է. Նորան է, գուցէ, պատկանում և „Երեք օրուան լուսնի նման ունքերդ“ յայտնի երգը, որ իւր գեղեցկութեամբ Նախիջևանի ժողովրդական սիրահարական երգերի մէջ ամենաընտիրը կարող է համարուել։

Երբ որ երկու կողմերից էլ համաձայնութիւնը կայանում է, փեսացուն առնումէ իւր հետ իւր ամենամօտ ազգականներին և գնալով աղջկայ տունը, „խօսք“ է անում, այսինքն համբուրում է „բիւթայի“ և „բիանայի“ – աներոջ և զոքանչի ձեռքերը, պաշտօնապէս փեսացու է յայտարարւում և շնորհաւորութիւն ընդունում։ „Նշանտուք“ խօսքը, որ Նախիջևանցիք գործ են ածում, արտայայտում է ոչ թէ ընդհանրապէս ամբողջ նշանադրութեան հանդէսը, այլ միայն նշան տալու կամ մատանի փոխելու պարզ գործողութիւնը, որ կատարւում է կամ նոյն խօսքի ժամանակ և կամ „բէհին“։ Ընդհանուր նշանադրութեան գործողութիւնն արտայայտելու համար Նախիջևանցիք սովորաբար գործ են ածում տաճկական այդ „բէհ“ բառը, որ, ինչպէս յայտնի է, նշանակում է իսկապէս գրաւական, այսինքն այդ դէպքում հարսնացուն ներկայանում է ինչպէս „բարի“ կամ ապրանք, որ գնուած է, բայց տակաւին գինը ամբողջովին չի վճարուած, այլ միայն մի մասը։ Փոխաբերական մտքով, 'ի հարկէ, „բէհ“ բառը կարող է նշանակել և նշանադրութիւն։

„Բէհը“ կատարւում է „խօսքից“ մի քանի օր յետոյ աղջկայ տանը և շատ հանդիսաւոր կերպով, այնպէս որ շա-

[1]) Այս վեց տողը հաղորդել է մեզ Տէր-Սահակ Զարիֆեանը։

*տերը, որոնք հանդիսաւոր „բէհ“ են կատարել, այլ ևս հանդիսաւոր հարսանիք չեն անում, որովհետև „բէհն“ էլ հարսանիքի պէս բան է և նոյն ծախսն ու „դառաւթն“ է պահանջում։ Յաճախակի մեծ ծախսերից խոյս տալու համար „բէհն“ ու „խօսքը“ միացնում են ու իսկոյն սկսում են հարսանիքի պատրաստութիւն տեսնել։*

*Գիւղերում սովորաբար հաւանած աղջկայ տունը խնամի է գնում տղայի հայրը կամ մօտ ազգականը։ Հասնելով տուն և մտնելով բակը, նա անմիջապէս չէ մտնում, այլ նախապէս կանգնում է դրան առաջ և դուրս է կանչում աղջկայ հօրը և յայտնում է նորան իւր գալու պատճառը։ Եթէ խնամու առաջարկութիւնը հաճելի է լինում աղջկայ հօրը, նա իսկոյն և եթ ներս է հրաւիրում նորան, յարգում և «ջուղաբ» տալիս, այսինքն նորա առաջարկութիւնն ընդունում է, իսկ եթէ հաճելի չի լինում, նա նորան ճանապարհ է գնում առանց ներս հրաւիրելու և առանց „ջուղաբի“։ Առաջին, այսինքն, առաջարկութիւնն ընդունելու դէպքում տղայի հայրն արտասանում է „խօսքը մէկ Աստուած մէկ“ ասացուածքը, որով և ամբացնում է գործը, և անմիջապէս ընդհանուր համաձայնութեամբ որոշուում է „բէհի“ օրն ու տեսակը, որովհետև գիւղերում բէհը լինում է մեծ և փոքր։ Եթէ որոշուում է „փոքր բէհ“ անել, նշանակուած օրը տղայի ծնողները և ամենամօտ մարդիկ սահմանափակ թւով գնում են աղջկայ տունը, համեստ կերպով ուտում, խմում, ուրախութիւն են անում „նշանտօք“ կատարում, այսինքն մատանի են դնում աղջկայ մատը. իսկ եթէ որոշուում է „մեծ բէհ“ անելու, նշանակուած օրն աւելի մեծ թւով մարդիկ են գնում, հրաւէրք են անում, դաբ ու զուռնայ են կանչում և աւելի մեծ հանդիսով են կատարում „նշանտօքը“։ Երկար ժամանակ քէֆ, ուրախութիւն անելուց, կուշտ ու կուռ ուտել-խմելուց և պարելուց յետոյ, աղջկայ տանից բոլոր հրաւիրեալները նոր խնամիների հետ գնում են տղայի տունը „փեսատես“, որովհետև դեռ գիւղերում պահպանուել է փեսայի մինչև հարսանիքը աղջիկը չ'տեսնելու և աղջկայ տունը չ'գնալու սովորութիւնը։ Աղջկայ տանից փոխա-*

դարձ մատանին ուղարկուում է փեսային և կամ նոյն իսկ բէհէ օրը խնամիների ձեռքով, և կամ նշանադրութիւնից յետոյ պատահած մեծ տօներից մէկի ժամանակ — Ծննդեան, Ս. Սարգսին, Բարէկենդանին, Միջինքին, Ծաղկազարդին, Զատկին, և միւս տօներին, երբ աղջկայ և տղայի տներից միմեանց փոխադարձաբար „տարուբեր“ է ուղարկուում։ Տարուբերը, կամ ինչպէս քաղաքացիք ասում են, „խրկուածքը“ բաղկացած է լինում անուշեղէնից՝ խաթմուխ և իփլիկ հալուաներից և զանազան ընծաներից խնամացող ընտանիքի կարողութեան համեմատ։ Ամեն մի „խրկուածք“ ունենում է իւր „տառցը“, այսինքն աղջկայ կողմիցն էլ փոխադարձաբար ուղարկում են անուշեղէն և ընծաներ փեսայի տունը։ Ահա այդ դարձերից մէկի հետ ուղարկում են և մատանի, որ հագցնում են փեսայի մատը իբրև փեսացուի նշան և իբրև փոխ նորա հարսին ուղարկած ու մատը հագցրած մատանիին։

Հին ժամանակները „Նշանտուքի“ ժամանակ նշան օրհնելու և կէս պսակ կատարելու սովորութիւն է եղել, բայց նրշան յետ տալու, կամ, ինչպէս ասում են, „ետ լինելու“ դէպքերի յաճախելու պատճառով, կէս պսակ կատարելը այստեղ էլ ինչպէս ուրիշ տեղերում, արգելուել է հոգևոր իշխանութիւնից։

Մենք ասացինք, թէ քաղաքում բէհը մեծ „դառաթով“ է կատարուում և յաճախ աւելի ծանր է լինում, քան թէ հարսանիքը, ուստի և „դառաթով“ բէհ կատարողները շատ անգամ այլ ևս հանդիսաւոր հարսանիք չեն անում։ „Դառաթ“ ասելով Նախիջևանցիք հասկանում են ամեն մի այնպիսի հանդիսաւոր գործողութիւն կամ արարողութիւն, որի ամեն բանը տեղն է, ամեն բան շքեղ, թանգ և սարգին է, ամեն մանրամասնութիւն, ամեն ծէսք ու սէթևեթք ճշտիւ կատարուած, ճշտիւ պահպանուած է։ Եւ ճշմարիտ, բէհ կատարողը, որ սովորաբար լինում է աղջկայ տէրը, նախօրօք ուղարկում է իւր և իւր նոր խնամինելի ազգականներին տպագրուած հրաւիրատոմսակներ, վարձում է երաժշտութիւն, բռնում է հմուտ խոհարար և բազմաթիւ սպասաւորներ, պատրաստում է շքեղ խնջոյք և նախընթրիք և ընթրիքի փարթամ սեղաններ թանգ-

նոց գինիներով և մասնաւորապէս շամպանով և ազգի-ազգի սեթևեթ-քներով, և այլն և այլն։ Բէհի ամենահետաքրքրական և հանդիսաւոր րոպէն լինում է խնամիների գալու ժամանակը։

Խնամիներն առհասարակ ուշ են գալիս, նազով-տուզով են գալիս, որովհետև այդ օրը նոցա պատիւը շատ մեծ է. այդ օրը նոքա „թոռէ պատն“ են նստում, այդ օրը նոքա անդադար յարգուում ու մեծարուում են, խնամի ջա՛ն, խնամի ջա՛ն, „խնամի-բա՛“, „խնամի մա՛“ քաղցր խօսքերն ասելով ու լսելով։ Երբ որ ուշ, երեկոյեան 11 ժամին, իմացուում է որ խնամիները գալիս են, իսկոյն բէհի տանը բոլորեքեան իրար գըլխով են կպչում, իսկոյն ամենքն ընդառաջ են դուրս գալիս և վառած աշտանակները ու մոմակալները ձեռքերին բռնած, շարուում են գլխաւոր մուտքի դրան երկու կողմը, նշան տալով երաժշտութեան, որ խնամիների երևալում պէս ընդառաջելու հանդիսաւոր „մարշն“ նուագեն։ Դրկախառնութեան, համբոյրների, „բարի սահաթի ըլլայ“, „բարի պսակ առնուն“ շնորհաւորանքի և ուրախ բացականչութիւնների ձայները խառնուելով երաժշտութեան նուագների հետ, մի խուլ, մի անորոշ, բայց քաղցր ժխոր են կազմում, որ, ըստ ամենայնի, համապատասխանում է շքեղ հանդիսին։

Բէհի բնորոշ առանձնայատկութիւնն է „նշանի խուրմաբիան“, որ ուղարկուում է բէհի յաջորդ օրը տղայի տունը մեծ քանակութեամբ և տղայի տանից արդէն բաժանուում է փեսայի բոլոր ազգականներին։ Նշանի խուրապիան զատուում է միւս բոլոր խուրապիաների տեսակից իւր կտորների խոշորութեամբ, իւր առանձին համով ու հոտով և զարդարանքով։ Կտորները լինում են շատ խոշոր, որովհետև խիստ շատ է պահանջուում և բնականապէս հնարաւորութիւն և ժամանակ չի լինում, փոքր, նուրբ և պէս-պէս ձևերով կտորներ պատրաստելու, ինչպէս շինուում են սովորական խուրաբիաները։ Իսկ համի, հոտի և զարդարանքի առանձնայատկութիւնն այն է, որ նշանի խուրապիայի մէջ խառնում են վարդի իւղ և երեսը զարդարում են ցոլուն սեթևեթ-քներով։

Հարսանիքից 15 օր առաջ գիւղերում տղայի տանից ուղարկւում է հարսի տունը պսակի զգեստացուն՝ «խումաշ» շրջազգեստի համար և թանգնոց երեսացու «բուրնու»-ի համար։ «Խումաշ» ասելով, գիւղացիք հասկանում են ամեն մի մետաքսէ կտոր, որից սովորաբար կարւում է հարսի պսակի հանդերձը, իսկ «բուրնուն» կարճ քաթիպայի պէս փիրնազգեստ է, որի երեսացուն աթլաս կամ թաւիշ է, իսկ աստառը մազեղէն։ Քաղաքում նոյն «խրկուածքը», նախ, ուղարկում են «խինա-գեջասիի» օրը և, երկրորդ, աւելի հանդիսով են կատարում այդ պսակի զգեստացուն ուղարկելու ծէսը, քանթէ գիւղերում։ Քաղաքի զգեստեղէնի «խրկուածքը» բաղկացած է լինում պսակի ամբողջ շորից իւր բոլոր պարագաներով, սկսած քօղից, և վերջացրած կօշիկներով, որովհետև այնպիսի հասկացողութիւն կայ, որ հարսն իբրև թագաւորի պատկանելիքը պէտք է տուն գայ տղայի պատրաստած ճզգեստներով։ Մինչև իսկ պսակի կերոններն էլ փեսան է ուղարկում «խրրկուածքի» հետ։

*Խինա-գեջասի, հարս-բաղնիք եւ հարսանիք.*

Խինա-գեջասի տաճկական բառը, ինչպէս յայտնի է, նշանակում է «հինայի-գիշեր», որովհետև այդ օրը, գիշերը կատարւում է հարսի գլուխը հինայ դնելու հանդէսը։ Հարսի գլուխը հինա դնելը, որ այժմ քաղաքում իսպառ վերացել է և պահպանուել է միայն տեղ-տեղ գիւղերում, կատարւում է մեծ հանդիսով։ Պսակից երեք օր առաջ տղայի տանը պատրաստւում է մի աման հինայ և մի մատուցարանի վերայ դրրած մի կերոնի հետ ուղարկւում է հարսի տունը, որտեղ այդ երեկոյ մեծ հրաւէրք է լինում և հաւաքուած են լինում բազմաթիւ աղջիկներ հարս ու փեսայի ազգականներից, հարսի բարեկամուհիներից և ընկերուհիներից։ Աթոռի վերայ բարձ են դնում, հարսնացուին նստեցնում են վերան սենեակի մէջ տեղը կամ անկիւնում, երաժիշտները նուագում են «Ալկէլին» եղանակը և հանդիսականները վառած կերոնը բռնած մէկ մէկ

*պարում ու խաղացնում են հինան։ Կուշտ պարելուց և հինան խաղացնելուց յետոյ, կանայք սկսում են հինան դնել հարսի գլուխը, իսկ աղջիկները հինայից մի մի մատ առնում, քսում են իւրեանց ձեռքի ափին, որ փոխը, կամ, ինչպէս ասում են, «Տառօսը» իրենց էլ լինի։ Հին ժամանակները այդ դէպքում հանդիսականները սովորութիւն են ունեցել մօտենալու հարսնացուին, մի մի մատ հինայ դնելու նորա գլուխը և երգելու «Ալկէլին» երգը, որից այժմ պահուել է հետևեալ կտորը.*

1. Հինա տըրին, պաղնիք տարին,
Չիլֆիւ մազըս փէրչամ արին,
Կուլխուս ալ փօշի կապեցին,
Պերին քօշան կայնեցուցին.
Սիրական քուրիկներ, տառօսը ձեզի։

2. Փեսաս ծնողաց հէլալ օրթի,
Կուլխուն կտակը կապուտ մորթի.
Մէքատիկ էր նա իր սօյին,
Մեռնիմ անոր սէլվի պօյին.
Սիրական քուրիկներ, տառօսը ձեզի։

3. Եփոր աչքս նորան տեսաւ,
Երկու թուշէս ալ կաթեցաւ.
Հարիկ, մարիկ, մընաք բարով,
Աստուած մեզի պահէ սէրով.
Սիրական քուրիկներ, տառօսը ձեզի։

4. Թաքաւորըս կուքայ թուրով,
Հալխը շատ է, կառնու զօռով,
Պաշխիշներով, յարկինքներով,
Աստուած մեզի պահէ սէրով.
Սիրական քուրիկներ, տառօսը ձեզի։

5. Կերթաս մեզմէն ճանփատ տիւզ է,
Կերածըդ չամիչ ու թուզ է,
Ուչքըդ կուլայ, սիրտըդ կուզէ,
Մօրէդ պաժնըվիլ սիրտը չուզէ,
Հարկը կասեն անպէս կուզէ.
Սիրական քուրիկներ, տառօսը ձեզի [1])։

[1]) Այս երգը մի անգամ տպագրուել է „Нахичеванскій Говоръ“-ում։

Քաղաքում, որտեղ, ինչպէս ասացինք, հինայ դնելու սովորութիւնը գլխովին վերացել է և պահուել է միայն «Խինա-գեջասի» անունը, այդ օրը, երեկոյեան ուղարկուում է հարսի պսակի շորերը, մոմերը և կատարուում է ալիւր-մաղէքի հանդէսը և այդ առթիւ մեծ հրաւէրք է լինում աղջկայ տանը։ Հաւաքուում են առհասարակ հարսի ընկերուհիները և ազգական աղջիկները, գալիս է և փեսան իւր մօտ ընկերներով։ Մէջտեղ են հանուում փոքրիկ տաշտը և շրջանակն ոսկեգոյն ու. արծաթագոյն թղթերով զարդարած մաղը և ալիւր են մաղում հարսանքի հացը պատրաստելու համար։ Ալիւր մաղողները լինում են փեսան և երիտասարդները, որոնք մաղը մի քանի անգամ թափահարելուց յետոյ, յանձնում են հերթով միմեանց և այդ առթիւ փող են նուիրում ալիւր-մաղէքի հանդէսը կառավարող ու. ղեկավարող «Ջիգալին»։

Խինա-գեջասիի յաջորդ օրը կատարուում է «Հարս-պաղնիքի» հանդէսը, որ քաղաքում արդէն վերացել է և մնացել է միայն գիւղերում։ «Փեսայ-պաղնիքը» վերացած է թէ քաղաքում և թէ գիւղերում. դորանից մնացել է, այն էլ միայն գիւղերում, գէթ մի ծէս-«Փեսայ-թրաշ», որ կատարուում է շատ մասնաւոր ու սահմանափակ հանդիսով։

Հարս-բաղնիքը սովորաբար կատարուում է աղջկայ կամ կարգուած քրոջ տանը և կամ մօրատատի, կամ, ինչպէս ասում են, «մամուն» տանը, որտեղ այդ առթիւ «աղջիկ-ժողովտանք» է լինում։ Բաղնիքի հանդէսը կատարելուց և ամբողջ օրն ուրախանալուց յետոյ, հարսը շրջապատուած իւր ընկերուհիներով և երաժշտութեամբ վերադառնում է տուն։ Հասնելով իւր բնակարանին և մտնելով բակը, ուրախ թափօրը կանգ է առնում տան դրան առաջ, որովհետև առանց աղջկայ մօր հանդիսաւոր կերպով հարսին ընդառաջ դուրս գալը չի կարելի տուն մտնել։ Մայրը սովորաբար դուրս է գալիս և աղջկայ գլխին շաղ է տալիս բրնձախառն մանր փող։ Դորանից յետոյ էլ դեռ տուն չեն մտնում, այլ հարսնացուին նստեցնում են բակի մէջտեղը մի աթոռի վերայ և ընկեր-աղջիկները ձեռք ձեռքի տուած պար են բռնում նորա չորս կողմը և կոլորպարի

պէս պարելով, յետ ու առաջ են գնում։Հարս-բաղնքի երեկոյից արդէն Հարսանիքը նստած կամ սկսուած է Համարւում, որ գիւղերում շարունակւում է երեք օր, իսկ քաղաքում միայն մէկ օր։

Քաղաքում պսակի Հանդէսը կատարւում է և՛ առաւօտեան և՛ երեկոյեան, իսկ գիւղերում միայն առաւօտեան։ Քաղաքում առՀասարակ տպագրուած Հրաւիրատոմսակներ են ուղարկւում, որոնց մէջ յայտնելով, թէ այս ինչ եկեղեցում և այս ինչ ժամին պէտք է կատարուի այս ինչ երիտասարդի ու օրիորդի պսակադրութեան Հանդէսը, խնդրում են, որ այս ինչ ոքն իւր ներկայութեամբ պատուէ այդ Հանդէսը, իսկ յետոյ բարեՀաճի շնորՀ բերել Հարսանեաց խնջոյքին, որ պէտք է լինի այս ինչ տանը։ Եթէ պսակը կատարւում է առաւօտեան, Հրաւիրեալները նշանակուած ժամին Հաւաքւում են եկեղեցին, ներկայ են գտնւում պսակի Հանդիսին, շնորՀաւորում են, Համբուրուելով այր-մարդիկ թագաւորի Հետ և կին-մարդիկ Հարսի Հետ, և ցրւում են իւրեանց տները, որովՀետև բուն Հարսանիքը, այսինքն պարաՀանդէսը ու Հարսանեաց խնջոյքը լինում են գիշերը։ Այդ դէպքում փեսայի տունը գնում են միայն ամենամօտ ազգականները, որոնք և մնում են այնտեղ, ճաշում և ժամանակ անցկացնում նեղ շրջանում մինչև երեկոյ։ Իսկ եթէ պսակը կատարւում է երեկոյեան, խսկոյն և եթ պսակից յետոյ ամենքը գնում են Հարսանքատունը և սկսւում է խնջոյքը և Հարսանեաց ուրախութիւնը, որ շարունակւում է մինչև առաւօտ։

Պսակից առաջ կատարւում է «Հարսնառի» ծէսը, որ Հարսանքի գլխաւոր արարողութիւններից մէկն է։ Փեսայի կողմի Հարսանքաւորները Հաւաքւում են փեսայի տունը, քաՀանան օրՀնում է փեսայի զգեստները և բոլորեքեան գնում են կառքերով Հարսի տունը «Հարսնառի»։ Փեսային նորա կառքում նստած ուղեկցում են փեսաղբերները-«շաֆերները»։ Հարսի տանը քաՀանան օրՀնում է պսակի զգեստները, և մինչև որ Հարսը Հագնում է, խնամիները Հիւրասիրւում են թէյով և թեթև ոգեպաՀիկով։ Երբ որ Հարսը Հագնում, պատրաս-

*տուում է, փեսաղբերներն ու հարսնեղբարները գնում են, բերում նորան դահլիճ և կանգնեցնում փեսայի կողքին սեղանի մօտ, որի վերայ կարգով շարուած են լինում բոլոր մինչև հարսանքի օրը և նոյն իսկ հարսանքի օրը ստացուած ընծաները։ Թէ փեսայի և թէ հարսի զգեստաւորուելու միջոցում այժմ քաղաքում ոչ մի առանձին ծէս չի կատարուում, ոչ մի երգ չի երգուում, ինչպէս որ եղել է հնումը։ Այժմ չի կատարուում և այն ծէսը, որ հին ժամանակներն անհրաժեշտ կերպով կատարուել է։ Այժմ երբ հարս առնողները գալիս, բազմում են և սկսում են յարգուել, այլ ևս մէկը չի շրջում առանձին սրուակով հիւրերի մէջ և հիւրերի թաշկինակի վերայ հոտաւէտ ջուր, կամ, ինչպէս սովորութիւն է եղել ասել, «ամբրէ» սրսկում։*

*Կէս պսակը կատարելուց և հարսի ու փեսայի ծոցը նուրբ կտորի մէջ փաթաթած ու կարմիր ժապաւէնով պնդած մի մի փոքրիկ անուշի կտոր դնելուց յետոյ, հարս ու փեսային նստեցնում են մի ծածկուած շքեղ կառքի մէջ, որ հենց այդ նպատակի համար մասնաւորապէս վարձուած, կամ, ինչպէս յաճախ պատահում է, այս կամ այն հարստի տանից բերուած է լինում և որի ձիերի ականջներն ու բաշերը և կառապանի թևերն գոյնզգոյն մետաքսէ թաշկինակներով է կապած-զարդարած լինում, և բազմաթիւ կառքերով ուղեկցում են եկեղեցի։ Հարս ու փեսայի կառքի առաջին նստարանի վերայ ուղիղ հարս ու փեսայի դէմ ու դէմ նստում են երկու տղայ, վառած կերոնները ձեռքներին բռնած, իսկ կառապանի կողքին առօք փառօք բազմում է «Իգլիտ-Աղասին», որի թևերը և կուրծքը նոյնպէս զարդարուած է լինում գոյնզգոյն մետաքսէ թաշկինակներով։ Գոյնզգոյն թաշկինակներով զարդարուած են լինում և բոլոր ուղեկցողների կառքերի ձիերի ականջներն ու բաշերը և կառապանների թևերը։*

*«Իգլիտ-Աղասին», ինչպէս ցոյց է տալիս և բառի նշանակութիւնը, հին ժամանակներն եղել է հարսանքին մասնակցող բոլոր կտրիճների պարագլուխը, հարսանքի կառավարիչը և ընտրուում է եղել փեսային մօտ ճարպիկ կտրիճների միջից։*

Բայց այժմ այդ դերը կատարում է մի վարձուած սպասաւոր, որի պարտականութիւնն է սպասաւորութիւն անել հարս ու փեսայի՛ն հարսնառի և պսակի ժամանակ և տիրապէս հարսանեաց տան սալիք ու կարգի վերայ նայել։ Նա է հարս ու փեսայի՛ն կառք նստեցնում, նա է կառքի դուռը փակում, բաց անում, նա է պսակի ժամանակ հարս ու փեսայի վերնազգեստները հանում, հագցնում, նա է, վերջապէս, պահում և պսակի ժամանակ մատուցանում քահանային այն արծաթեայ անօթը, որով գինի են խմացնում թագաւորին և թագուհուն։

Նորապսակներին հարսանեաց տան դրան առաջ ընդունում և համբուրելով օրհնում ու շնորհաւորում է փեսայի մայրը գլխին քօղ ձգած։ Այդ միջոցում էլ բրնձախառն փող են շաղ տալիս գլխներին, խունկ անում և մի զոյգ՝ վզերին կարմիր ժապաւէններ կապած՝ սպիտակափետուր աղաւնի են արձակում։ Տուն մտնելով, հարս ու փեսան կանգնում են դահլիճի մէջ տեղը, մատուցւում է մեծ մատուցարանով շամպանի բաժակները, Իգլտ-Աղասին լցնում է փրփրալից գինին, երաժշտութիւնը „տուշ“ է նուագում և բոլորեքեան շնորհաւորում են նորապսակներին։ Հին ժամանակները փեսայի մայրը դրան առաջ նորապսակներին ընդունելու միջոցում նոցա բերանը մի մի կտոր անոյշ է դնելիս եղել, իսկ շնորհաւորանքն եղել է „Ալկէինի“ ձայնակցութեամբ։

Բաժինքն ուղարկւում է փեսայի տունը կամ հարսանիքից մի օր առաջ, կամ մի օր յետոյ։ Առաջները սովորութիւն է եղել բաժինքն ուղարկել հէնց նոյն իսկ հարսանիքի օրը և հարսի շորեղէնը դնելով մատուցարանի վերայ, շրջեցնել և ցոյց տալ հանդիսականներին հարսանեաց խնջոյքի ժամանակ։ Սովորութիւն է եղել և հարսի օժիտի ցուցակը կազմել և հանդիսաւոր կերպով կարդալ բոլոր հրաւիրեալների առաջ հարսնառի ժամանակ այս ձևով.

„Կամաւ կամեցողին Բարեաց Տռն մերոյ Յսի Քսի
և օրհնելոյն յաւիտեանս ամէն

Որ եղև այս շնորհաւորութեան հարսանեաց գիրս ՚ի տիրապահ և յածախնամ քղքս ՚ի Նոր Նախիջևան, ընդ հովանեաւ Սբոյն Նի-

կողայոսի Հայրապետին ուքանչելագործին, և 'ի Հայրապետութե Տն Եփրեմայ Արժանընտիր Սրգնոյ Կթուղիկոսին, և Առաջնորդին Նախիջևանայ և Բեսարաբիոյ Աձարեալ Կայսրընտիր և կաւալերազարդ Հովուապետին Տն Ներսիսի Սրբազան Արք եպիսկոպոսին, և 'ի ժամանակս թգւորին ամ ռուսաց Ամենաբարեպաշտ և ինքնակալ մեծ կայսեր Նիկօլայ Պաւլովիչի, 'ի թւոյն Փրկչին մերոյ 'ի 1832 ամի և փետրվարի 8 ին, որ պըն Պապուկ Գրիգորեան Սուլթանշահովն էառ օրինաւոր սբ ամուսնութբ գնազելի դուստրն իւր Եղիսաբէթն, վճռկն Աղայ Գաբրիէլ Խոճայովի, Նախ պարգևէ Աձային օրհնութիւն և սբց մշտասնուէր աղօթքն որ ի միասին Աձ խորին ձերուի պարգևեսցէ, Նաև վերագոյնդ յիշեալ Աղայ Գաբրիէլ Խոճայովն շնորհէ Նազելի դստերօջն իւր զօժիտս այսինքն կանացի ոսկեղէն զարդըս, 'ի Ներքոյ յայտնին և են այսոքիկ։

Նախ մէկ լաւ անդամանդեայ ծաղիկ

1. լաւ բերգամ պաղի անդամանդեայ

1. ջուխտ օղ պռլեանտնի

1. ջուխտ ևս օղ անդամանդեայ

1. թէօքմէ խաֆէս մրգրտեայ 20 խաթէն, և 2 կղմն 30 Հատ ռուպլիէ ոսկով

1. ջուխտ ոսկեայ գօտի և մէջն էլմասեայ

1. ջուխտ ևս ոսկեայ գոտի

1. կըշտանոց 40 եալտըզ ոսկիք և մէջն չորսնոյ ոսկի

1. լաւ մատանի էլմասեայ

1. պոլաւքի էլմասեայ

և այս Ներքոյ երեք զարդս 'ի յըօտամպոլից բերելոյ ապըսպրեալ է որք են այսոքիկ.

1. լաւ կէրտսնըլըխ անդամանդեայ

1. ջուխտ գոտի ևս անդամանդեայ

1. ջուխտ ապռճան այն ևս անդամանդեայ

և այլ ամ պղնձեղէն շօրեղենն

ը Նոսին ըստ կարգին։“

Գիւղերում թագաւորին զգեստաւորելու ժամանակ նորա ընկեր-կտրիճները զանազան կատակներ են անում և փող ըս-

տանում քաւորից։ Նոքա ծուռ կամ ընդհակառակն են հագցնում նորա հալաւների զանազան մասերը և իւրաքանչիւր անգամ հարցնում են. „Կնքահայր, ի՞նչն է եանխլիշ փեսին վրան“։

Հարսին զգեստաւորելու ժամանակ կլոր ձևով կտրում են նորա „զիւլֆիները“ —զանգուրները, որոնք բազմաթիւ բարակ հիւսերով ծածանւում են նորա ուսերի ու մէջքի վերայ, „փերչամ“ են անում, նորա ոսկիներով զարդարած ֆէսը, „փօշի“ են կապում գլխին, ամրացնում են փօշիի վերայից «փէրչամբաղին» ու „փէրչամբաստին“, հագցնում են „խումաշը“, մէջքին կապում են մարգարտայեռ արծաթեայ ճարմանդով կամարը-„խուլանը“, մատերին դնում են մատանիները, ձեռքը ձգում են „ապռճանը“-ապարանջանը, վզին ձըգում են ոսկի շարոցը և „դերդանըլըխը“ և երեսին կարմիր քօղը։

Գիւղերում պսակի գնում են սովորաբար ոտքով. հարսի մի ձեռքից բռնած է լինում փեսան, միւս ձեռքից կնքամայրը։ Փեսաղբերներ և խաչեղբայլներ, կամ, ինչպէս քաղաքում կոչւում են, „շաֆերներ“ չ՚կան, պսակի ժամանակ էլ թագաւորի և թագուհու գլխին թագ բռնելու սովորութիւն չ՚կայ, ինչպէս քաղաքում։

Հարսի բաժինքը փեսայի տունն է ուղարկւում երկու անգամ-մի մասը կէս-պսակի միջոցում, միւսը նոյն իսկ հարսանեաց ժամանակ, երկրորդ օրը։ Կէս-պսակին առաջ փեսայի տանից գալիս է մի ձիաւոր և տանում է միայն մի բարձ, յետոյ գալիս են փեսայի ծնողները և տանում են կողինքը, իսկ հարսանեաց օրն „աղջիկ-խնամիները“ տանում են հարսի „սնդուկը“ թանկագին մանր իրեղէններով և „բոխչան“ հալաւներով։

Հարսի ծնողները պսակի արարողութեան ներկայ չեն գըտնւում, ինչպէս քաղաքում. Նոքա սովորաբար գնում են փեսայի հարսանեաց երկրորդ օրը, շրջապատուած ազգական կանանցով ու տղամարդկանցով, որովհետև հարսանքի առաջին օրը տիբապէս պատկանում է երիտասարդներին և աղջիկներին և այդ

պատճառով էլ կոչւում է „կտրիճների-հարսնիք“, իսկ երկրորդ օրը պատկանում է տղամարդկանց ու կանանց և այդ պատճառով էլ կոչւում է «էրիկմարդոց-հարսնիք»։

Նորապսակ զոյգի ոտքերի տակ եկեղեցուց դուրս գալու ժամանակ դնում են մի աման, որ հարսն ու փեսան աշխատում են միմեանց առաջը տալ ու կոտրել, որովհետև այնպիսի հասկացողութիւն կայ, թէ ով որ առաջինը կանխէ կոխել ու կոտրել ամանը, նա էլ տան մէջ գլխաւորապէս իշխողը, հրամայողը կ՚լինի։ Փեսայի տունը մտնելու ժամանակ նորապսակների գլխին միշտ աղաւնիներ չեն արձակում, ինչպէս քաղաքում, այլ երբեմն և սպիտակ հաւեր։ Հին ժամանակները սովորութիւն է եղել հարս ու փեսայի ոտքերի տակ և ոչխար մորթել, որ այժմ թէ քաղաքում և թէ գիւղերում խսպառ վերացել է. ինչպէս որ վերացել է արդէն և „խոյդան տանելու“, այսինքն պսակուողների մօտ ազգականների իւրեանց հետ չ՚հրաւիրուած մէկին հարսանիք տանելու սովորութիւնը։

Երիտասարդներն ու աղջիկներր, որոնք հարսանքի տանը բոլոր ժամանակ շրջապատած են լինում հարս ու փեսային, զբաղեցնում ու զուարճացնում են նոցա, ՚ի միջի այլոց, աշխատում են և նորապսակների վերայից մի բան գողանալ, որ „տառօսը“ իրենց էլ լինի։ Բացի այս բոլորից, գիւղերում մինչև ցայսօր դեռ պահպանուել է փեսային զգեստաւորելու, հարսնառ գնալու և պսակի երթալու միջոցում «պարեր» երգելու սովորութիւնը, որոնց բառերը և ոճերը ժողովրդի բերանում ներկայումս դժբաղդաբար այնքան աղաւաղուել են, որ համարեա թէ անկարելի է դարձել վերականգնել նոցա իմաստը, հասկանալ նոցա բովանդակութիւնը։

Հարսնառ երթալու ժամանակ, երբ հասնում են հարսի տան դրան շեմքին, օրինակի համար, երգում են։

1. Լուսն ալ լուսացաւ, բարի արև ձեգի,
Աքլորն ալ խօսեց իրեք բերան
Եւ իւր հաւ տալով քալից հպարտ.
Ես ան ճամբաներուն ճամբորդն եմ,
Ձատ կեշթամ ու կուգամ,

Շատ կեշԹամ ու կուզամ.
Ճամբուն՝ երկու հատ վարդ անուշ
Ունէր իր ծոցին.

2. Մեր Թագաւորին կապան կանանչ էր,
Մեր Թագաւորն իր Թուխումներուն մէջ
Մեր Թագաւորն էր արեւու պէս.
Մեր Թագաւորի ձիին զարդն էր
Ճերմակ եալ հինայած.
Մեր Թագաւորի ձիի ոտքի նալերն էր
Ոսկի, արծաԹ գամերով.
Մեր Թագաւորի ձեռքին խաչ
Շինեց ոսկերիչ ոսկեզօծ խաչ.

Հարսնառի այս „պարը“ միւս բոլոր „պարերի“ մէջ դեռ ամենալաւ պահպանուածն է, որովհետեւ եԹէ ոչ ամբողջովին, գոնէ, մասամբ կարելի է վերականգնել նորա ընդհանուր իմաստը։ Միւս պարերը գլխովին աղաւաղուած են և նոցանից միանգամայն բան չի կարելի հասկանալ։ Փեսային զգեստաւորելու ժամանակ, օրինակի համար, երգում են հետեւեալը, որ աւելի բառակոյտ կարելի է կոչել, քան Թէ երգ։

1. Այսօր ես նոր Թագաւոր ես նոր
Պարոն մունետիկ սէր հնազանդ մունետիկ
Ամենը հնազանդ մունետի՛լ
Այլ պատուէր զմեզ իւր դուռն.
Եւ շար կուտար և կապեց շարը
Երանական Հայոց հայրապետր
Սուրբ Լուսաւորիչ իւր անունով
Եւ երեք խաչին անունով օրհնեց Թագաւոր
Որ է մեր նոր Թագաւոր օրհնեց Թագաւոր
Որ գերկինս պահէր կուսացեալ կին
Զոր կային հաւասարիչ բոլոր
Զոր կային հաւասարիչ բոլոր։

2. Մայրս Մարիամ, Սուրբ Աստուածամայր
Ետ երեք խաչին անունով օրհնեց Թագաւոր
Որ մեր Թագաւոր նոր օրհնեց Թագաւոր
Որ էր հարսն կոյս գովեալ հաւասարեց բոլոր
Հրեշտակ երկնից անցնէր ու ասէր.

Թագաւոր նա հագեալ և գովեալ։
Մունետիկը գովելով անցնէր ասելով,
Թագաւոր նա հագեալ և գովեալ։ [1])

Քաղաքում նորապսակների նարօտի կնիքը քանդում են, կամ, ինչպէս ասում են, թագը հանում են իսկոյն եկեղեցում, իսկ գիւղերում երկու-երեք օրից յետոյ։ Պսակից յետոյ պատահած առաջին կիւրակին կոչւում է „Առջի կիրակի“, որ նոյնպէս տօնւում է։ Այդ օրը գալիս են հարսի ծնողները և մօտ խնամիները, բերում են ընծաներ և մեծ խնջոյք է տեղի ունենում։ Առաջին կիւրակէից յետոյ նորապսակներն իրաւունք են ստանում տանից դուրս գալու և այցելութիւն անելու իւրեանց այն ազգականներին, ծանօթներին ու բարեկամներին, որոնց տները պէտք է երթան-գան։ Սկսւում է «հարս տուն բերելու» կարգը։ Ազգականները հերթով «զիաֆէթ»-հրաւէրք են սարքում իւրեանց տներում և հրաւիրում են հարսին, կամ, ինչպէս ասում են, «հարս տուն կ’բերին»։

Նախիջևանի հարսանեաց ուրախութիւնը, ըստ ամենայնի, նմանում է մեծ բէհի կամ հանդիսաւոր բէհի ուրախութեան։ Նոյն երաժշտութիւնը, նոյն պարերը, խնամիների ընդունելու ու պատուելու նոյն կարգն ու «դառաւթը»։ Խնամիների հրաժեշտ տալու ժամանակ, երբ քէֆերը լաւ հասած է լինում, յաճախ նոցա երաժշտութեամբ են ճանապարհ ձրգում, և այդ միջոցում «Իգիտ-Աղասին» գինով լի բաժակները տանում է խնամիների առաջից։ Տեղ-տեղ կանգ են առնում, խմում են, պարում են և այդպէս շարունակում են, մինչև որ նոցա տուն են հասցնում։ Առհասարակ Նախիջևանում քէֆի և ուրախութեան չափաւորութիւն չ’կայ. նոքա իւրեանց խօսքերը, բէհերը, տօն-շնորհաւորները և զիաֆէթները կամ իսպառ առանց քէֆի, միայն թուղթ խաղալով են անցկացնում, կամ չափազանց զօր են տալիս օղիին ու փունջին և փողոցներն են ընկնում։ Շատ անգամ կարելի է պատահել փողոց-

---

[1]) Այս աղաւաղուած «պարերի» օրինակները մեզ հաղորդել է պ. Միքայէլ Զուբարեանը։

*ներում քէֆ անողների. նոքա կամ լուռ ու մունջ գնում են փողոցով երաժշտութիւնն առաջները ձգած, կամ հարայ-հրոց են բարձրացնում, ծափ տալիս ու պարում, կամ արշաւում են կառքերով կողքերին նստացրած զուռնաչիներին։*

*Նախիջեւանցւոց գործածած երաժշտութիւնն եւրոպական նուագախումբ և հայկական դաք ու զուռնան է, որ Նախիջեւանցիք կոչում են «դաուլ-զուռնա»։ Առաջինը գլխաւորապէս գործ են ածում հարուստները, իսկ երկրորդը գիւղացիք և քաղաքի աղքատները։ Սովորաբար հարուստներն էլ, երբ քէֆերը հասնում է, չեն բաւականանում միայն եւրոպական նուագախմբերով, այլ հրաւիրում են և զուռնայ, թէև տեղական նուագախումբն էլ, որ մասամբ բաղկացած է հայ երաժիշտներից, գտնւում է հայ կառավարչի ղեկավարութեան ներքոյ, ազատ կերպով նուագում է տեղական ժողովրդի սիրած բոլոր եղանակները։ Կան այնպիսի զուռնայ սիրողներ, որ ուշադրութիւն չ'դարձնելով այն ժողովրդական առածին, որ ասում է, թէ «Զուռնայի ձայնը հեռուէն աղէկ կուգայ», հրամայում են զուռնաչիներին իւրեանց մօտ նստել և իւրեանց ականջի մէջ փչել։*

*Նախիջևանի „Դաուլ-զուռնան“ բաղկացած է մի մեծ դաքից և մի կամ երկու փոքրիկ բարձրաձայն, ճչացող ու շատ զիլ ձայն ունեցող զուռնայից։ Այս վերջին ժամանակներս գլխաւորապէս գիւղերում փոքր զուռնայի վերայ աւելացել է և մի մեծ զուռնայ, որ կոչւում է „Բողոզան“։ Գիւղերում էլ, բացի դաուլ-զուռնայից, կայ և եւրոպական նուագախումբ, որ բաղկացած է միայն մի քանի նուագարանից՝ դափէ, ջութակ-«քեմենչէ», կլարնետ և կոնտրբաս կամ «բոռբոռ»։*

*Պարում են սովորաբար և՛ տեղական և՛ եւրոպական պարերը։ Քաղաքում տեղական պարերն արդէն վերջանալու վերայ են, նոյն իսկ գիւղերում հետզհետէ մտնում են և եւրոպական պարերը։ Տեղական պարերը պարում են միջին արագութեամբ, հայկական և առհասարակ արևելեան պարերի սովորական «պայերն» անելով։ Պարում են կամ առանձին-առանձին, կամ տղամարդ տղամարդու հետ, կամ տղամարդ կին-մար-*

դու հետ և կամ կինմարդ կինմարդու հետ, դիմաց-դէմ կանգնած, միմեանց հետևելով, միմեանց յարմարեցնելով իւրեանց շարժմունքը և միմեանց հետ իւրեանց կանգնած տեղերը փոփոխելով։ Պարերի սովորական տեսակներն են զանազան «Օյին-հաւաները»։ Երաժշտական եղանակների մէջ կան, բացի «օյին-հաւաների» եղանակներից, և „Ղզլար-հաւա“, „Բոհդան-հաւա“, «Պատին-տակը», «Ալկէլինը», մինչև իսկ «Զալ ձիի հաւան», և այլն և այլն։

## ՏՂԱԲԵՐՔ ԵՒ ԿՆՈՒՆՔ.

Երբոր Նախիջևանում մի կին յղանում է, սովորաբար ասում են, թէ այս կինը «ծանրած է» կամ «տղով է», իսկ երբոր կինը ծնում է, ասում են, թէ այս տանը, կամ այս ինչ մարդուն և կամ այս ինչ կնոջը «աչքի լուս է եղել»։

Նախիջևանցիք, որոնք ամեն մի ընտանեկան ուրախութիւն և տխրութիւն երևոյթի համար իբրև շնորհաւորանք, կամ մխիթարանք ու ցաւակցութիւն ստեղծել են զանազան իմաստուն ոճեր ու դարձուածներ-«բարի սհաթի ըլլայ», «բարի պըսակ առնուս», «պսակներովդ ծերանաք», «գալդ բարի», «դուն շատ ապրիս», «մեծ օրդ շնաւոր», և այլն, տղաբերքը շնորհաւորելու համար էլ սովորաբար գործ են ածում «աչքդ լուս» ոճը, որից անկասկած առաջ է եկել և այդ տղաբերքը նշանակող «աչքի լուս լինել» դարձուածը։ Տղաբերքի մտքով կիրարկուած այդ ոճը, որ այժմ գործ է ածւում անգիտակցաբար, շատ հետաքրքրական է, որովհետև դա ցոյց է տալիս, թէ ինչպէս են նայել հին Նախիջևանցիք զաւակաբերութեան վերայ. դա նոցա կարծիքով եղել է Աստուծոյ շնորհքը, ուրեմն և աչքի լոյսի պէս սիրելու ու փայփայելու բան է եղել նոցա համար զաւակը, իբրև նախախնամութեան տուած պարգևը, իբրև ժառանգ, սերունդը շարունակող, իբրև տան, ծնողներին աջակից և, վերջապէս, իբրև օգնական, աշխատող ոյժ։

Բացի «աչքի լուս լինել» Նախիջևանում ծնուելու, աշխարհ գալու մտքով կիրարկւում է և մի ընտիր ոճ-«ընծա-

*յուել», որ սովորաբար գործ են ածում, երբ կամենում են արտայայտել մէկի այս ինչ տեղում, այս ինչ ժամանակի ծնուած լինելու իմաստը։ Նախիջևանցին սովորաբար չի ասում, ես ծնուել եմ այս ինչ թուականին, կամ այս ինչ տեղում, այլ անպատճառ-«ես ընծայած եմ» այս ինչ տարին, կամ այս ինչ գիւղն ու քաղաքը. Ծննդկանը կոչւում է «տղոցկան», իսկ տղոցկանին ազատողը կամ, ինչպէս Նախիջևանցիք ասում են, «տղայ առնողը» կոչւում է «Դայեկ», որ, ինչպէս ամեն տեղ, այստեղ էլ լինում են պառաւ կանայք, ուստի և կոչւում են դայեկ-մաներ, այսինքն «Դայեկ-մամաներ»։ Դայեկները ներկայումս մնացել են միայն գիւղերում, իսկ քաղաքում նոքա արդէն վերացել կամ վերանալու վերայ են. նոցա փոխանակել են մասնագիտական կրթութիւն ստացած մանկաբարձ կանայք կամ աղջիկներ։*

*Բացի դայեկներից, տղոցկանին նայելու, նորա մօտ նստելու, մաքրութեան վերայ հսկելու համար Նախիջևանում կան և առանձին պառաւ կանայք։ Դոքա „Գոզ-անաներ“ են, որոնք չափաւոր վարձով միշտ հրաւիրւում են ծննդականի տունը և չար աչքից ազատում և առհասարակ խնամում են թէ տղոցկանին և թէ նորածնին, գոնէ առաջին ժամանակները։*

*Նախիջևանում ծննդկանը համարեա թէ երբէք լիակատար կերպով քառասունք չի պահում. քաղաքում սովորաբար պահում են 22 կամ ամենաշատը 30 օր, որից յետոյ կամ ինքըն ծննդականն է գնում եկեղեցի փարատուում, կամ ինչպէս ասում են, «քառասունքուում», կամ քահանան է տուն գալիս, փարատում։ Գիւղերում ծննդկանն աւելի շուտ է վեր կենում տեղից, աւելի շուտ է քառասունքուում և դուրս գալիս տանից, որովհետև, ինչպէս ամեն հայաբնակ տեղ, Նախիջևանի գիւղերում էլ բոլոր տնային տնտեսութիւնը ծանրանում է կնոջ վերայ և չի կարելի երկար ժամանակ նորան երեսի վերայ թողնել։*

*Երկունքի դժուարութեան դէպքերում Նախիջևանի պառաւները զանազան միջոցների են դիմում. նոքա ծննդական ցաւով բռնուածի սենեակում բոլոր փակուած, գոց տեղերը բաց*

են անում—դռները, պահարանները, գզրոցները, որպէս զի հեշտութեամբ բացուի, ազատուի և ծանրածը: Նոքա եկեղեցիների— Ս. Գէորգի ու Ս. Նիկողայոսի „Թոփուզներն“ են բերել տալիս և դնում տղոցկանի վերայ, „ջէնկի թուր“ են ջրում ողողում և ջուրը տալիս խմելու, և այլն և այլն:

Նորածին մանուկնիրին աղելն այստեղ էլ անխտիր կերպով պահպանուել է, իբրև առողջարար և հայկական հնաւանդ սովորութիւն. բայց երեխաներին օրօրոցում կապկպելու սովորութիւնը, որ ընդունուած է Հայաստանում ամեն տեղ, այստեղ քաղաքում արդէն իսպառ վերացել է, գիւղերումն էլ վերանալու վերայ է:

Երեխայի մկրտութիւնը կամ կնունքն այս կողմերում որոշեալ ժամանակ չունի. նա կատարուում է կամ 2—3 օրից յետոյ, կամ աւելի ուշ, նայելով հանգամանքին: Գիւղերում կնունքի կարգը միայն բացառիկ դէպքերում է տանը կատարուում, իսկ քաղաքում այդ դատապարտելի սովորութիւնն աւելի յաճախ է տեղի ունենում և շարժական աւազան գործածելու սովորութիւնը գնալով տարածուում ու ընդհանրանում է: Այդ, ինչպէս և մեր եկեղեցական ծէսերի ու կարգերի զեղծումներից շատերը, պէտք է վերագրել մեր քահանաների անհոգութեան և նոցա ձգտման հաճոյանալու իւրեանց հարուստ ծխականներին, որոնց, 'ինհարկէ, շատ էլ հաճելի չէ իւրեանց բամբակում պահած ու պահելիք „աչքի լուսին“ շատ անգամ ցուրտ ու անախորժ եղանակներին քաղաքի հեռաւոր տներից ու անկիւններից իւրեանց ծխական եկեղեցին տանելու մկրտելու համար: Կնքահօր իւր սանամօրը և սանին տարած սովորական ընծաներին միշտ դարձ է տրուում մի որ և է արծաթեղէն և սառը-շաքար, կամ, ինչպէս Նախիջևանցիք ասում են, „նէբէդ-շաքար“:

Նախիջևանի քահանաները մանուկներին սովորաբար տալիս կամ դնում են օրացոյցի մէջ գտնուած զանազան սրբերի և սրբուհիների անուններ, նայելով, թէ ի՞նչ օր է ծնուել մանուկը և այդ օրն օրացոյցով ո՞ր սրբի կամ սրբուհու տօն է կատարում եկեղեցին: Այդ է պատճառը, որ Նախիջևանում

ազգային անունները համարեա թէ չ՚կան, իսկ դորա փոխարէն կան բազմաթիւ Սարգիսներ, Յովհաննէսներ, Կարապետներ, Մկրտիչներ, Գրիգորներ, Գէորգներ, Մարկոսներ, Ղուկասներ, և Քրիստինէ, Նեկտարինէ, Ակիւլինէ, Հերմոնէ, Եփրոսինէ և ուրիշ այսպիսի հայի ականջին խորթ անուններ։

Կնունքը տուն է բերում լոյս ու մուևջ. սկսում են միայն երգել, երբ հասնում են ծննդկանի տանը։ Հին ժամանակների եկեղեցուց մինչև տուն շարական ասելը և զանգակներ հնչեցնելով կնունքը տուն բերելը ներկայումս քաղաքում խսպառ վերացել է և մնացել է միայն գիւղերում, այն էլ ոչ ամեն տեղ։ Մինչև ցայսօր դեռ կարելի է տեսնել կնունքի այդ զանգակները մի եկեղեցու միւս Նուազարանի-ծնծղաների հետ Նախիջևանի եկեղեցիներից մի քանիսի պահարաններում պահուած եկեղեցական ուրիշ անգործածելի իրեղէնների հետ միասին։

Մկրտութեան խնջոյքի սեղանի վերայ անպատճառ դրւում է աւանդական ձուածեղը, որ ուտելուց յետոյ, հրաւիրեալներից իւրաքանչիւրն իւր համար անհրաժեշտ պարտականութիւն է համարում փող ձգելու ձուածեղի սկուտեղի մօտ յատկապէս այդ նպատակի համար դրուած պնակի մէջ, որից հին ժամանակները հատուցուել է դայեկի կամ մանկաբարձի աշխատութեան վարձը։ Ներկայումս դորանից հաւաքուած ամբողջ գումարը դարձեալ պատկանում է դայեկին, բայց դա համարւում է ոչ նորա աշխատութեան վարձը, այլ իբրև վերադիր ընծայ, որովհետև նա իւր աշխատութեան վարձը դարձեալ ստանում է կնունքի տիրոջից։

## ՄԱՀ ԵՒ ՅՈՒՂԱՐԿԱՒՈՐՈՒԹԻՒՆ.

Երբոր Նախիջևանում մէկը մեռնում է, սովորաբար ասում են, թէ այս ինչ մարդը «Փուն շատ ապրիս է եղել», մի ոճ, որ առաջ է եկել այն հանգամանքից, որ հանգուցեալի տիրոջը մխիթարելու համար, առհասարակ ասում են.

«Փուն շատ ապրիս», ուրեմն և կազմուել է ճիշտ այնպէս, ինչպէս «Աչքի լուս է եղել» ոճը։

Քաղաքում շատ հեշտութեամբ կարելի է իմանալ, թէ ով է մեռնողը-այր-մարդ, թէ կին-մարդ, որովհետև, նախ, եթէ ոչ բոլոր մեռնողների, գոնէ, շատ շատերի համար սովորաբար քաշում է մայր-եկեղեցու զոյգ-զանգակը, երկրորդը, այր-մարդու համար առաջ քաշում է մեծ զանգակը, յետոյ փոքրը, կին-մարդու համար-ընդհակառակը։

Մեռեալն իսկոյն եկեղեցի չի տարում, ինչպէս շատ տեղեր, այլ բոլոր ժամանակ, որ տևում է 2-3 օր, պահում է տանը և միայն թաղման կարգը կատարելու համար տանում է եկեղեցի, որտեղից ուղղակի յուղարկաւորում է հանգստարանը։ Իսկ եթէ այնպէս է պատահում, որ տանը պահելու յարմարութիւն չի լինում, սովորաբար մեռեալը տանում է հանգստարանի եկեղեցին և այնտեղ մնում է որոշեալ ժամանակը, որովհետև միւս եկեղեցիներում հանգուցեալ դնելպահելը գեղեցիկ կարգադրութեամբ խստիւ արգելուած է։

Ամբիծը կամ, ինչպէս Նախիջևանցիք ասում են, „համբիծը“ անխախտ կերպով շարունակւում է մեռնելու օրից մինչև կիւրակնամուտը-«կիրամուտքը» ամեն երեկոյ առաջ մեռեալի վերայ, քանի որ նա թաղուած չի, յետոյ մեռեալի տանը։ Մեռեալի վերայ հին հայկական սովորութեամբ սաստիկ լացուկոծ անելն այստեղ էլ պահպանուել է, միայն վերջացել է երգախառն ողբասացութիւնը, որ այնքան տարածուած է Հայաստանում և ուրիշ հայաբնակ տեղերում։ Սուգ անելու համար, քանի որ մեռեալը տանն է, դագաղի մօտ դրում են աթոռներ ու նստարաններ, որ շարքով և հանգուցեալին ազգակցական մերձաւորութեան կարգով բռնում են կանայք։ Հանգուցեալի ամեն մի մօտ ծանօթի ու բարեկամի գալու միջոցին սգուորները նորոգում են իւրեանց սուգը, բարձրացնելով ձայները, ձեռքերը խփելով դագաղի սեղանին և հրաւիրելով նորեկին ականատես լինելու իւրեանց և իւրեանց բարեկամի անբախտութեան։ Իսկ երկուորների թիւը խիստ շատ է լինում, որովհետև հանգուցեալի համարեա թէ բոլոր ազգականները,

ծանօթներն ու բարեկամները, հայկական հնաւանդ գեղեցիկ սովորութեամբ, իւրեանց սեպուհ պարտականութիւնն են համարում լինել մեռելի տանը, ներկայ գտնուել ամբիծներին, սիրտ տալ, մխիթարել հանգուցեալի մերձաւորներին, որ, չըգիտենք ինչու համար, կոչուում է «կարամուտ տալ»:

Սուգը շարունակուում է և եկեղեցում ու գերեզմանատանը թաղման կարգը կատարելու ժամանակ, որովհետև այս կողմերում կանայք էլ յուղարկաւորում են հանգուցեալին և ներկայ գտնուում թաղման տխուր հանդիսին: Եկեղեցում էլ հանգուցեալի կարգը կատարելու ժամանակ ամենամօտ ազգականների համար դագաղի մօտ մի առանձին նստարան է դրուում և սըգուոր կանայք ոտից ցգլուխ սևաւորուած բազմում են սյդ նստարանի վերայ, անդադար լաց լինելով, հառաչելով և յաճախակի խանգարելով ժամասացութիւնը:

Յուղարկաւորութիւնը կատարուում է հայկական յուղարկաւորութիւններին յատուկ շքեղութեամբ ու փառաւորութեամբ, նայելով հանգուցեալի հասարակական դրութեան և նիւթական կարողութեան: Հարուստները համարեա թէ միշտ վարձում են շքեղ դիակառքեր թաղման պրոցեսսիոններին յատուկ բոլոր սպարաշաներով՝ ձիաւոր և հետևակ յուղարկաւորողներով, լուցեալ ղամբարներով, պսակատարներով և նուագածուներով:

Յուղարկաւորութեան ժամանակ ամեն ոք ճանապարհի վերայ գտնուած տներում պէտք է ոտքի կանգնի, մինչև իսկ մանուկների օրօրոցները պէտք է բարձր տեղ դրուեն, որովհետև կարող են «մեռելկոխ» լինել: Մեռելկոխ կարող են լինել և նոքա, որոնք շատ լաց են լինում մեռեալի վերայ, ուստի և նոցա հանգստացնելու, մեռեալից հովացնելու և այդպիսով մեռելկոխ լինելուց էլ ազատելու համար, պէտք է գերեզմանի հողից մի բուռն ածել նոցա կռնակն օձիքի տակից:

Հանգուցեալների թաղման կարգը կատարելու ժամանակ „գանձ“ ասելու սովորութիւնն այստեղ էլ կայ. սովորաբար ասում են „Յոյս իի“ գանձը, այն էլ, ՚ի հարկէ, գլխաւորապէս հարուստների վերայ:

„Սյգը“ միշտ կատարւում է Թաղման կարգի հետ միասին, իսկ „եօթն„-ն երբեմն միասին, երբեմն էլ, և աւելի յաճախ, առանձին։ Միասին կատարելու դէպքում կարգը կատարող քահանան միշտ այդ մասին յայտնում է հանգուցեալի տիրոջ, ասելով. „Կիրամուտքն ալ եղաւ“։

Թաղումն առանց հոգեհացի կամ մեռելահացի չի լինում. Նախապէս դերեզմանի վերայ քաղաքում բաժանւում է մի մի կտոր «տորթ» և մի մի գաւաթ օղի, յետոյ ամենքը հրաւիրւում են մեռելատունը հոգեհացի. որից յետոյ ամեն մէկին տրւում է մի մի գաթայ, որ իւրեանց հետ տուն են տանում։ Թաղման գաթան, որ մի միջին մեծութեամբ հաստ կլորակ ուռուցիկ հաց է, պատրաստւում է մաստակախառն խմորից և խուլխից։ Եօթն և քառասունքը կատարւում են սովորաբար մասնաւոր կերպով, իսկ տարին դարձեալ ընդհանուր կերպով, ինչպէս Թաղման հոգեհացը։ Բացի սովորական գերեզմանօրհնէքներից, ունևոր մարդիկ սովորութիւն ունին տարին մի անգամ պատարագ անել տալու իւրեանց մեռեալների հոգուն, և այդ առթիւ հաց են տալիս աղքատներին։ Այդ տեսակ պատարագները կոչւում են „ժամ-պատարագ“։

Նախիջևանցիք էլ միւս հայերի պէս սիրում են շքեղ շիրմներ կանգնեցնել իւրեանց ննջեցեալների վերայ և զանազան սրտառուչ արձակ և ոտանաւոր տապանագրեր փորագրել տալ նոցա վերայ, անպատճառ երկու լեզուով-հայերէն և ռուսերէն։ Պատահում են և աշխարհաբառ տապանագրեր։ Զուրկ չէ հետաքրքրութիւնից հետևեալ աշխարհաբառ տապանագիրը, որ մենք արտադրում ենք Ս. Նիկողայոսի հանգստարանի գերեզմաններից մէկի վերայից։

Երբեմն մարդ էի ես ձեզի պէս,
Այժըմըս եղայ ես հողի պէս.
Ես չի պիտ ըլլամ ձեզի պէս,
Դուք պիտի ըլլաք ինձի պէս։

## ԾԷՍԵՐ ՈՒ ՍՈՎՈՐՈՒԹԻՒՆՆԵՐ

### ԱՄԱՆՈՐ



Նախիջևանցիք Ամանորին, բացի «Նոր-տարի» ասելուց, ասում են և «կաղանդ» և միմեանց շնորհաւորելուս ասում են. «Շնորհաւոր Նոր տարի, ամեն տարի բարով հասնինք», կամ «Շնորհաւոր կաղանդ, ամեն տարի բարով հասնինք»: Ամանորի սովորական ընծայաբերութիւններն էլ նոյն «կաղանդ»բառից կոչւում են «կաղանչէք»:

Դեկտեմբերի 31-ին տանտիկինները – «եանկաները» ամբողջ օրը զբաղուած են լինում կաղանդի սեղանի պատրաստութեամբ: Յատկապէս, իբրև Նոր-տարու նշան, կատարում են «Կաղանդը», «Տարին», և զանազան պասուց խմորեղէն՝ «ղաթա», «Սամսա», քսակներ, մազեր, հիւսեր, իսկ ղլւղերում, բացի դոցանից, և «խալաջ», կովի կուրծքեր, ցորենի հորեր և անասունների ամբակներ:

«Կաղանդը» պատրաստում են մեղրից և կաշին հանած և

բոված ընկուզից։ Մեղրը հում-հում այնքան հարում են — «զարնում», որ բոլորովին սպիտակում է, յետոյ ձգում են մէջը բոված և մաքրած ընկուզը և այդ բոլորը միասին խառնելով, լցնում են մի գեղեցիկ անօթի մէջ ու դնում սեղանի վերայ։

«Տարին», որ տարուայ խակական նշանն է, մի մեծ բոլորշի և տափարակ հաց է, որ այնպէս է շինուած, որ վերան պարզ կերպով երևում են մի քանի մասեր կամ ճիւղաւորութիւններ։ Այդ մասերի կամ ճիւղերի թիւը լինում է կամ 12 հատ տարուայ 12 ամիսների թուով, կամ տան մէջ եղած անդամների թւին համեմատ։ Հին ժամանակները սովորութիւն է եղել ընկուզով, չամիչով և զանազան նկարներով զարդարելու այդ հացի երեսը և, ինչպէս Տաճկա-Հայաստանի շատ տեղերում մինչև ցայսօր էլ անում են, վերան թուականը գրելու, բայց այդ սովորութիւնը ներկայումս վերացել է և մնացել է միայն, այն էլ մի քանի ընտանիքների մէջ, չամչով և ընկուզով զարդարելու սովորութիւնը։ Տարի-ի մասերից մէկի մէջ դրւում է մի արծաթ դրամ իբրև բաղդփորձում։ «Տարին» կտրում ու բաժանում են ընտանեաց անդամներին կամ նոյն իսկ կաղանդի գիշերը, կամ երրորդ օրը, կամ ծննդեան ճրագալոյցին և կամ, վերջապէս, յունուարի վեցին, տնօրհնէքից յետոյ։ Շատ հին ժամանակները, ինչպէս երևում է, «Տարին» կտրելու ու բաժանելու ժամանակն եղել է միայն կաղանդի գիշերն իբր տարուայ նշան, յետոյ արդէն սովորութիւն է դարձել յետաձգել մինչև տնօրհնէքը, որովհետև նախջևանցիք սովորութիւն ունին տնօրհնէքի ժամանակ սեղանի վերայ դնել ծննդեանը ջուր և հաց, իսկ զատկին՝ կարմիր հաւկիթ և զատկահաց։ Այժմ քաղաքում, որովհետև տնօրհնէքը կատարւում է ոչ միայն Յունուարի վեցին, այլ և հետևեալ օրերը ևս, այլ ևս չեն սպասում, որ առաջ «Տարին» օրհնուի, յետոյ արդէն կտրուի ու բաժանուի, այլ յաճախ ծննդեան ճրագալոյցին կատարում են այդ գործողութիւնը, իսկ օրհնելու համար սեղանի վերայ դնում են եկեղեցուց բերած օրհնած ջուր և «Տարի»-ի տեղ մի որ և է հաց։ Տարին կտրելու ժամանակ ում որ դուրս է գալիս արծաթ դրամը, նա տարուայ տէրն է համարւում և ընտանեաց մէջ

ամենաբաղդաւորը։ Դրամը «բաղդաւորը» կամ ձգում է իւր քըսակը, որ ամբողջ տարին լիքը լինի փողով և կամ տանում է եկեղեցի, մոմ գնում և աղօթելով վառում սրբերի առաջ։

«Գաթան» ալիւրից ու ջրից շաղախուած ու փոքրիկ, կլորիկ, ուռուցիկ ձևով շինուած խմորեղէն է, որի մէջ դրւում է ընկուզից ու մեղրից պատրաստուած խորիսխ, իսկ «Սամսան» դարձեալ միայն ալիւրից ու ջրից շաղախուած եռանկիւնաձև կարկանդակ է, որի մէջ դրւում է սոխ ու չամիչ։ «Խալաջը», որ պատրաստում են միայն գիւղացիները, կիսալուսնաձեւ, կամ կլորակ, մէջը ծակ հաց է, զարդարուած զանազան հիւսուածքով ու օրինակներով, իսկ մազի հիւսերը, քսակները, կուրծքերը, ցորենի հորերը և ամբարները, որոնցից առաջինը և երկրորդը գլխաւորապէս պատրաստում են քաղաքացիները, իսկ միւսները միայն գիւղացիները, նոյն սուարկաների ձևով, շինուած խմորեղէններ են, որոնք արտայայտում են ժողովրդի պէս-պէս բաղձանքները՝ որ տան մէջ գտնուած աղջիկների մազերն երկար լինեն, տղամարդկանց քսակները լիքը փողով, կովերն առատ կաթ տան, անասուններն առողջ լինին և ցորենի հորերը լիքը ցորենով։

Երեկոյեան դէմ լսւում է «կալանդոս» երգող երեխաների ձայնը, որոնք խումբ-խումբ տնէցտուն են ման գալիս, երգելով շնորհաւորում են կաղանդը և գաթա, սամսայ, խալաջ ու փող են հաւաքում։ Քաղաքում «կալանդոսն» երգում են դեկտեմբերի 31-ի առաւօտեանից մինչև երեկոյ և, որ հետաքրքրականն է, հայ երեխաներն երգում են և՛ հայերէնը և՛ ռուսերէնը, իսկ ռուս երեխաները և՛ ռուսերէնը և՛ հայերէնը։

Գիւղերում «կալանդոս» երգում են այսպէս.

Կալանդոս, դոս, դոս,
Ամէն տարի բարով հասնինք,
Շնորհաւոր Նոր-տարի,
Նոր եանկայիս [1]) տուն բերի,
Ձայէ շապիկ հագուցի,

---

[1]) «Եանկա» ասում են եղբօր և հօրեղբօր կնոջը և տանտիկիններին։

Կիրմէ գոտի կապեցի.
Խալաջ տուէք։
Քաղաքում երգում են այսպէս.
Կալանդոս, դոս, դոս,
Կալանդոսը՝ էկել է,
Դուռին տակը կայնել է,
Ճալէ շապիկ հագել է,
Կարմիր գոտի կապել է, [1])
Մէկ աւուճին [2]) խայել է։

Դեկտեմբերի 31-ին գիշերը ճիշդ այն րոպէին, երբ հին տարին անհետանում ու կորչում է յաւիտենականութեան մէջ և ծնում է Նոր-տարին, գետերը և աղբիւրներն ոսկի են հոսում, ուստի և գիւղերում ամեն մէկն աշխատում է այդ ժամանակ ջրերի վերայ գտնուել, ջուր վերառնել, որ հարստութիւն տուն տանէ։ Նոյն ժամանակ երևում են և աներևոյթ «խոնջոլոզը», և «ժիվոտը» (շըւոտ) և «Առամ—Թառայիմը» և սկսում են շրջել մարդկանց մէջ ու զանազան փորձանքներ բերել նոցա գլխին, ուստի և ծնողները զգուշացնում են երեխաներին և չեն թողնում նոցա Նոր-տարի գիշերը դուրս գալ։

Նոյն դեկտեմբերի 31 երեկոյեան մինչև որ տան բոլոր անդամները չըհաւաքուին, ճրագ չի վառւում տների մէջ։ Երբոր տնեցիք հաւաքւում են, բոլորեքեան մտնում են մի սենեակ և մոմը վառելով, դնում են մէջտեղը, սեղանի վերայ։ Ճրագի լոյսից, 'ի հարկէ, մարդկանց ստուերն ընկնում է պատերի վերայ և երևում մէկինը լուսաւոր, միւսինն աղօտ գծագրութեամբ։ Դորանից զանազան գուշակութիւններ են անում, թէ ո՞վ Նոր-տարուայ ընթացքում աւելի բաղդաւոր կ'ըլլինի և ո՞վ անբաղդ։ Որի որ ստուերը պարզ կերպով արտացոլուի պատի վերայ, նա էլ տարին յաջողութեամբ կանցկացնէ, բաղդաւոր կ'լինի, որինը, ընդհակառակը,

[1]) Աւուճ=Բուռ։

[2]) Խայել ըլլալ—համաձայն լինել։

խաւար ու աղօտ, նա փորձանքների կ՚հանդիպէ, որոնցից զուցէ և անվտանգ չ՚կարողանայ դուրս գալ։

Հայկական Ամանորի և Նաւասարդի մասին այս դաղթականների մէջ յիշողութիւն ամենևին չի պահպանուել։

## ԾՆՈՒՆԴ ԵՒ ՄԿՐՏՈՒԹԻՒՆ

Ծննդեան ճրագալոյցի ժամերգութիւնը շատ կանուխ է բսկըսուում, համեմատաբար շատ կանուխ էլ վերջանում է։ Եկեղեցում ժամաւորներից շատերը կանգնում են վառած մոմերով ոչ թէ միայն Դանիէլի գրքի ժամանակ, այլ և առհասարակ ժամերգութեան սկզբից մինչև պատարագը։ Դանիէլի գիրքը, ինչպէս ամէն տեղ, այստեղ էլ կարդում են մանուկները. բոլոր գիրքը բաժանուում է երկու մասի՝ բուն պատմութեան, որ առանձին կանգնած կարդում է երեխաներից մէկը, և Սեդրաքի, Միսաքի և Աբէդնակովի խօսքերի, որ արտասանում են երեք մանուկ՝ միասին՝ նոյնպէս առանձին կանգնած։ «Օրհնեցէք»-ը երգում են բոլորեքեան միասին։

Ամեն մէկի կարդալու նիւթը տպուած է առանձին-առանձին երկար լժերթերի վերայ, որ հեշտ լինի բռնելու ու կարդալու, գրքակալ չ՚դրուի, բերանացի էլ սովորելու հարկաւորութիւն չլինի։

Ժամաւորները վերադառնում են տուն, բերելով իւրեանց հետ նոյնքան մոմ, որքան տան մէջ անդամ կայ, և վառում են ընթրքի ժամանակ ամեն մի սպասի առաջ և այդպէս վառած մոմերով էլ ընթրիք են անում։

Երեկոյեան տնօրհնէք շրջելու սովորութիւն չ՚կայ։ Քահանաները միայն այցելում ու օրհնում են իւրեանց կնքահայրերի և այն տները, որոնց մէջ հանգուցեալ է եղել, իսկ միւս տների օրհնութիւնը թողնում են միւս օրուան։

«Աւետիս» երգելու սովորութիւնը, որ այնքան ընդհանրացած է հայերի մէջ, քաղաքում արդէն վերացել է և մնացել է միայն գիւղերում։ Երգում են առհասարակ հետևեալ «Մեծ» կոչուած աւետիսը.

Աստղ մի ելաւ յարեւելից, աւետիս.
Իմաստնականք զարհուրեցան, աւետիս.
Բաղդաբաշխներ ժողովեցան, աւետիս.
Շատ քննեցին եւ չիմացան, աւետիս.
Իւրեանց մէջ կոյս մը գտան, աւետիս.
Թեւէն մտան, առին, ելան, աւետիս.
Երբ այն աստղն նայեցաւ, աւետիս.
Այն կուրացած աչքը բացաւ, աւետիս.
Եղբայր, այս մեծ աստղ է նշան, աւետիս.
Թագաւոր ծնաւ ի Հրէաստան, աւետիս.
Մելքոն, Գասպար եւ Բաղդասար, աւետիս.
Երեք թագաւորք ազնուականք, աւետիս.
Երթանք, տեսնենք հայոց արքայն, աւետիս.
Խորհուրդ արին իւրեանց մէջը, աւետիս.
Շատ հնծելոք ճամբայ մտան, աւետիս.
Աստղն ցուցնէր նոցա ճամբան, աւետիս.
Ցերեկը հրեշտակ երեւեցաւ, աւետիս,
Գիշերը աստղ լուսոյ մտան, աւետիս.
Թէ Յիսուս է թէ Քրիստոս, աւետիս.
Օրհնած տունիս տանուտէրին, աւետիս.
Թէ Պօղոս է, թէ Պետրոս է, աւետիս.
Օրհնած տունիս տանտիկնոջը, աւետիս.
Թէ Սառա է, թէ Մարթա է, աւետիս
Օրհնած տունիս կլիճներուն, աւետիս.
Աստուած այս տունը շէն պահէ, աւետիս.
Մինչեւ գալուստն Փրկչին, աւետիս.

Բայց այս «աւետիսից», որ երգում են բոլոր գիւղերում, Զալթըլում, Թոխտում եւ փոքր-Սալայում երգում են եւ ուրիշ ժողովրդական աւետիսներ։ Թոխտում եւ փոքր-Սալայում երգում են հետեւեալը.

Երանելի կոյս Մարիամ, աւետիս.
Որ կոյս էիր, կոյս ծնեցար. աւետիս.
Ծնար երեր Աստուածորդին, աւետիս.
Աստուածորդին այն Սուրբ Հոգին, աւետիս.

*Մարիամ առաւ իւր մէկ որդին, աւետիս.*
*Տարաւ Նորա աշկերտութիւն, աւետիս.*
*Երբ քննեցին, երբ հարցուցին, աւետիս.*
*Նա կ'կարդար Սաղմրսարան, աւետիս.*
*Սաղմոսարան երբ քննեցին, աւետիս*
*Նա կ'կարդար Ճարականներ, աւետիս.*
*Ճարականներ երբ հարցուցին, աւետիս.*
*Նա կ'կարդար Աստուածաբան, աւետիս.*
*Աբեղաներ իրար եկան, աւետիս.*
*Կոյս Մարիամին գիր խրկեցին, աւետիս.*
*Մարիամ արի, առ քո որդիդ, աւետիս.*
*Քո մէկ որդուդ, այն Սուրբ Հոգուն, աւետիս,*
*Նա մեզ չանէր աշկերտութիւն, աւետիս.*
*Մեզի կանէ վարպետութիւն, աւետիս.*
*Մարիամ կորոյս իւր մէկ որդին, աւետիս.*
*Սուլար կողբար, կաղաղակէր, աւետիս.*
*Ճամբորդներուն հարցունք կանէր, աւետիս.*
*Մարիամ, մեզի տուր բանիդ նշան, աւետիս.*
*Որպէս տեսանք, այնպէս պատմենք, աւետիս.*
*Ես իմ որդիս եմ ցանկացեալ, աւետիս.*
*Ճալէ շապիկ 'ի լոյս անձին, աւետիս.*
*'Ի գլխատան արև ագոյն, աւետիս.*
*Պայծառ կենար արծաթի պէս, աւետիս.*
*Տէր մը տեսաւ յԵրուսաղէմ, աւետիս.*
*Խաչ, գաւազան ունէր ձեռին, աւետիս*
*Աւետարան ունէր 'ի գիրկն, աւետիս.*

*Չալթըլում էլ երգում են հետևեալը.*

*Յիսուս, Յիսուս աշակերտաց, աւետիս.*
*Վաթսուն և վեց հայրապետաց, աւետիս.*
*Հետ երթային, հետ քարոզին, աւետիս.*
*Անկալ ու կոյր Լուսաւորչին, աւետիս.*
*Գնացին, ելան ընտրուած ծովուն, աւետիս.*
*Որտեղ Նաւեր կանգնած կային, աւետիս.*
*Եղբայրք առէք, ելէք Նաւորդիք, աւետիս.*

Ես ձեզ անիմ բազում աղօթ.ք, աւետիս.
Մեզի չէ պէտ.ք բազում աղօթ.ք, աւետիս.
Մեզի պէտք է դրամ բազում, աւետիս,
Խաչակն.քեց, դրամ կազմեց, աւետիս.
Երեք նաւտէր ելան 'ի վեր, աւետիս.
Ծովն էլ տականց պղտորեցաւ, աւետիս.
Եղբայր, այս ինչ մարդ մեղաւոր, աւետիս.
Մարդ մեղաւոր, բայց ալևոր, աւետիս.
Ելան 'ի վեր, ընկան իր ոտ.ք, աւետիս.
Դուն մեր Յիսուս, դուն մեր Քրիստոս, աւետիս.
Եղբայր, պահէ.ք, .քուն մի եղէ.ք, աւետիս.
Ես ձեզ անիմ բազում աղօթ.ք, աւետիս.
Բազում.ք ելան .քաղցրագիշեր, աւետիս.
Ջան ալ խօսեց երե.ք բերան, աւետիս.
Եղբայր.ք ելէ.ք անուշ .քներէդ, աւետիս.
Օրհնած ծովս, օրհնած նաւս, աւետիս.
Օրհնած այս տունս, կտրիճներ, աւետիս.
Աստուած այս տուն շէն պահէ, աւետիս.
Շէն պահողն ալ առողջ պահէ, աւետիս.
Ամեն տարի բարով հասնին.ք, աւետիս.
Ձեզ սիրելով հաւասար, աւետիս. [1])

Ճրագալոյցի ընթրի.քի համար, բացի սովորական նաւակատեաց կերակրներից՝ ձկնախաշուից, տապակած ու խաշած ձկնեղէնից, պատրաստւում է անպատճառ և «կուբաթի», որ ուտում են ձկնախաշուի հետ միասին։ «Կուբաթին» նման է Ռուսաց «պիրոգին», բայց աւելի նուրբ է, աւելի ճաշակով է պատրաստւում, աւելի համադամ է, .քան թէ սովորական պիրոգները։ Նախիջևանցի խանկաներն ու «ջիջանիրն» [2]) մեծ վարպետութեամբ նաբանով — օխլովով — «թել բանալ» գիտեն և մեծ ճարտարութեամբ պատրաստում են «թելբաց-կուբաթի», «թելբաց-սամսա» և .քառասուն թել փախլաւա»։

[1]) Այս աւետիսները վարիանտ են· Տես Կարապետ Կոստանեանցի «Նոր ժողովածու, Ա պրակ» 1, 4 և 6 աւետիսները։

[2]) Ջիջա ասում են մեծ .քրոջը ու բան անող կանանց։

Թելբաց-կուբաթիի, ինչպէս և թելբաց-սամսայի թելերի թիւն անորոշ է — 14, 20 և 30, մի խօսքով որքան շատ, այնքան լաւ։ Թելերի կէսն իւղով օծելուց և միմեանց վերայ դարսելուց յետոյ, լցնում են վերան թխեթև տապակած ձկան միս ու սոխ և այդ բոլորը ծածկելով իւղով օծած և միմեանց վերան դարսած թելերի միւս կիսով ու վերան հաւկիթ քսելով, դնում են փուռը եփելու։

Մկրտութեան ժամերգութիւնը նոյնպէս սկսում է շատ շուտ և աւարտւում է առաւօտեան շատ կանուխ, այնպէս որ առաւօտեան վեց-եօթ ժամին արդէն ամեն բան վերջացած է լինում և քահանաները սկսում են տնօրհնէք մանգալ։ Տնօրհնէքը կատարւում է հապճեպ և այդ հոգևոր նուիրական արարողութեան ոչ վայել վսեմութեամբ։ Քահանաները պատճառ բռնելով այն հանգամանքը, որ պէտք է աշխատեն հէնց առաջին օրն օրհնել իւրեանց ծխականների տների մեծ մասը, որովհետև իբրև թէ ժողովուրդը նեղանում է, երբ քահանան ուշ է դնում նոցա տունը, տուն մտնելը ու դուրս գալը մէկ են անում, շարականն երգում են հևալով, աւետարան չեն շըրջեցնում իւրեանց հետ, այլ ասում են բերանացի, շատ անգամ սխալներով և կակազելով, և այլն և այլն։

Ջրօրհնութեան համար եկեղեցիներից հանդիսով դուրս գալու, գետը գնալու և կամ եկեղեցիների բակում յորդանան շինելու սովորութիւնը, որ այնքան շքեղութեամբ սիրում են կատարել հայերն ամեն տեղ, այս գաղթականութեան մէջ չը կայ և, ինչպէս երևում է, վերացած է եղել դեռ Ղրիմում, գուցէ, մոլեռանդ մահմեդականների երկիւղից։ Հանդէսը կատարւում է եկեղեցիներում առանձին աւազանների մէջ և ժողովուրդը մեծ ջերմեռանդութեամբ խռնուելով, ինչպէս սովորութիւն է ամեն տեղ, օրհնած ջուրը տուն է տանում ամաններով, որովհետև տնօրհնէքի ժամանակ Նախիջևանցու սեղանի վերայ հացի հետ միասին պէտք է անպատճառ և օրհնած ջուր լինի։

Խաչը ջրից հանելու կամ խաչի կնքահայրութեան հետ միասին այս գաղթականների մէջ կայ և մեռոնի կնքահայրու-

թիւն, որ կատարւում է նոյնպէս վայելուչ հանդէսով։ Կնքահայր լինել ցանկացողը հագնում է շապիկ, իսկ քահանան բռնելով նորա գլխին ս. մեռոնի աղաւնին, հանդիսաւոր թափօրով գալիս, բարձրանում է նորա հետ բեմը։ Խաչի կնքահայրութիւնը, ինչպէս երևում է, քաղաքում շուտով կ'վերանայ, ինչպէս արդէն վերացել է ռռնաբացէքին աշխարհականներից մէկի ձեռքով դուռը-վարագոյրը բանալու սովորութիւնը։ Գիւղերում ռռնաբացէքին, փոխանակ սեղանի վարագոյրը բանալու, պատկերների երեսն են փակում ու բաց անում։

Օրհնած ջուրը պահում են առանձին ամաններով տների մէջ ամբողջ տարին և գործ են ածում իբրև դեղ ու դարման և իբրև մաքրութիւն ու փրկութիւն, երբ հարկաւոր է լինում մի որ և իցէ աղտոտած, պղծուած անօթ սրբելու, մաքրելու։ Տներում պահում են նոյն նպատակով ու նոյն գործադրութեան համար և Երուսաղէմից բերած «Քեռ յորդանայ», այսինքն Յորդանանի ջուր։

## ԱՌԱՋԱՒՈՐԱՑ ՊԱՍ ԵՒ Ս. ՍԱՐԳԻՍ

Առաջաւորաց պասին Նախիջևանցիք էլ ս. Սարգսի պաս են առում։ Ս. Սարգիսը, որ Յուլիանոս ուրացողի բռնութիւնից փախչելով, եկել է նախ Հայոց Տիրան Բ․ թագաւորի մօտ և յետոյ գնացել է պարսից Շապուհի մօտ և նահատակուել է սորա ձեռքով իւր Մարտիրոս որդու հետ միասին Յունուարի 30-ին, ինչպէս յայտնի է, միշտ գայթակղութեան քար է եղել Յունաց և Հայոց եկեղեցիների յարաբերութեան մէջ։ Հայերը նորան հաւատքի համար հալածուած ու նահատակուած համարելով, ընդունել են իբրև սուրբ և նորա համար յատուկ տօն են նշանակել, իսկ Յոյները նորան իւրեանց արքայադուստրը փախցնող արկածախնդիր մէկը համարելով, ոչ միայն նորան սուրբ չեն ընդունել, այլ և անարգել են. Հիմնուելով այն հանգամանքի վերայ, որ հայ ժողովուրդը միամտութեամբ այդ սրբի

տօնը մեծաւ մասամբ Առաջաւորաց պասի շաբաթ օրը գալու համար, ս. Սարգսի պաս է կոչւում ամբողջ Առաջաւորաց պասը, միշտ և հանապազ զրպարտել և բամբասել են Հայոց եկեղեցին։ Նոքա մինչև անգամ այդ մասին մի ամբողջ առասպել են հնարել ու մտցրել նորան իւրեանց ճաշոցների մէջ և դոյն առասպելի հեղինակութիւնն ընծայել են մի ոմն Սահակ-անունով կաթուղիկոսի, որ իբրև թէ գոյութիւն է ունեցել Հայոց կաթուղիկոսների շարքում և ապրել է ԺԲ դարում։ Այդ առասպելաբանական Սահակ կաթուղիկոսի հեղինակութիւնը, որ մի ընդարձակ յունարէն գրուածք է, գոյութիւն ունի մինչև ցայսօր և կոչւում է «Ճառ ընդդէմ Հայոց», առասպելաբանում է, թէ երբեմն եղել է Հայոց մոլորութեան վարդապետ Սարգիս անունով մէկը, որ ունեցել է մի շուն «Արցիվուր» յորջորջումով։ Ուր որ գնալիս է եղել այդ Սարգիսն իւր մոլորութեան սերմերը ցանելու համար, նախապէս միշտ ուղարկելիս է եղել իւր շանը իբրև առաջընթաց և իւր անելիք այցելութեան ազդանշան։ Ժողովուրդը տեսնելով Արցիվուրին, իմանում է եղել վարդապետի գալու մասին, պատրաստութիւն է տեսնում եղել և թափօրով ընդառաջ դուրս գալով, սիրով ու մեծարանքով ընդունելիս է եղել նորան։ Մէկ օր էլ իբրև՝ թէ գայլ է պատահել շանը, երբ դա իւր սովորական պաշտօնով գնալիս է եղել գիւղերից մէկը, և պատառել նորան, ուստի և վարդապետը գալով, չի տեսել այն յարգանքն ու պատիւը, որ առհասարակ սովոր է եղել տեսնելու։ Մտնելով գիւղը և իմանալով, որ Արցիվուրը չի եկել, մարդիկ է ուղարկել որոնելու, և գտած ոսկորներից գուշակելով նորա գլխին եկածը, շատ ցաւել է, և հրամայել է հայերին նորա մահուան համար սուգ անել, ծոմ պահել և սահմանած պասը կոչել է շան անունով «Արցիվուրց պահք»։

Ահա՛ Հայերի և յոյների մէջ այդ տօնի առթիւ առաջ եկած խօսք ու զրոյցի, հակառակութեան և վէճերից ծագած փոխադարձ ատելութեան հետևանքը կամ արգասիքը պէտք է համարել այն համոզմունքը կամ կարծիքը որ գոյացել և մինչև ցայսօր դեռ պահպանուել է Նախիջևանցւոց մէջ, թէ ս.

Սարգիսը միշտ վրէժխնդիր է լինում յոյներից, իւր տօնի շաբաթը բքախեղդ անելով յոյն ճանապարհորդներին։ Նախիջևանցիք, երբ ս. Սարգսի տօնի օրը կամ նոյն իսկ ամբողջ Առաջաւորաց պասի շաբաթն քամիներ են բարձրանում և բուք է լինում, սովորութիւն ունին ասելու. «ս. Սարգիսը հոռոմ պիտ խեղդէ», «ս. Սարգիսը հոռոմ չ'խեղդած չիլալ» և կամ թէ «ս. Սարգիսը հոռոմ պիտ փատցունէ», «ս. Սարգիսը հոռոմ չը փատցրած չիլալ»։

Այս դաղթականների կարծիքով ս. Սարգիսը մի զօրաւոր և արագահաս սուրբ է, որ ձի հեծած անդադար սլանում է ամպերի և ծովերի վերայ, աղջիկների բաղձանքները և երիտասարդների-«կտրիճների» «մուրատն» է կատարում, ճանապարհորդներին և առհասարակ նեղութեան մէջ գտնուողներին շուտափոյթ օգնութիւն է հասցնում և ազատում։ «Սուփ Սարգիս, տուն նեղիս հասնիս», բացագանչում և երեք անգամ խաչակնքում է իւրեսին նախիջևանցի գիւղացին, երբ նա կամենում է շուտով մի բանի հասնել, երբ նա մի որ և իցէ նեղութեան մէջ է լինում [1]։

Թէ ինչ տեսակ են հասկանում ս. Սարգսին Նախիջևանցիք և ինչպէս են երևակայում նորան,—կարելի է տեսնել հետևեալ աղօթքաձև հին ասացուածքից, որ մինչև ցայսօր դեռ պահուել է և երբեմն-երբեմն կարելի է լսել ծերերի բերանից.

Քիշեր ասի տուս էլլայ,
Մէկ զօրաւոր սուփ տեսայ,
Ասի, լացի, ոթքն ինկայ,
Ասի, հայր սուրբ, անունդ ինչ է.
Իմ անունս սուփ Սարքիս,
Օրթուս անունը՝ սուփ Մայտիրոս,
Ծիս կըքալէ ամպին վըրան,
Անթաթար ծովին վըրան,

[1]) Տես Քաւիայեյ Պատկանեանցի «Զախու» գրուածքը «Матеріалы для изученія армянскихъ нарѣчій, выпускъ I. Говоръ Нахичеванскій».

*Գնա՛, սա՛ քերիներուն*
*Ազատ անէ իր արևուն* [1]։

*Հասած աղջիկներն իւրեանց բաղձանքներին և կտրիճներն իւրեանց «մուրատին» հասնելու համար այդ պասի շաբաթը սովորաբար երեք օր ծոմ են պահում և ճաշակում են։ Այդ ծոմապահութեան առթիւ էլ երրորդ օրը փեսացուների տներից հարսնացուների տները «ծումչէքը» է գալիս։ «Ծումչէքը» բաղկացած է լինում մի որ և իցէ կնոջ ընծայից, անուշեղէնից՝ «խաթմուխ հալուա», «փիլիկ հալուա», և այլն և մի տեսակ պղպեղախառն եփած մեղրաջուր ըմպելիքից, որ կոչւում է «հայրա»։ Հարսնացուների տներում «ծումչէքը» վայելելու համար «Աղջիկ-ժողոտանք» է լինում։ Նշանած աղջիկները հրաւիրում են իւրեանց ընկերուհիներին և բարեկամ աղջիկներին և նոցա հետ միասին ուտում, խմում, պարում և ամբողջ օրը ուրախանում են։ Այդ դէպքից օգուտ են քաղում նշանուած և նշանելու կտրիճները. նոքա հաւաքւում են «ժողովտանքի» տան պատուհանների տակ և աշխատում են նայել, տեսնել՝ որն իւր նշանածին, ո՛րն էլ իւր հաւանածին։ Նոցա, այդ կտրիճներին ոչ մի կերպով հեռացնել, վարել պատուհանների տակից չի կարելի, որովհետև, նախ, ինչպէս ասում են նախիջևանցիք, «նշանուած կտրիճները հաստերես կըլլան», երկրորդ, ինքեանք աղջիկներն էլ փոխադարձաբար ցանկանում են իւրեանց փեսացուներին ու հաւանածներին տեսնել։*

## ԴԸՐԸՆԴԷԶ ԵՒ ԲԱՐԵԿԵՆԴԱՆ

*Նախիջևանցիք Դըրընդէզին ասում են «Տերինտազ» և գիւղերում կատարում են համարեա՛ թէ այնպէս, ինչպէս ուրիշ տեղերում, փողոցներում, հրապարակներում և տների բակերում խոտի խուրձերից դէզեր կազմելով, եկեղեցուց բերած վառած մոմերով վառելով նոցա և չորս բոլորը պտտելով և*

[1]) Այս աղօթքը առաջին անգամ տպագրուած է, Քերովբէ Պատկանեանի «Говоръ Нахичеванскій»-ի մէջ։

*Նախիջևանցւոց յատուկ սովորութիւնն է այդ ուրախութեան օրերում դիմակաւորուելու-«Ջամալ [1]) ըլլալու» և գիշերներն իւրեանց ցանկացած տներն այցելելու։ Երիտասարդներն ու աղջիկները գոյանով միջոց են ստանում իւրեանց հաւանածների տները գնալ և ծպտեալ պարել ու զուարճանալ նոցա հետ։ «Ջամալները» շրջում են խումբ-խումբ, խմբերը բաղկացած են լինում միմեանց ազգական, ծանօթ ու բարեկամ աղջիկներից ու երիտասարդներից, որոնք զանազան դիմակներ ու զգեստներ են հագած լինում։ Մի խումբը ներկայացնում է հարս ու փեսայ իւրեանց մերձաւորներով, միւսը-հոգևորականներ՝ կոյս, քահանայ, աբեղայ, երրորդը՝ բոշաներ, չորրորդը զօրականներ, և այլն և այլն։*

*«Ջամալները» սովորաբար չեն խօսում, որովհետև վախենում են, որ ձայնից ու խօսելու ձևից ճանաչուեն։ Նոքա մի տուն մտնելուս, կամ երգում են, կամ դաշնամուր նուագել տալիս ու պարում, կամ, վերջապէս, ինքեանք են նուագում և ձեռների շարժուածքով ու փոխած ձայնով զանազան սրաբանութիւններ, կատակներ անում, զուարճանում ու զուարճացնում տնեցւոց։*

*Բուն բարեկենդանի, կամ, ինչպէս Նախիջևանցիք ասում են, Մեծ-բարեկենդանքի վերջին երկու օրը ցերեկով էլ փողոցներում երևում են «ջամալների» խմբեր, որոնք կամ ձիաւորուած, կամ սայլերի վերայ նստած դափ ու զուռնայով կամ երգեհոնով, հարայ-հրոցով, պարելով ու ձիարշաւ լինելով շրջում են փողոցէ փողոց, կանգնում են խանութների առաջ, մտնում են տների բակերը ու փող են հաւաքում։ Դա Նախիջևանի հայկական կառնաւալի պրոցեսիոններն են, որոնք գիւղերում սովորաբար ներկայացնում են հարս ու փեսայի հանդիսաւոր ընթացքը, իսկ քաղաքում, բացի հարս ու փեսայի ընթացքից, և ուրիշ պատկերներ։*

*Բացի այս բոլորից, Նախիջևանի գիւղերում մնացել է ուրիշ շատ հայաբնակ տեղերին յատուկ բարեկենդանին ընդհա-*

---

[1]) Ջամալ=դիմակաւոր։

նուր ձիարշաւ սարքելու սովորութիւնը։ Գիւղացի կտրիճները դուրս են գալիս դաշտը և «խոչի» են գալիս, այսինքն ձիարշաւ են լինում, աշխատելով իրար առաջը տալ և շուտ հասնել նշանակուած տեղը։

Բուն բարեկենդանի վերջին օրը-կիւրակի երեկոյեան Նախիջևանի պառաւները-«Մեծանրը» կամենալով իւրեանց թոռներին, կամ առհասարակ տան մէջ եղած մանուկներին ժամ առաջ քնած տեսնել, սովորաբար ասում են նոցա, «հա՛յտա, տղաք, ասօր կանուխ պառկէք, որ առաւօտն ալ կանուխ էլլիք տեղերէդ ու տեսնիք «Մըռմըռասը», որ քիշերը տէրտէրը պլոտ բերէ ու կախէ»։

## Մ Ե Ծ - Պ Ա Ս

Մեծ-պասին Նախիջևանցիք ասում են «Ախացք». այսինքն աղուհաց, և միմեանց շնորհաւորելուս ասում են. «Ձնաւոր ախացք»։ Պաս բռնելու սովորութիւնը գիւղերում պահպանուել է բոլոր մաքրութեամբ, իսկ քաղաքում վերացել, կամ լաւ է ասել, վերանալու վերայ է։ Զորեքշաբթի և Ուրբաթ խպառ չեն պահում. պահում են միայն շաբաթապասերը և Քառասնորդաց պասը, այն էլ միայն ծերերը և հաղորդուողները։

Ամբողջ Մեծ-պասը պահողների թիւը շատ սակաւ է, առհասարակ պահում են մի կամ երկու շաբաթ հաղորդուելուց առաջ։ Պասի վերանալու հանգամանքն առաջ եկած պէտք է համարել երկու գլխաւոր պատճառից՝ ընդհանրապէս պասի այս դաղթական հայերի աչքին իւր նշանակութիւնը կորցնելուց և տնտեսական հանգամանքներից։ Պասուց կերակուրներն աւելի թանդ են նստում, քան թէ ուտուցը, որովհետև պասուց կերակուրների գլխաւոր նիւթերից մէկը՝ բանջարեղէնը այս կողմերում պակասում է։ Մեծ-պասին այս կողմերում դաշտերը դեռ ձիւնով ու սառուցով են պատած լինում, ուրեմն և խօսք չի կարող լինել թարմ կանաչեղէնի մասին. ցանաղան բանջարեղէնի բռնուածքներ էլ շատ քիչ է լինում, որովհետև այս

կողմերում, նախ, ուտելու կանաչեղէնի տեսակների թիւը շատ սահմանափակ է, եղածներն էլ վատ տեսակից են, կամ բերովի ու թանգ են, երկրորդ ժողովուրդն էլ սովորութիւն չունի առանձին կերպով կանաչեղէն ու բանջարեղէն գործածելու կամ իբրև առանձին կերակուր, կամ ուրիշ կերակուրների հետ իբրև համեմունք։

«Բանջար», որ այս գաղթականների լեզուով ընդհանուր անուն չէ, այլ բանջարեղէնի միայն մի տեսակի, «թաթրան», «շուշյան», «կարդմա», և «ծեթրին»—ահա սոցանով սահմանափակւում է այն վայրի բանջարների թիւը, որոնք գործ են ածում այս կողմերի հայերի մէջ իբրև առանձին ուտելիք, կամ բռնուածքի նիւթ և կամ իբրև համեմունք։ Բանջարը կամ տապակում են, կամ նորան սամսայի մէջ են դնում, թաթըրանը ուտում են հում-հում, վերայից կաշին հանելով, կարդաման ուտում են հացով նոյնպէս հում-հում, շուշանը բռնում են աղաջրով և պահում ձմեռուայ համար, իսկ ծեթրինը կամ ծթրինը մաքրում, ծեծում, մանրացնում և պահում են իբրև համեմունք «թաթար բեօրէհի և «խաշըլ բեօրէհի» կոչուած կերակուրների համար, որոնք նախիջևանցւոց ամենասիրելի խորտիկներն են։

Չ'նայելով բանջարեղէնի և ընդհանրապէս գործածելիք կանաչեղէնի այսպիսի սղութեան, այնուամենայնիւ նախիջևանցիք իւրեանց սեղանը պատրաստում են շատ վայելուչ կերպով։ Նոքա սեղանի վերայ սովորաբար դնում են, բացի զանազան սնկի ջրից պատրաստած պասուց ապուրներից, «սխտոր-թօփից» արևածաղկի կամ, մանանեխի իւղով տապակած կարտօֆիլից և ալիւրաշաղախ արած ու տապակած սնկից, և ձիթապտուղ, խաշած ու մանրած սունկ, կապառ, խաշած, տըրորած ու պաղեցրած «բակլայ, բոհրած կաղին», չոր մրգեղէն, «հալուայ» և անուշահամ «սարայլը»։

Պասի երկուշաբթին կոչւում է «բակլայ-խորան, այսինքըն բակլայ ուտելու օր, կամ պասուց կերակուրների ուտելու օրերի սկիզբը։ «Բակլայ-խորան» կատարելու և առհասարակ միմեանց այցելելու ու «ախացքը» շնորհաւորելու սովորու-

*թիւնը քաղաքում արդէն վերացել է, իսկ գիւղերում դեռ կատարւում է բոլոր ճշգրտութեամբ: Գիւղացիք այդ օրը հաւաքւում են միմեանց տուն, շնորհաւորում են միմեանց «ախացքը», ուտում, խմում են, քէֆ են անում, պարը սկսելով ու «Լուացարուք-սրբացարուքի» հանդէսը կատարելով: «Բակլայխորան» գիւղերում տնէց տուն շրջում են ցիգանները և ժողովում են ուտսաց կերակուրների մնացորդը, կամ, ինչպէս գիւղացիք ասում են, «խալխան-խալխանը», պասի երկուշաբթին էլ կախում են առաստաղներից ու սենեակի անկիւններից աւանդական Սոխն եօթը փետուրով, որ այս գաղթականները կոչում են «Մըռմըռաս», որով վախեցնում են երեխաներին, սաստում են պասը լուծողներին:*

*Մըռմըռասի փետուրները սովորութիւն կայ զարդարելու գոյնզգոյն ժապաւէններով: Ամեն մի շաբաթուայ փրցնելու փետուրն ունի իւրեան յատուկ գոյնի ժապաւէնը. Զատկինը կարմիր է, Ծաղկազարդինը կանաչ, Լուսաւորչինը սպիտակ, իսկ միւս շաբաթներինը սեւ: «Մէջինքին», որ գալիս է շաբաթուայ մէջտեղը, ուրեմն և փետուր փրցնելու օր չէ, սովորաբար կտրում են այդ շաբաթը փրցնելու հերթական փետուրի կէսը, որով, 'ի հարկէ, ուզում են ցոյց տալ, թէ պասը կէս է եղել: Նոյն «մըջինքին» սովորութիւն կայ մի առանձին տեսակ հաց պատրաստելու և աղքատներին բաժանելու: Այդ հացը, որ կլորակ, մէջը ուռուցիկ ձեւ ունի և որի երեսը մեղրաջուր է քսւում, կոչւում է «պալլից»: կան այնպիսիներն էլ, որոնք «պալիցի» տեղ պատրաստում են «Չորակ», որ նոյն պալիցի ձեւն ունի, միայն որ երեսը մեղրաջուր չի քսուած:*

## ԾԱՂԿԱԶԱՐԴ ԱՒԱԳ-ՈՒՐԲԱԹ ԵՒ ԶԱՏԻԿ

*Ծաղկազարդին Նախիջևանցիք ասում են «Ջառզարդար» և «Ծառկոտրունք»: Առաջինը նոյն՝ Ծառզարդար, բառն է որ սովորաբար գործ են ածում շատ տեղերում հայերը, երկրորդն առաջ է եկել ուռ կոտրատելու ու բաժանելու գործածութիւնից:*

սՕրհնած ճիւղերը, ինչպէս ամեն տեղ, այստեղ էլ հիւում, փաթաթում են միմեանց հետ, կազմում են մի մեծ օղբռնելու տեղով և պահում են ամբողջ տարին։ Գիւղացիք այդ օղերի միջով անց են կացնում վառեակներին և առհասարակ հաւ ու ճիւը, որ նոքա դէր լինին, որ «թուլլու գոշլու» լինին, ինչպէս ասում են նոքա։ Երբ որ սաստիկ քամի է բարձրանում և փոթորիկ է լինում, Նախիջևանցիք նոյն օրհնած ճիւղերը խաչաձև միմեանց վերայ դնելով ու համբուրելով, ձգում են կրակը և այրում, հաւատացած լինելով, որ դորանով փոթորիկը կ'դադարի, կ'վերջանայ։ Սովորութիւն կայ օրհնած ճիւղերով միմեանց մէջքի զարնելու և ասելու, «մէջքը տեղը-կամքը տեղը»։ Աւագ-հինգշաբթի լոյս Աւագ-ուրբաթ գիշերը, որ ուրիշ տեղերում կոչուում է «Չարչարանաց գիշեր» կամ «Սգի գիշեր», Նախիջևանում կոչուում է «Տէր-Մեղայի գիշեր»։ Նախիջևանի բոլոր եկեղեցիներն էլ մեծագին, ոսկեզօծ, զարդարուն դագաղներ ունին, որ Աւագ-ուրբաթ օրը դնում են եկեղեցու մէջտեղը և նոցա վերայ յարդարում Քրիստոսի գերեզմանը։ Դագաղների վերայ ձգուած է լինում ոսկեթել և արծաթաթել ուռուցիկ հիւսուածքով խաչելութեան պատկերը, որ առանձին պատուանդանի վերայ դնելով, շքեղ թափօրով ուրբաթ երեկոյ հանում են եկեղեցուց և ահագին ամբոխով շրջապատուած շրջեցնում են եկեղեցու չորս կողմը։ Շատ հետաքրքրական տեսարան են ներկայացնում այդ թափօրները։ Եկեղեցու զանգակները, որ այստեղ հնչեցնում են ոչ զոյգ, հայկական եղանակով, այլ ռուսական ձևով ու եղանակով, ղողանջում են, քշոցները զնգզնգում են, ահագին ղամբարները, որ երկու մարդ տանում են թափօրի առաջից, փայլփլում են և աղօտ լոյս են տարածում խաչ ու խաչվառի և հոգևորականների շքեղ զգեստների վերայ, իսկ աղօթողները ջերմեռանդութեամբ խառնուում են խաչելութեան պատկերի չորս կողմը, աշխատելով, գոնէ, մի մատի ծայրով էլ է կպչել պատկերի պատուանդանին։

Զատկի պատրաստութիւնը սկսում են տեսնել վերջին շաբաթուայ հէնց սկզբից, և այդ շաբաթուայ ամեն մի օրը համարեա ունի իրան յատուկ պատրաստութեան առարկան կամ

վերայից թռչելով։ Քաղաքում Հայոց այդ կռապաշտական հետաքրքրական հին սովորութիւնն արդէն վերանալու վերայ է. ճիշդ է, այդ օրը երեկոյեան եկեղեցիները լցուած են լինում աղօթողներով, որոնք կանգնած են լինում վառած մոմերով և ժամերգութիւնից յետոյ ամենքն էլ շտապում են և աշխատում այդ մոմերը չ'հանգցրած տուն հասցնել և նոցա հալուածքից իւրեանց դռների և գլխարկների մէջ կաթեցնել, բայց արդէն «դըրընդէզներ» չեն շինում։ Տեղ-տեղ միայն կարելի է տեսնել խանութների առաջ ձգուած փոքրիկ խոտի կոյտեր, որ խանութների տղայքը վառում են, կամ, լաւ է ասել, այրում, ծխեցնում են իբրև յիշատակ Դըրընդէզի։

Գիւղացիք կարծում են, որ դըրէնդէզի ծխով ու կրակով այրում ու վերջացնում են «ժիվոտներին», որոնք երևում են Նոր-տարուն։ Թուխոի գիւղում կայ մի փոքրիկ ձորակ, որի եզերքում գտնուած կրաքարի ժայռերի տակը և ճեղքերում գոյացել են այրաձև փոսեր։ Ահա այդ ժայռերից մէկը, որ կոչւում է «Բշդռտ-դայեա», մասնաւորապէս ծառայում է իբրև «ժիվոտ» այրելու տեղ։ Դըրընդէզին գիւղի տղայքը հաւաքւում են վերոյիշեալ ձորակը, խոտ են ձգում «Բշդռտ-դայեայի» տակ գոյացած փոսի մէջ և այրելով երկար ծխեցնում են։ Եթէ այդ ժամանակ մէկը նոցա հարցնէ, թէ «Տղայք, ինչ կանիք», նոքա կ'պատասխանեն. «ժիվոտ կերինք»։ Նոյն կարծիքը դըրընդէզի մասին ունին և քաղաքացիք, միայն որ նոքա այստեղ «Տերընտաղի» կրակի ու ծխի մէջ այրում, ոչնչացնում են ոչ թէ «ժիվոտներին», այլ «խոնջոլողներին», որոնք նոյնպէս երևում են Նոր տարուն։

Բարեկենդանին նախիջևանցիք ասում են «Բարեկենանք» և անց են կացնում նորան, ամբողջ շաբաթը, նամանաւանդ վերջին երեք օրը միմեանց մօտ հաւաքուելով-«բարեկենանք նստելով», կեր ու խում անելով, քաղաքի հարևաններն ընտիր սահնակներով, իսկ հասարակ ժողովուրդն ու գիւղացիք «ծուկի չանաներով» [1]) փողոցէ փողոց շրջելով ու զուարճանալով։

[1]) Չանա=սահնակ։

Նախիջևանցւոց յատուկ սովորութիւնն է այդ ուրախութեան օրերում դիմակաւորուելու–«Ջամալ [1]) ըլլալու» և գիշերներն իւրեանց ցանկացած տներն այցելելու։ Երիտասարդներն ու աղջիկները դորանով միջոց են ստանում իւրեանց հաւանածների տները գնալ և ծպտեալ պարել ու զուարճանալ նոցա հետ։ «Ջամալները» շրջում են խումբ-խումբ, խմբերը բաղկացած են լինում միմեանց ազգական, ծանօթ ու բարեկամ աղջիկներից ու երիտասարդներից, որոնք զանազան դիմակներ ու զգեստներ են հագած լինում։ Մի խումբը ներկայացնում է հարս ու փեսայ իւրեանց մերձաւորներով, միւսը-հոգևորականներ՝ կոյս, քահանայ, աբեղայ, երրորդը՝ բօշաներ, չորրորդը զօրականներ, և այլն և այլն։

«Ջամալները» սովորաբար չեն խօսում, որովհետև վախենում են, որ ձայնից ու խօսելու ձևից ճանաչուեն։ Նոքա մի տուն մտնելուս, կամ երգում են, կամ դաշնամուր նուագել տալիս ու պարում, կամ, վերջապէս, ինքեանք են նուագում և ձեռների շարժուածքով ու փոխած ձայնով զանազան սրաբանութիւններ, կատակներ անում, զուարճանում ու զուարճացնում տնեցւոց։

Բուն բարեկենդանի, կամ, ինչպէս Նախիջևանցիք ասում են, Մեծ-բարեկենդանքի վերջին երկու օրը ցերեկով էլ փողոցներում երևում են «ջամալների» խմբեր, որոնք կամ ձիաւորուած, կամ սայլերի վերայ նստած դափ ու զուռնայով կամ երգեհոնով, հարայ-հրոցով, պարելով ու ձիարշաւ լինելով շրջում են փողոցէ փողոց, կանգնում են խանութների առաջ, մտնում են տների բակերը ու փող են հաւաքում։ Դա Նախիջևանի հայկական կառնաւալի պրոցեսիոններն են, որոնք գիւղերում սովորաբար ներկայացնում են հարս ու փեսայի հանդիսաւոր ընթացքը, իսկ քաղաքում, բացի հարս ու փեսայի ընթացքից, և ուրիշ պատկերներ։

Բացի այս բոլորից, Նախիջևանի գիւղերում մնացել է ուրիշ շատ հայաբնակ տեղերին յատուկ բարեկենդանին ընդհա-

[1]) Ջամալ=դիմակաւոր։

նուր ձիարշաւ սարքելու սովորութիւնը։ Գիւղացի կտրիճները դուրս են գալիս դաշտը և «խոշի» են գալիս, այսինքն ձիարշաւ են լինում, աշխատելով իրար առաջը տալ և շուտ հասնել նշանակուած տեղը։

Բուն բարեկենդանի վերջին օրը-կիւրակի երեկոյեան Նախիջևանի պառաւները-«Մեծաները» կամենալով իւրեանց թոռներին, կամ առհասարակ տան մէջ եղած մանուկներին ժամ առաջ քնած տեսնել, սովորաբար ասում են նոցա, «Հա՛յտա, տղաք, ասօր կանուխ պառկէք, որ առաւօտն ալ կանուխ ելլիք տեղերէդ ու տեսնիք «Մըռմըռաւը», որ քիշերը տէրտէրը պիտ բերէ ու կախէ»։

## Մ Ե Ծ - Պ Ա Ս

Մեծ-պասին Նախիջևանցիք ասում են «Ախացք». այսինքն աղուհաց, և միմեանց շնորհաւորելիս ասում են. «Ընաւոր ախացք»։ Պաս բռնելու սովորութիւնը գիւղերում պահպանուել է բոլոր մաքրութեամբ, իսկ քաղաքում վերացել, կամ լաւ է ասել, վերանալու վերայ է։ Չորեքշաբթի և Ուրբաթ իսպառ չեն պահում. պահում են միայն շաբաթապասերը և Քառասնորդաց պասը, այն էլ միայն ծերերը և հաղորդուողները։

Ամբողջ Մեծ-պասը պահողների թիւը շատ սակաւ է, առհասարակ պահում են մի կամ երկու շաբաթ հաղորդուելուց առաջ։ Պասի վերանալու հանգամանքն առաջ եկած պէտք է համարել երկու գլխաւոր պատճառից՝ ընդհանրապէս պասի այս դաղթական հայերի աչքին իւր նշանակութիւնը կորցնելուց և տնտեսական հանգամանքներից։ Պասուց կերակուրներն աւելի թանգ են նստում, քան թէ ուտուցը, որովհետև պասուց կերակուրների գլխաւոր նիւթերից մէկը՝ բանջարեղէնը այս կողմերում պակասում է։ Մեծ-պասին այս կողմերում դաշտերը դեռ ձիւնով ու սառուցով են պատած լինում, ուրեմն և խօսք չի կարող լինել թարմ կանաչեղէնի մասին. զանազան բանջարեղէնի բռնուացքներ էլ շատ քիչ է լինում, որովհետև այս

կողմերում, նախ, ուտելու կանաչեղէնի տեսակների թիւը շատ սահմանափակ է, եղածներն էլ վատ տեսակից են, կամ բերովի ու թանգ են, երկրորդ ժողովուրդն էլ սովորութիւն չունի առանձին կերպով կանաչեղէն ու բանջարեղէն գործածելու կամ իբրև առանձին կերակուր, կամ ուրիշ կերակուրների հետ իբրև համեմունք։

«Բանջար», որ այս գաղթականների լեզուով ընդհանուր անուն չէ, այլ բանջարեղէնի միայն մի տեսակի, «թաթրանի», «շուշանի», «կարդմա», և «ծեթրին»—ահա սոցանով սահմանափակուում է այն վայրի բանջարների թիւը, որոնք գործ են ածում այս կողմերի հայերի մէջ իբրև առանձին ուտելիք, կամ բռնուածքի նիւթ և կամ իբրև համեմունք։ Բանջարը կամ տապակում են, կամ նորան սամսայի մէջ են դնում, թաթրանը ուտում են հում-հում, վերայից կաշին հանելով, կարդաման ուտում են հացով նոյնպէս հում-հում, շուշանը բռնում են աղաջրով և պահում ձմեռուայ համար, իսկ ծեթրինը կամ ծթրինը մաքրում, ծեծում, մանրացնում և պահում են իբրև համեմունք «թաթար բէօրէհի և «խաշըլը բէօրէհի» կոչուած կերակուրների համար, որոնք նախիջևանցւոց ամենասիրելի խորտիկներն են։

Չ'նայելով բանջարեղէնի և ընդհանրապէս գործածելիք կանաչեղէնի այսպիսի սղութեան, այնուամենայնիւ նախիջևանցիք իւրեանց սեղանը պատրաստում են շատ վայելուչ կերպով։ Նոքա սեղանի վերայ սովորաբար դնում են, բացի զանազան սնկի ջրից պատրաստած պասուց ապուրներից, «սխեռիթօփից» արևածաղկի կամ, մանանեխի իւղով տապակած կարտօֆիլից և ալիւրաշաղախ արած ու տապակած սնկից, և ձիթապտուղ, խաշած ու մանրած սունկ, կապառ, խաշած, տըրբոքած ու պաղեցրած «բակլայ, բոհրած կաղին», չոր մրգեղէն, «հալուայ» և անուշահամ «սարայլը»։

Պասի երկուշաբթին կոչուում է «բակլայ-խորան, այսինքըն բակլայ ուտելու օր, կամ պասուց կերակուրների ուտելու օրերի սկիզբը։ «Բակլայ-խորան» կատարելու և առհասարակ միմեանց այցելելու ու «ախացքը» շնորհաւորելու սովորու-

*թիւնը քաղաքում արդէն վերացել է, իսկ գիւղերում դեռ կա-տարւում է բոլոր ճշդութեամբ։ Գիւղացիք այդ օրը հաւա-քւում են միմեանց տուն, շնորհաւորում են միմեանց «ախաց-քը», ուտում, խմում են, քէֆ են անում, պարը սկսելով ու «Լուացարուք-սրբացարուքի» հանդէսը կատարելով։ «Բակլայ-խորան» գիւղերում տնէց տուն շրջում են ցիգանները և ժո-ղովում են ուտսաց կերակուրների մնացորդը, կամ, ինչպէս գիւղացիք ասում են, «խալխան-խալխանը», պասի երկուշաբ-թին էլ կախում են առաստաղներից ու սենեակի անկիւններից աւանդական Սոխն եօթը փետուրով, որ այս դաղթականները կոչում են «Մըռմըռաս», որով վախեցնում են երեխաներին, սաստում են պասը լուծողներին։*

*Մըռմըռասի փետուրները սովորութիւն կայ զարդարելու գոյնզգոյն ժապաւէններով։ Ամեն մի շաբաթուայ փրցնելու փե-տուրն ունի իւրեան յատուկ գոյնի ժապաւէնը. Զատկինը կար-միր է, Ծաղկազարդինը կանաչ, Լուսաւորչինը սպիտակ, իսկ միւս շաբաթներինը սև։ «Մէջինքին», որ գալիս է շաբա-թուայ մէջտեղը, ութեմն և փետուր փրցնելու օր չէ, սովորա-բար կտրում են այդ շաբաթը փրցնելու հերթական փետուրի կէսը, որով, 'ի հարկէ, ուզում են ցոյց տալ, թէ պասը կէս է եղել։ Նոյն «մըջինքին» սովորութիւն կայ մի առանձին տեսակ հաց պատրաստելու և աղքատներին բաժանելու։ Այդ հացը, որ կլորակ, մէջը ուռուցիկ ձև ունի և որի երեսը մեղրաջուր է քսւում, կոչւում է «պալլից»։ կան այնպիսի-ներն էլ, որոնք «պալլիցի» տեղ պատրաստում են «Չօրակ», որ նոյն պալլիցի ձևն ունի, միայն որ երեսը մեղրաջուր չի քսուած։*

## ԾԱՂԿԱԶԱՐԴ ԱԽԱԳ-ՈՒՐԲԱԹ ԵՒ ԶԱՏԻԿ

*Ծաղկազարդին նախիջևանցիք ասում են «Զառզարդար» և «Ծառկոտրունք»։ Առաջինը նոյն՝ ծառզարդար, բառն է որ սովորաբար գործ են ածում շատ տեղերում հայերը, երկրորդն առաջ է եկել ուռ կոտրատելու ու բաժանելու գործածութիւնից։*

«Օրհնած ճիւղերը, ինչպէս ամեն տեղ, այստեղ էլ հիւում, փաթաթում են միմեանց հետ, կազմում են մի մեծ օղբունելու տեղով և պահում են ամբողջ տարին: Գիւղացիք այդ օղերի միջով անց են կացնում վառեակներին և առհասարակ հաւ ու ճիւը, որ նոքա գէր լինին, որ «թուլլու դոշլու» լինին, ինչպէս ասում են նոքա: Երբ որ սաստիկ քամի է բարձրանում և փոթորիկ է լինում, Նախիջևանցիք նոյն օրհնած ճիւղերը խաչաձև միմեանց վերայ դնելով ու համբուրելով, ձգում են կրակը և այրում, հաւատացած լինելով, որ դորանով փոթորիկը կ'դադարի, կ'վերջանայ: Սովորութիւն կայ օրհնած ճիւղերով միմեանց մէջքի զարնելու և ասելու, «մէջքը տեղըկամքը տեղը»: Աւագ-հինգշաբթի լոյս Աւագ-ուրբաթ գիշերը, որ ուրիշ տեղերում կոչուում է «Չարչարանաց գիշեր» կամ «Սգի գիշեր», Նախիջևանում կոչուում է «Տէր-Մեղայի գիշեր»: Նախիջևանի բոլոր եկեղեցիներն էլ մեծագին, ոսկեզօծ, զարդարուն դագաղներ ունին, որ Աւագ-ուրբաթ օրը դնում են եկեղեցու մէջտեղը և նոցա վերայ յարդարում Քրիստոսի գերեզմանը: Դագաղների վերայ ձգուած է լինում ոսկեթել և արծաթաթել ուռուցիկ հիւսուածքով խաչելութեան պատկերը, որ առանձին պատուանդանի վերայ դնելով, շքեղ թափօրով ուրբաթ երեկոյ հանում են եկեղեցուց և ահագին ամբոխով շրջապատուած շրջեցնում են եկեղեցու չորս կողմը: Շատ հետաքրքրական տեսարան են ներկայացնում այդ թափօրները: Եկեղեցու զանգակները, որ այստեղ հնչեցնում են ոչ դոյգ, հայկական եղանակով, այլ ռուսական ձևով ու եղանակով, ղողանջում են, քըշոցները զնգզնգում են, ահագին ղամբարները, որ երկու մարդ տանում են թափօրի առաջից, փայլփլում են և աղօտ լոյս են տարածում խաչ ու խաչվառի և հոգևորականների շքեղ ըզգեստների վերայ, իսկ աղօթողները ջերմեռանդութեամբ խառնուում են խաչելութեան պատկերի չորս կողմը, աշխատելով, գոնէ, մի մատի ծայրով էլ է կպչել պատկերի պատուանդանին:

Զատկի պատրաստութիւնը սկսում են տեսնել վերջին շաբաթուայ հէնց սկզբից, և այդ շաբաթուայ ամեն մի օրը համարեա ունի իրան յատուկ պատրաստութեան առարկան կամ

զբաղմունքը։ Երկուշաբթի սրբում մաքրում են տները—«տուն դուս կ՚ձգեն», Երեքշաբթի և Չորեքշաբթի «փաթիր» են պատրաստում, Հինգշաբթի հաւկիթ են ներկում, Ուրբաթ զատկահաց—«պասքա» են թխում և Շաբաթ օրը ճրագալոյցի՝ընթրիքի պատրաստութեամբ զբաղւում։ Ճրագալոյցի ընթրիքը յարդարում են ըստ ամենայնի յար և նման ծննդեան ճրագալոյցի ընթրիքին։

«Փաթիրն» ուտոյց քաղցր խմորից պատրաստուած մի տեսակ թխուածք է, որ պսակի ձև ունի և ներկայացնում է Քրիստոսի փշեայ պսակի յիշատակը. Ժողովուրդ չ՚հասկանալով բառի նշանակութիւնը և թխուածքի խորհուրդը, աղաւաղել է նորան և, փոխանակ «Պսակդիր» ասելու, ասում է «փաթիր»։

Հաւկիթը սովորաբար շատ է ներկւում, որովհետև նա հարկաւորում է ոչ թէ ճրագալոյցին թաթախելու համար և զատկի սեղանը զարդարելու համար, այլ և զատկին յաջորդող առաջին երկու շաբաթը հիւրերին այցելութիւն անողներին հիւրասիրելու համար։ Նախիջևանցւոց մէջ կարծիք է տարածուած, թէ զատկական հաւկիթը շատ ու շատ երկար է դիմանում, չի փչացնում։ Հաւկիթ խաղալու կամ կռուեցնելու սովորութիւնն այս գաղթականների մէջ համարեա թէ իսպառ վերացել է, կամ, գուցէ, հէնց սկզբից էլ չի եղել։

Զատկի «Ախառի» սովորութիւն չ՚կայ։ Ճիշդ է, Նախիջևանցիք էլ մատաղը սիրում են և յաճախակի եկեղեցիների ու վանքերի դռներում մատաղ են բաժանում, բայց ուրիշ տեղերում այնքան ընդունուած ընդհանուր մատաղ մորթելու, եփելու և եկեղեցիների բակում «ագապի» կամ սիրոյ սեղան պատրաստելու ու ուտելու սովորութիւնն իսպառ վերացել է։

Զատկին, երբ ձիւները հալւում են, գետինը տաքանում է, կանաչները ծլում են և երևում է «զատիկ» կոչուած կարմիր միջատը, Նախիջևանցիք առնում են նորան, դնում իւրեանց ափի մէջ և հարցնում. «Խռիմի ճանբան որն է», և ՚ի հարկէ, պատասխանը չեն ստանում, որովհետև զատիկը խուճապելով դէսուդէն է փախչում։ Այս սովորութիւնը պատմական հիմք ունի և շատ գեղեցիկ բնորոշում է այն անելանելի դր-

բութիւնը, որի մէջ ընկել են գաղթականներն իւրեանց գաղթելու առաջին տարին, երբ գնու ոչ արտօնութիւնների հրովարտակն է ստացուած եղել, ոչ էլ նոցա բնակութեան համար մի որոշ տեղ է սահմանուած եղել: Փախչել, վերադառնալ կարելի չի եղել, որովհետև խիստ հսկողութիւն է եղել, մի հաստատուն բնակութեան տեղ էլ չեն ունեցել. Նոքա իսկ խուճապել են, ինչպէս զատիկը ձեռքի ափի վերայ շուարած դէս ու դէն է փախչում ու ճանապարհ չի գտնում ազատուելու:

Ահաւասիկ «Խռիմ-աղասիի» [1]) մասին գաղթականների մէջ շատ յիշողութիւն չի պահպանուել: Բացի Ղռիմի ճանապարհը զատկից հարց ու փորձ անելու սովորութիւնից և մի քանի մանդր-մունդր յիշողութիւնից, պահպանուել է և հետևեալ փոքրիկ երգը, որ անկասկած գաղթականներն իւրեանց հետ Ղռիմից են բերել Նախիջևան, որովհետև երգի բովանդակութեան հիմքը կազմող գործողութիւնը հէնց կատարուում է Ղռիմում:

Ճենդեկը ինկայ, սանդր գտայ,
Սանդրը տարի, չոբնին տուի՝
Չոբանը ինձի գառը տուեց,
Գառը տարի աղային տուի,
Աղաս ինձի չալ ձի տուեց,
Չալ ձին հեծայ, Ղարասու գնացի.
Ղարասու թաթաւ կուգար,
Թաթաւ կուգար, սէլ կուվազէր,
Երկու աղջիկ սէյր կանէին—
Մէկը մեծ էր, մէկալը պզտիկ.
Մեծին անցայ, բարև տուի,
Պզտիկին ալ մայիլ էղայ,
Առանց ստըկի խայիլ էղայ. [2])

## ԿԱՆԱՉ ԿԻՒՐԱԿԷ ԵՒ ՁՈՔ

Զատիկից յետոյ, կանաչ կիւրակէին Նախիջևանցիք սովորութիւն ունին դաշտ դուրս գալու և զբօսանք կատարելու: Քաղա-

[1]) Խռիմ-աղասի=Ղրիմի թերակղզի:

[2]) Այս երգը հաղորդել է մեզ օր. Թագուհի Զուբարեանը:

*քացիք սովորաբար դնում են գբօսանքի «Ախսայի-Դերէ» կոչուած ձորակը, որ գտնւում է քաղաքի հիւսիս-արևելեան կողմը և որի միջով հոսում է մի սառնորակ առուակ և գնում, թա-փւում է Գօն գետը։ «Ախսայի-Դերէ» անունը յիշեալ ձորակը ստացել է առուակից, որ, ինչպէս երևում է, հին ժամանակ-ները կոչուել է տաճկերէն «Ակ-Սու», իսկ յետոյ Թուրքաց լի-զուին անտեղեակ ժողովուրդի բերանում աղաւաղուել, դառել է «Ախսայ»։ Գիւղացիք էլ նոյն գբօսանքը կատարելու համար դուրս են գալիս իւրեանց գիւղերը շրջապատող արտերն ու դաշտերը։ Այդ գբօսանքի օրն է, որ աղջիկները և կանայք սովորաբար քաղում են «ծեթրինը», բերում տուն, մաքրում և պահում ձմեռուայ համար։ Ծեթրինը գաղթականները շատ են տալիս վերոյիշեալ «խաշըլ-բեօրէհի» և «թաթար-բեօրէհի» կերակուրների վերայ, որոնք, ինչպէս ասել ենք, Նախիջևանցւոց սիրելի խորտիկներն են։*

*«Խաշըլ-բեօրէհին», որին Բեսսարաբցիք «Ականջապուր» հայերէն անունն են տալիս, մի տեսակ ապուր է, որ պատ-րաստւում է մածնախառն մսի արգանակից և ականջի ձևով շինած «բեօրէհիներից», այսինքն մսով խճողած խմորիկներից, իսկ «թաթար-բեօրէհին» բաղկացած է միայն մածնախառն և իւղախառն բեօրէհիներից, առանց արգանակի։ Այդ բեօրէհի-ներով սովորութիւն կայ բաղդ փորձելու։ Ա՚ւանջիկներից մէկի մէջ դնում են մի մխակի հատիկ, և ում որ ուտելու ժամա-նակ դուրս է գալիս այդ մխակը, նա տան մէջ բաղդաւորն է համարւում։ Նախիջևանում ձմեռը շատ երկար է տևում, և թէև ձիւն շատ չի գալիս և եկածն էլ շուտով հալւում է, բայց ցուրտը խիստ երկար է շարունակւում։ Գարուն, կա-րելի է ասել, որ համարեա թէ չ'կայ, այնքան աննկատելի է անցնում տարուայ այդ գեղեցիկ եղանակը Գօնի և Ազով ծո-վի ափերում։ Տաքերն այնպէս անակնկալ կերպով են սկսւում, յանկարծակի այնպիսի երաշտութիւն է լինում, որ կարճ մի-ջոցում դիջացած հողը ցամաքում է, նոր ծլած ու կանաչած արօտը թօշնում, դետինը ճաքճքում և հացահատիկների ար-մատները բացւում ու այրւում են։ Ահա հէնց այս պատճա-*

ռով սովորութիւն է դարձել թէ գիւղերում և թէ քաղաքում ամեն տարի անդաստան անելու, օրհնելու հողն ու ջուրը և Աստուծոյ գթութիւնը խնդրելու երկիր ոռոգելու համար։ Այդ հասարակաց մաղթանքն է աղօթ, որ ծնկաչոք կատարուելու պատճառով ժողովուրդը կոչում է «չոք» և որ նամանաւանդ քաղաքում կատարւում է շատ հանդիսաւոր կերպով։ «Չոքի» նախընթաց օրը, որ սովորաբար լինում է շաբաթ, երեկոյեան հանդիսով և խուռն բազմութեամբ բոլոր եկեղեցիների մասունքները բերում են Ս. Լուսաւորիչ մայր-եկեղեցին, և բազմեցնում սեղանի վերան և հսկումն կատարում—«Եկեսցէ» ասում։ Միւս օրը—Կիւրակէ—քաղաքի բոլոր հոգևորականութիւնը հաւաքւում է մայր-եկեղեցին և հանդիսաւոր պատարագ մատուցանելուց յետոյ, խաչ ու խաչվառով, մասունքներով դուրս են գալիս եկեղեցուց և չորս կողմը ծնկաչոք մաղթանք կատարում։ Նոյնը կատարում են և գիւղացիք, իւրեանց գիւղերում գտնուած ջրերը օրհնելով, դաշտ դուրս գալով, օրհնած ջուրը շաղ տալով և «թաթախի մատաղ» անելով։ Չալթըրցիք այդ ժամանակ օրհնում են իւրեանց սուրբ համարուած «Սալըխ-Սու» ջրհօրը, իսկ Թոփտեցիք իւրեանց գիւղի մեծ աղբիւրը-«չովրախը»։

## Վ Ի Ճ Ա Կ

Նախիջևանցիք էլ, ինչպէս պատմում են ծերունիները, հին ժամանակները սովորութիւն են ունեցել ամեն տեղ ընդունուած կերպով վիճակ ձգելու և դորանով իւրեանց բաղդը փորձելու։

Համբարձման տօնի նախընթաց օրն եօթ աղջիկ լուռ ու անտես գնում են եղել ջուր հանելու եօթը ջրհորից և ծաղկէփնջերով զարդարելով ու մետաքսէ կտորով ծածկելով ջրամանը, տանում են եղել նորան մի ծառի տակ և պահում պարտիզում։ Միւս օրը պատարագից յետոյ հաւաքւում են եղել աղջիկներ և կանայք և նստելով պարտիզում կանաչի վերայ և սափորը

մէջ բերելով, մէջը ներկայ գտնուողներից ամեն մէկը մի որ և է իր է ձգում եղել։ Այնուհետև կանանցից մէկն իբրև նախերգանք ասում է եղել.

«Վիճակ, վիճակ»,
Վիճակի չիչակ»,
Վարդ, մանուշակ»,
«Ոսկի կօճակ».

Խօսքերը, և սկսում է եղել վիճակհանութեան կարգը։ Ամեն մէկը մի մի տուն վիճակի երգ է ասելուս եղել և հանել սափորից մի իր. որի ձգած իրը դուրս է գալիս եղել, նորան էլ յարմարեցնում են եղել երգի իմաստը։

Այժմ այդ հին, գեղեցիկ սովորութիւնը քաղաքում իսպառ վերացել է, վիճակի երգերն էլ մոռացուել են և պահպանուել է, այն էլ միայն մասամբ, գիւղերում։ Մինչև ցայսօր դեռ գիւղացի կանանց և աղջիկների բերանում պահուել են վիճակի այդ վաղեմի երգերից մի քանի տուն բան, որ մեզ յաջողուեց մի պառաւի ասել տալ և գրի անցնել։

1

Կանանչ ղումղան [1]) բունէի,
Կանանչ պաղչայ ջրէի,
Բիլբիլ ձի հեծցունէին,
Ճուտ մուրատիս հասցունէին։

2

Ես ձագ էի ճրտվրտայի,
Ոսկի սինի կըսկըստայի,
Մարգարիտէ թել շարէի,
Ալեմին [2]) Սուլթան ըլլայի։

3

Մանուկն էր մօրին ղնաց,
Ոսկի կացինը ձեռքը,
Քանի քամին քարին կ'զարնէր,
Կ'խաղար լուսինկան ծոցը։

4

Հերու ունէի մէկ գօտի,
Ըս տարի ունեցայ երկու գօտի
Երկուսն ալ սատու խուշ, [3])։
Տուշմանիս աչքը փուշ։

5

Ոսկի կթիչք բունէի,
Արծաթ մակաթ զարնէի.
Արնոց տանէի,
Բարնոց բերէի։

6

Վերէն ինկաւ մէքամ բալիք,
Իկաւ, սեղանիս դուռը կայնեցաւ,
Սուրբ սեղանիս դուռը բացուեցաւ
Տաճարիս դուռը բացուեցաւ։

---

1) Ղումղան=ջրաման։ 2) Ալեմ=աշխարհ։ 3) Տատու խուշ=դրախտահաւ։

7

Մինտար մինտարին վըրան,
Հրամէ, նստի վըրան.
Ձուտ ձու ու շուտ խապուլ արա,
Ձիգայ չոր քամին վըրան։

8

Վարի տունը գնացի,—
Բամբակ գզած, դրած.
Վերի տունը գնացի,—
Հաց էփած, դրած։

9

Եյլայ, նայեցայ աշխրքիս վրան,
Տասուերկու լուծ լծուած էր.
Ան ալ իմիս Նասխպիս[1]) վըրան,
Իմիս պաղդաւորութինիս վրան։

10

Բոյսը էրկան է, էրկան է,
Հալաւս տահա էրկան է.
Խանէ խանէ քալէի, [2])
Թօզը էրկինք հանէի։ [3])

Քաղաքում այժմ նոյն խսկ համբարձման հինգշաբթի օրը միմեանց տուն են հաւաքում աղջիկներն ու երիտասարդները և թերթիկների վերայ գրում են զանազան սրբերի ու սրբուհիների անուններ։ Ընդունհետև վիճակահանութեան պէս հանում են թերթիկները. ում ինչ սրբի անուն գրած թերթիկ է դուրս գալիս, նա էլ գնում է ս. Համբարձման եկեղեցին և նոյն սրբի պատկերի առաջ մոմ է վառում ու աղօթում, որ իւր «մուրատը» կատարուի։ Այդպիսի վիճակահանութեան ժամանակ յաճախակի այնպէս է պատահում, որ ներկայ գտնուող և վիճակահանութեան մասնակցող երիտասարդներին դուրս է գալիս ներկայ գտնուող և վիճակահանութեան մասնակցող աղջիկների անուանով սրբուհու անուն և ընդհակառակը։ Դորանից գուշակում են, թէ ում է վիճակուած, որին հարսնանալ ու փեսայանալ։ Վիճակի այս երկրորդ տեսակը, որ այնքան քիչ է կատարուում, որ կարելի է նոյնպէս արդէն վերացած համարել, կոչուում է «Փոքր վիճակ», հակառակ առաջին տեսակին, որ կոչուում է Մեծ-վիճակ։

---

[1]) Նասիպ=բաղդ. [2]) Խանէ խանէ քալել=փողոցէ փողոց շրջել։ [3]) Վիճակի այս երգերի մի վարիանտն էլ տպագրուած է «Нахичевансій Говоръ»-ում.

## ՎԱՐԴԱՎԱՌ Ս. ՅԱԿՈՎԲ ԵՒ ՈՒԽՏԱԳՆԱՑՈՒԹԻՒՆ

Վարդավառին Նախիջևանցիք էլ «Վարթէվոր» են ասում։ Միմեանց վերայ ջուր սրսկելու-«վարթէվոր անելու» կամ «վարթէվոր խաղալու» սովորութիւնը քաղաքում բոլորովին վերացել է և պահպանուել է միայն գիւղերում։ Վարդավառին կատարւում է Նախիջևանցւոց տեղական ամենամեծ ուխտագնացութիւնը դէպի Ս. Խաչ վանքը։ Առհասարակ Նախիջևանցիք, ինչպէս և ուրիշ տեղերի Հայերը, շատ են սիրում ուխտագնացութիւն և կատարում են նորան ամեն տեղ ընդունուած կերպով։ Նոքա օրերով մնում են ուխտի տեղերում, մատաղներ են մորթում, ուտում, խմում, պարում են և քէֆ ու ուրախութիւն անում։

Բացի սովորական մատաղացուից-ոչխարից, Նախիջևանցիք սովորութիւն ունին մատաղ անելու և աքաղաղներ և այդ մասնաւորապէս ս. Յակոբայ տօնի օրը։ Առհասարակ ս. Յակոբայ տօնի նախընթաց օրն ամեն տուն գնում է այնքան աքաղաղ, որքան տանն արու անդամ կայ, սկսած դիեցիկ մանուկներից և վերջացած մեծ մարդկանցով ու ծերունիներով։ Հետաքրքրական պատկեր է ներկայացնում այդ օրը քաղաքի շուկան. աքաղաղ է, որ ամեն կողմից բերում են քաղաք ծախելու, որովհետև, բացի Հայկական գիւղերից, շրջակայ բոլոր գիւղերում էլ յայտնի է լինում, որ այդ օրը Հայերն աքաղաղ են գնում մատաղ անելու, ուրեմն և մեծ պահանջ կայ Նախիջևանի շուկայում։ Աքաղաղների կռկռոցը, «մաթռապազների» [1]) իւրեանց «խորոզներին» տուած գովասանքը, գնողների սակարկութեան ձայները մարդու ականջ են խլացնում։ Ամեն տեղ միայն աքաղաղ է երևում—սայլերի վերայ, «ոտերի վերայ առևտուր անողների» ձեռքին, գետնի վերայ թափած, կողովների մէջ—ամեն տեղ միայն աքաղաղի մասին է խօսքը, ամեն կողմից միայն «խորոզ» խօսքն է, մարդու ականջին հասնում։

Միւս օրը-տօնի օրը մատաղացու աքաղաղներին տանում

---

[1]) Մաթռապազ կոչւում են այն մանրավաճառները, որոնք գիւղացիներից ապրանք էժան գնով առնում են ու ձեռաց թանգ գնով վաճառում։

են եկեղեցիների բակը, մորթել են տալիս, կամ ինքեանք են մորթում և տուն բերելով ու խաշելով, մաս-մաս են անում ու սովորական մատաղի պէս հաց վերայ դրած բաժանում դրացիներին։

Թէ ինչից է առաջ եկել աքաղաղ մատաղ անելու այդ սովորութիւնը յատկապէս ս· Յակոբայ տօնին,—Նախիջևանցիք ինքեանք էլ չ'գիտեն։ Նոքա այդպէս իւրեանց հայրերից տեսել են, այդպէս էլ աւանդաբար կատարում են։ Ճիշդ է, ծերերից ոմանք այդ մասին պէս-պէս պատմութիւններ են անում, բայց, մեր կարծիքով, դոցանից և ոչ մէկը չի բացատրում այդ սովորութիւնը. դոքա — այդ պատմութիւնները բոլորը ևս յետոյ գտած — հնարած բաներ են և ցոյց են տալիս աւելի ձգտումն մեկնելու այդ սովորութիւնը, քան թէ իսկապէս մեկնում են։ Ոմանք, օրինակի համար, պատմում են, թէ երբ որ ս. Յակոբը, Մծբնայ հայրապետը վախճանել է, նորա գերեզմանի վերայ այնքան ոչխար են մատաղ արել, որ ձգուած փորոտքի և աւելորդ մասերի նեխելուց և գարշահոտութիւնից ժանտախտի պէս մի վարակիչ հիւանդութիւն է առաջ եկել և սկսել կոտորել ժողովուրդը։ Հասկացող և իմաստուն մարդիկ ցաւը վերջացնելու նպատակով ժողովրդին խորհուրդ են տուել, ոչխարի փոխարէն, աքաղաղ մատաղ անելու, հասկացնելով, թէ սուրբը ոչխարի մատաղ չի ընդունում։ Ոմանք էլ պատմում են, թէ մէկ անգամ ս. Յակոբը գնում է մի տեղ և տեսնում է, որ այդ տեղի ժողովուրդը տանջւում է մի տեսակ հիւանդութիւնից։ Սուրբը պատուիրում է աքաղաղի միս ուտել, և բոլորեքեան առողջանում են, ուստի և երբ վախճանւում է նա, սովորութիւն է դառնում 'ի պատիւ նորա աքաղաղ մատաղ անելու, և այլն և այլն։

Բացի Ս. Խաչ վանքի մեծ ուխտագնացութիւնից, Նախիջևանցիք ունին այլ ևս բազմաթիւ սրբատեղեր, որոնց ուխտերը նոքա կատարում են մեծ ջերմեռանդութեամբ։ Համարեա ամեն մի եկեղեցի, թէ քաղաքում և թէ գիւղերում ունի իւր առանձին ուխտի օրը։ Ս. Խաչ վանքը, բացի Վարդավառից, ունի այլ ևս ուրիշ ուխտի օրեր։ Թոփտի գիւղի «Սարըխ-Սու» կոչուած աղբիւրը, որի ջուրը բուժիչ զօրութիւն ու-

նի, որովհետև գիւղացիներից մէկի տեսիլքով լոյս է իջել նորա վերայ, և որի վերայ մատուռ է շինուած, ունի իր ուխտի օրը. Ս. Խաչի մօտ գտնուած «Սալըխ-Սու» աղբիւրը, որի վերայ նոյնպէս մի մատուռաձև շինութիւն կայ, դարձեալ ուխտատեղի է և վանք ուխտ գնացողներն այցելում են և այդ աղբիւրը։ Մեծ հռչակ է վայելում իբրև ուխտատեղի նամանաւանդ Նխուիթայ գիւղի ս. Կարապետ եկեղեցին, որի ուխտաւորը և մատաղը թէ քաղաքից և թէ գիւղերից տարինտանելու ամիս անպակաս են լինում. մեծ հռչակ է վայելում իբրև ուխտատեղի և քաղաքի ս. Գէորգ եկեղեցին, որի ուխտը կոչւում է «խըտըրելլեզ», կատարւում է ուխտագնացութեան բոլոր պարագաներով և տևում է երեք օր։ Այդ ուխտատեղիները, բացի նորանից, որ նոքա բաւականութիւն են տալիս ժողովրդի ջերմեռանդութեան, այլ և ծառայում են իբրև աղջիկտեսի տեղեր նախիջևանցի երիտասարդների համար. Նամանաւանդ այդ նպատակին ծառայեցնում են «վարթէվորը» և «խըտըրելլեզը»։

Նախիջևանցիք հեռաւոր ուխտագնացութիւն կատարում են, գնալով Երուսաղէմ, Մշոյ ս. Կարապետը և ս. Էջմիածին։ Նոքա շատ են սիրում «հաջի» դառնալ, ուստի և իւրաքանչիւր նախիջևանցու մեծ բաղձանքն է, երբ նա հասակն առնում է, գնալ ս. քաղաքը, տեսնել ս. գերեզմանը, ս. գլխագիրը և արժանանալ ս. լոյսի տեսութեան։ Սովորաբար գնում են բարեկենդանին, մնում են ս. Յակովբում ամբողջ Մեծ-պասը, տեսնում են զատկական հանդէսները և վերադառնում են տուն, բերելով իւրեանց հետ «Քեստ յորդանայ» և ուրիշ սովորական բաներ։ Ս. Էջմիածին նոքա գնում են առհասարակ մեռոնօրհնէքին Հայաստանեայց եկեղեցու այդ նուիրական հանդիսին ներկայ գտնուելու, ս. մեռոնի կաթսան համբուրելու և աչքով ս. մեռոնի եփ եկածը տեսնելու. իսկ ս. Կարապետ գնում են նշանուածները, որովհետև նախիջևանցի կտրիճներն իւրեանց «մուրազին» հասնելու համար համարեա թէ միշտ ուխտած են լինում ս. Կարապետի գերեզմանը համբուրելու։ Մինչև ցայսօր դեռ ծեր մարդկանց բերանից կարելի է լսել «խարիպ Մելքոն»

կոչուած կտրճի երգը, որ ուխտած լինելով ս. Կարապետ ուխտ գնալու և հիւանդութեան պատճառով չ'կարողանալով կատարել իւր ուխտը, տանջուում ու հալումաշ է լինում։ Վերջապէս չ'կարողանալով դիմանալ, նա հիւանդ-հիւանդ ճանապարհ է ընկնում դէպի Հայաստան իւր կտրիճ ընկերների հետ, բայց չը հասնելով իւր «մուրատին», նա հոգին աւանդում է Թիֆլիսում, կտակելով, որ իւր կտրիճ ընկերները, գոնէ, «մուրատը», այսինքն իւր ձին տանեն ս. Կարապետի դրանը կապեն։

Օխտի տարի ցաւ քաշիլ էր խարիպ [1]) Մելքոնը,
Ս. Կարապետ ուխտ արիլ էր խարիպ Մելքոնը՝
Ջիերս հեծանք ճամփրվեցանք, գեղէն չէթ [2]) էլլանք.
«Ջիմլալ, աղա, չիմլալ, աղա, ինքդ երթայիր»։
«Գնա, Մելքոն, գնա, Մելքոն, ուխտդ կատարէ'»,
«Կոխէ զէնկուդ, [3]) կուպուր խամչիդ, [4]) մի մնալ հալխէն»։
Կախեցի զէնկու, կուպուցի խամչիս, հասայ Նախշըվան։
Ճամփրվեցանք, ճամփրվեցանք խաղ ու խունդումով,
Ճամփրվեցանք մինչև Թամպը [5]) խաղալ-խնդալով։
Թամպէն էլլանք, Քափքայ հասանք, ոտքերս ուռեցաւ,
Քափքայէն էլլանք, սարը հասենք, սիրտս ուռեցաւ,
Սարէն էլլանք. Թիֆլիզ հասանք, մէկ բան չիմացայ։
Հայ աղաներ, հայ աղաներ, ճարիս ճար գտիք։
Երկու տղաք խօսք մէկ էղանք, բօշտա բռնեցինք,
Մինչ որքի բօշտան ալ էկաւ, Մելքոնը լմնցաւ։
Յիսուն չորս առխատաշներս [6]) լաց-գոռում էղանք,
Մենք փորեցինք, մենք թաղեցինք մէկ հայ տէրտէրով.
Յիսուն չորս առխատաշներս չորս դին փաթթեցւ
Յիսուն չորս առխատաշներս էլլանք, գնացինք՝
«Մուրատս տարէք, ս. Կարապետին դուռը կապեցէք».
«Բարև կանիք Խաչիկ ախբօրս և բաբայիս»,
«Բարև կանիք Խաչիկ ախբօրս և մամայիս»։ [7])

---

[1]) Խարիպ=աղքատ։ [2]) Չէթ=դաշտ։ [3]) Զէնկու=ասպանդակ։ [4]) Խամչի=մտրակ։ [5]) Թամպ=[illegible]։ [6]) Առխատաշ=ընկեր։

[7]) Այս երգը մեզ հաղորդել է պ. Սերովբ Չալթըլբաշեանը։ Սա, ինչպէս երևում է մտքից, խանգարուած և պակասաւոր է։

Ս. Կարապետի ուխտաւոր կտրիճներից է Մ. Նալբանդեանցի «Մինին խօսք, միւսին հարս» վէպի գլխաւոր հերոսը, որ նշանուած լինելով և իւր «մուրատին» հասնելու համար ս. Կարապետին ուխտ արած ու գնացած լինելով, մինչև որ վերադառնում է ուխտից իւր նշանածին արդէն ուրիշին հարս եղած է գտնում։ Նոյն վէպի մէջ հանգուցեալ հրապարակախօսը նկարագրել է, 'ի միջի այլոց, և նախիջևանցւոց Ս. Խաչի «Սալըխ-Սուլին», ուխտ գնալու և սուրբ աղբիւրի մօտ գտնուած ծառերի վերայ հնոտիներ փաթաթելու, իբրև իւրեանց ցաւերն այնտեղ թողնելու նշան, սովորութիւնը։

Բացի այս ուխտագնացութիւններից, նախիջևանցիք կատարում են և մի ուրիշ ուտագնացութիւն. նոքա երբեմն ուխտ են գնում և Ազովի ափին գտնուած Մարիուպոլ յունաբնակ քաղաքի Տիրամօր հրաշագործ պատկերին։ Այս վերջին ուխտագնացութեան սովորութիւնը նախիջևանցիք բերել են իւրեանց հետ Ղրիմից։ Մարիուպոլ քաղաքը, ինչպէս յայտնի է, հիմնարկուել է Նախիջևանի հետ միասին յոյների ձեռքով, որոնք հայերի հետ միաժամանակ նոյն պայմաններով և նոյն հանգամանքերի մէջ դուրս են եկել Ղրիմից և գաղթել Ռուսաստան, բերելով իւրեանց հետ իւրեանց ամենամեծ սրբութիւնը—Տիրամօր հրաշագործ պատկերը։ Ղրիմի յունաց ս. Աստուածածին վանքը, որտեղից հանուած է այդ պատկերը, մինչև ցայսօր ևս գոյութիւն ունի և գտնուում է Բախչիսարայից $1^1/_2$ վերստ հեռաւորութեան վերայ «Ջըհուդ-կալէ» կոչուած կարայիմ հրէաների աւերակ քաղաքի մօտ։ Վանքը փորուած է միապաղաղ ապառաժի մէջ մի լեռնացքում, որ վանքի հետ միասին տեղացիները կոչում են «Մարիում»։ Վանքի հիմնարկութեան մասին պատմում են հետևեալը։ ԺԵ դարի կիսում թաթարների մայրաքաղաքը Բախչիսարայ տեղափոխուելու ժամանակները լեռների վերայ յանկարծ յայտնուում է մի վիշապ, որ սկսում է լափել շրջակայ յոյների բոլոր անասունները և մեծ սարսափ է ձգում բոլորի վերայ։ Միամիտ ժողովուրդը միջոց չունենալով յաղթել վիշապին, սկսում է ջերմեռանդութեամբ աղօթել և Աստուածամօր բարեխօսութիւնը խնդրել

այդ չար գազանի դէմ։ Մէկ օր յանկարծ մի զօրեղ լոյս է երեւում այժմ «Մարխում» կոչուած լեռնանցքի դժուարամատոյց ապառաժներից մէկի վերայ և սպանութիւնները ու կոտորածները դադարում են։ Քրիստոնեաներն աշխատում են բարձրանալ, լոյսի տեղը հասնել, բայց չեն կարողանում, որովհետեւ ապառաժը բարձր էր և միապաղաղ։ Նոքա ձեռնարկում են աստիճաններ փորելու և մեծ աշխատանք ու ջանք գործ դնելուց յետոյ, բարձրանում են ապառաժի գագաթը։ Այդտեղ նոքա տեսնում են լոյսի տեղում մի սուրբ պատկեր և վիշապի գլուխը։ Պատկերն իսկոյն տեղափոխում են ականաւոր քրիստոնեաներից մէկի տունը, բայց նա քանիցս անգամ նորից վերադառնում է իւր նախկին տեղը։ Այն ժամանակ ժողովուրդը սկսում է փորել ապառաժը և մի փոքրիկ մատուռ շինելով, զետեղում է նորա մէջ սուրբ պատկերը և եկեղեցին կոչում է «ս. Աստուածածին», որովհետեւ պատկերի յայտնութիւնն եղել էր օգոստոսի 15-ին։

Նախիջեւանցիք, որոնք դեռ Ղրիմում բնակուելու ժամանակ սովորութիւն են ունեցել ուխտ գնալու յունաց սուրբ Աստուածածինը, Նախիջեւան տեղափոխուելուց յետոյ էլ չեն մոռացել նոյն սովորութիւնը և շարունակել են և մինչև ցայսօր եւս արունակում են «Մարխում» ուխտ գնալ։

Ուխտագնացութիւններին Նախիջեւանցի գիւղացիների գլխաւոր զուարճութիւններից մէկն է գօտեմարտութիւնը, որ կոչւում է «դուռաշ»։ Գուռաշը կատարում են գիւղացի կրտրիճները և դորանով քաջութեան համբաւ են ձեռք բերում թէ իւրեանց համագիւղացիների, թէ բոլոր հայ գիւղացիների և թէ իւրեանց հարսնացուների ու հաւանած աղջիկների աչքին։ Հանդիսատես ուխտաւորներից, գլխաւորապէս գիւղացիներից մի ընդարձակ կրկէսի ձեւով շրջան է կազմւում, որի մէջտեղը դրւում է գօմշի գլուխ։ Ասպարէզ են դուրս գալիս դուռաշ եկողները և պտոյտ գալով գլխի չորս կողմը, աշխատում են յարմարութեամբ մէկմէկի բռնել և գօտեմարտելով վայր գլորել ու չոքել հակառակորդի կրծքին, որ յաղթութեան նշանն է։ Յաղթողը ստանում է շրջապատողների խրախուսանքը ու գովասանքը և իբրև յաղթութեան նշանի տէր է դառնում

դոմշի գլխին, որ ոյժի ու քաջութեան էմբլեմն է։ Հին ժամանակները, երբ այդ օրերին սովորութիւն է եղել և դոմէշ մորթել, ասպարէզ է հանուել և դոմշի թարմ գլուխը և յաղթողն իւր յաղթանակն եփել, կերել է իւր համագիւղացիների, կամ, լաւ է ասել, իւր թաղեցիների հետ, և զուարճացել ու ուրախութիւն արել։ Իսկ այժմ, երբ արդէն դոմէշ չի մորթւում, ասպարէզի մէջտեղը սովորաբար դրւում է դոմշի զանգը և յաղթողը քէֆ է անում իւր թաղեցի կտրիճների հետ, որոնք մեծ պարծանք են համարում իւրեանց համար, որ իւրեանց թաղն է յաղթող դուրս եկել, և հպարտանում են միւս թաղեցիների առաջ։ Այդ քէֆերի ժամանակ յաճախակի կռիւ է պատահում յաղթուող կտրիճի թաղեցիների հետ, որոնք, ’ի հարկէ, նախանձում են չեն կարողանում դիմանալ և չ’պատասխանել իւրեանց հակառակորդների կծու ակնարկութիւններին ու սրախօսութիւններին։

Առհասարակ Նախիջևանի գիւղերում թաղականութիւնը շատ զարգացած է և «մահլայական կռիւներ», որոնք յաճախ վերջանում են սուր ու դմբուզով, վիրաւորանքով և մինչև անգամ մարդասպանութեամբ, գիւղական կեանքի սովորական երեւոյթներից են։ Համարեա ոչ մի քէֆ ու ուրախութիւն առանց կռուի չի վերջանում։ Մի «մահլայից» պսակ է դնում եկեղեցի, միւս «մահլայի» երիտասարդները հաւաքւում են և կռիւ են սարքում պսակին մասնակցող երիտասարդների հետ. մի թաղում քէֆով, ուրախութեամբ «բարեկենդանք են նստում», միւս «մահլայի», տղայքն այնպէս են վերաբերում, այնպէս են իւրեանց պահում, որ անպատճառ կռիւ է ծագում նոցա մէջ. մէկ մահլայում «բակլայ-խոլան» են կատարում, միւս մահլայեցիք անպատճառ առիթ են որոնում խանգարելու ուրախութիւնը, որից, վերջ ’ի վերջոյ, նոյնպէս կռիւ է դուրս գալիս։

Յաղթանակը տանող և անյաղթ մնացող «գուլաշ» եկողների անունները երկար ժամանակ մնում են ժողովրդի բերանում և խօսք ու զրոյցի առարկայ դառնում։ Հին ժամանակներից, օրինակի համար, պահուել է մի «կարճուկ Մաթին» անունով կտրճի անուն, որ միշտ յաղթող է եղել և որի մէջ-

քը, ինչպէս ասում են, երբէք գետնին չի կպել։ Պօլիս-այդ Մառթինի մասին մինչ'և անգամ երգ էլ է կապուել, որի մէջ «կարճուկին» շռայլած գովասանքների հետ միասին կայ և «գուռաշի» նկարագրութիւնը։

1

Հէյ, մէգի, գացէք մէյդան,
Ի՞նչ այդպէս առաջև կուգան.
Զարկ խամչին, տուն մի նայիր,
Հոնէն ալ կըլնայ սէիր, [1]
Թող էլին կտրիճները։

2

Ո՞ւր է գոմէշին կլոխը,
Թող մէյդան [2]) գայ ուզեցողը,
Տէ, հածէ, տէվէ-խալտրան, [3])
Աթխուլախ, [4]) այու երխան. [5])
Հապա տուն, կարճուկ Մառթին,
Ի՞նչու կը նայիս հալխին։ [6])

3

Իշտէ կարճուկ Մառթինը
Կայնեց Ակոբին առջևը,
Եկան գօղի գօղիի,
Առնուեցան ձեռք ձեռքի
Թընդաց տակը գետինը,
Հավա էլլան [7]) թօզերը,

4

Տաքցան, ասլան կըտրեցան,
Զորս քովը պըտըտուեցան.
Ակոբը փաթթըվեցաւ,
Ու մէջքէն խափմէշ արաւ. [8])
Մառթինը մէկէն բռնից,
Ճըկից, վերուց թափից։

5

Եյլան տահա կըտրիճներ,
Ան Մառթինին հիչ բան չէր,
Նորա գալ էր պատռածը,
Գիտէ ալայ [9]) աշխարքը.
Նա օմուզին [10]) վրայէն,
Օպա թափլած կըտրիճ է։

6

Կարճուկ Մառթինին ուժին
Ուժ չի հասնի հիչ մէկին.
Աֆֆէրիմ, կարճուկ Մառթին,
Նամ [11]) ես տուն գեղացիին.
Տուն առիր ան կըլոխը,
Քրտինքիտ հելալ հախըː

7

Ծօ, Մառթին, մէյնակ չուտիս,
Մեր փայն-ալ քիչ մը պահիս,
Կոյխուն համը մենք-ալ տեսնունք,
Քու ուժէդ մենք ալ առնունք,
Քեզի պէս ասլան կտրինք,
Գալ պառլինք, օպա [12])գըրչինք։ [13])

---

[1]) Սէյր=հանդիսատեսութիւն։ [2]) Մէյդան=հրապարակ, ասպարէզ։ [3]) Տէվէ-խալտրան=ուխտ բարձրացնող։ [4]) Աթխուլախ=ձիու ականջ։ [5]) Այու-երխան=արջ գլորող։ [6]) Հալխ=ժողովուրդ։ [7]) Հավա ըլլալ=բարձրանալ։ [8]) Խափմէշ անել=բռնել։ [9]) Ալայ=բոլոր։ [10]) Օմուզ=ուս։ [11]) Նամ=անուն, հռչակ։ [12]) Օպա=սար։

[13]) Այս երգն առաջին անգամ հրատարակուել է Ռափայէլ Պատկանեանցի Մոսկուայում տպագրած երգարանի երկրորդ տետրակում։

## ՏՕՆ-ՇՆՈՐՀԱՒՈՐ

Ոչ մի հայաբնակ տեղում, կարելի է ասել, այնպէս ընդունուած չէ տօնախմբութիւն կատարելը, ինչպէս Նախիջևանում։ Ամեն տեղ էլ տօնախմբութիւն կայ, ամեն տեղ էլ քահանան տօնախմբութեան նախընթաց օրուայ երեկոյեան գնում է տօնատիրոջ տունը, մոմ է տալիս տօնատիրոջ ձեռքը, պահպանիչ ասում ու շնորհաւորում, ամեն տեղ էլ հանդիսաւոր կերպով իւրեանց տօնախմբութիւնը կատարողներ են լինում, բայց մի այդպիսի ընդհանուր սովորութիւն կամ կարգ, որից շատ քչերն են համարձակւում շեղուել, որ մի տեսակ պարտականացուցիչ, պաշտօնական բնաւորութիւն ունի, ոչ մի տեղ չի կարելի տեսնել։

Տօնախմբութիւններ էլ խիստ յաճախ են պատահում, որովհետև նախիջևանցիք սովորութիւն չունին իւրեանց զաւակներին ազգային անուններ տալու, որոնք մեծամասնութեամբ տօն չունին, այլ սովորաբար օրացոյցի անուններ են տալիս։ Բացի սորանից, նոքա տօնում են և աղջիկների ու կանանց տօները, թէև ոչ այնպէս հանդիսաւոր կերպով, ինչպէս տղամարդկանցը։ Յաճախակի դիտմամբ այս կամ այն անունն են դնում, որ այս ինչ կամ այն ինչ օրն էլ կատարեն տօնախմբութիւնը, կամ, ինչպէս ասում են, «Տօշնաւորը»։ Այդ պատճառով էլ մի հազուագիւտ երևոյթ չէ մի տան մէջ միևնոյն օրն երկու կամ երեք տօն-շնորհաւոր պատահելը, ինչպէս, օրինակի համար, Յովհաննու Մկրտչի, ս. Սարգսի ու Մարտիրոսի, Մարկոս-Ղուկասի, Յովակիմ և Աննայի և միւս այդպիսի տօներին։ Երբ որ միևնոյն բարեկամների, ազգականների և ծանօթների և առհասարակ միմեանց հետ գնալ-գալ ունեցողների շրջանում մի և նոյն անուններն են պատահում, ուրեմն և մի և նոյն օրերն են գալիս տօն-շնորհաւորները, այնպիսի կարգ է պահպանուում, որ հնարաւոր լինի ամենին էլ միմեանց տօն-շնորհաւորի պատահել, մէկ օրը մէկն է կատարում, միւս օրը միւսը, երրորդ օրը մի ուրիշը և այսպէս բոլորեքեան։ Մեծ վիրաւորանք է համարւում մէկի տօն-շնորհաւորին չերթալը, եթէ այդ մէկը քո տունդ քո տօն-շնորհաւորին եկել է։

*ձատերը դուրսնից բոլորովին կտրւում են միմեանց տուն գնալ-գալուց, որովհետև յաճախ կարելի է պատահել, տեսնել այնպիսի ընտանիքներ, որոնք մինչև անգամ իւրեանց ոչ հեռի ազգականների տունը յաճախում են միայն տօն-շնորհաւորից տօն-շնորհաւոր։ Այդ պատճառով էլ մեծ ճշդութեամբ հետևում են օրացոյցին, մեծ ճշդութեամբ ծանօթների, բարեկամների և ազգականների տօների ցուցակն են պահում, ճշդութեամբ էլ միտներն են պահում, թէ իւրեանց տունը տօն-շնորհաւորին ով է եկել, ով չի եկել, որ եկողին անպատճառ փոխադարձ այցելութեամբ պատուեն, չեկողի մօտ էլ անպատճառ չերթան։ Դորանից է առաջ գալիս այն հանգամանքը, որ մեծ տօն-շնորհաւորներին քաղաքի փողոցները, որոնք առհասարակ շատ խաղաղ ու հանգիստ են, մի առանձին կենդանութիւն են ստանում։ Գեղեցիկ կառքերը սրընթաց արշաւում են, ոտքով այցելութիւն անողները խռնւում են փողոցներում, տների գլխաւոր դռները, որոնք սովորաբար փակ են լինում, կրնկի վերայ բացւում են, մէկը մտնում, է միւսը դուրս է գալիս։*

*Մինչև անգամ նոքա, որոնց անուններն այն տեսակից են, որ տօն ունենալ չեն կարող, ինչպէս Լոյսպարոնները, Խաչերեսները, Պարոնները, Վարդերեսները, Լուսիկները, Լուսպիքաները, Թուշլիկները, Գեղեցիկները, Սրբուհիները, Տիրուհիները, Երանուհիները, Քրիստոստուրները, Խաչեղբայրները և միւսները աշխատում են յարմարեցնել իւրեանց անունները մի որ և իցէ սրբի կամ սրբուհու տօնի, որ կարողանան տօն-շնորհաւոր կատարել։ Վարդերեսները, օրինակի համար, կատարում են իւրեանց տօնը Վարդավառին, Լոյսպարոնները և Պարոնները – Լուսաւորչի տօներից մէկին, Սրբուհիները, Տիրուհիները, Թագուհիները —Աստուածածնայ տօներից մէկին, Խաչերեսները, Քրիստոստուրները և Խաչեղբայրները — Խաչի տօներից մէկին, որովհետև առաջին անուան մէջ «Վարդ» բառը կայ, երկրորդի մէջ «լոյս» բառը, երրորդի մէջ «խաչ» բառը և վերջապէս, միւսներն Աստուածածնայ մակդիրներն են։*

*«Տօշնաւոր քալողները» մտնելով տօն-շնորհաւորի տունը,*

նախապէս համբուրուում են տօնատիրոջ հետ, ասելով. «Մեծ օրդ շնաւոր», յետոյ կարգով մօտենում են տօնատիրոջ ընտանիքի միւս անդամներին՝ մօրը, հօրը, եղբօրը և միւսներին, եթէ դոքա ներկայ են լինում, և ձեռք առնելով, նոցա ևս շնորհաւորում են, կրկնելով նոյն ֆորմուլան—«Մեծ օրերդ շնաւոր»: Այնուհետև հիւրը հրաւիրւում է սեղանին, եթէ սեղան է պատրաստուած լինում, իսկ եթէ սեղան չ'կայ, մատուցւում է սուրճ, թէյ կամ շօկօլադ, ըստ կամաց, որը ցանկանայ հիւրը: Ճատերի մտնելն ու դուրս գալը մէկ է լինում, որովհետև յաճախ այցելելու այնքան շատ տեղ է լինում, որ այցելողները չեն ժամանում ամեն տեղ հասնել, ուստի և շատ շտապում են: Ճատերն էլ մնում են, լաւ ուտում-խմում, յետոյ գնում: Ցամենայն դէպս ամենքն էլ պարտական են, գոնէ, մի բաժակ գինի, կամ մի գաւաթ օղի անուշ անել և մի կտոր բան բերանը դնել շնորհաւորելու համար: Այդ դէպքում, 'ի հարկէ, դարձեալ կրկնուում ու երեքկնուում են «Մեծ օրդ շնաւոր» բառերը, որոնց վերայ շատ անգամ աւելացնում են և «Մեծ ըլլաս» բառերը:

Սեղանները սարքուում են ճաշակով և զարդարուում են թանկագին և համադամ ուտելիքներով՝ սովորական բռնուածքներով, թթուեղէնով, ձկնեղէնով, պանիրներով, երշիկներով, ապուխտներով, տապականով ու խորովածով, մեղր ու կարագով և հաստ սերով-«խայմախով» ու մատղաշ «խուզիի» «փորլիցով», որ խաշած ամբողջ մեծ թարթ ձկան հետ միասին հարուստ տօն-շնորհաւորի սեղանի առաջին զարդն ու ու բնորոշ կերակուրն է: 12 ժամին, երբ արդէն բաւականին բազմութիւն է հաւաքուած լինում, մատուցուում է կասկարայ-կասկարայ համեղ թելբաց-կուբաթին ձկնով, մսով, կամ հաւեղէնով, որ «բադէմով մեզէ» և «խուրաբիա» կոչուած անուշ թխուածքների հետ միասին, նոյնպէս տօն շնորհաւորների սեղանի յատկանիշ համադամներից է:

«Խուզիի փորլիցը» մատղաշ գառն է, փորն եղինձով խըճողած և փուռը դրած, իսկ «բադէմով մեզէն» ու «խուրաբիան» մի տեսակ անուշեղէն են—առաջինն ամբողջապէս

*ձուլ սպիտակուցից, նուշից ու շաքարից շաղախուած, երկրորդն անուշ խմորից, իւղից և կոտորած նշից։*

*Հիւրերին ճանապարհ ձգելու ժամանակ տօնատէրը նոցա, որոնց հետ ընտանիքով գնալ-գալ չունի, ճանապարհ է դնում, շնորհակալութիւն յայտնելով, որ նոքա եկել էին պատուելու նորան, իսկ նոցա, որոնց հետ ընտանիքով «երթալ-գալ» ունի, հրաւիրում է երեկոյեան ընտանիքով գալու, եթէ մեծ հրաւէրք ունի, ասելով. «իրիկունն էլ հրամեցէք ընտանիքով», իսկ եթէ առանձին հրաւէրք չունի, ասելով, «թէև հրամեցէքով բան չունինք, բայց մօտ մաշդիկը պիտ լան, արեցէք դուք ալ, ա՛նպէս, նստելու»։*

*Երեկոյեան և գիշերը քաղաքում շարունակւում է ցերեկուայ կենդանութիւնը։ Տօն-շնորհաւորների տները լուսաւորուած են* agiorno *— լապտերները վառուած, ջահերը լուսաւորած, ամեն տեղ, ամեն սենեակում ճրագ է վառւում, մինչև անգամ պատուհանների վերայ էլ մոմակալներ են դրուած լինում։ Փողոցներում երևում են խումբ-խումբ տօն-շնորհաւոր գնացողներ, ցերեկուայ պէս սլանում են կառքերը, տօնատէրերի տների գլխաւոր մուտքի դռները և բակերի դարպասները բացուած են, ամեն տեղ հիւրերի են սպասում։*

*Տօնատէրը և նորա ընտանիքը հրաւիրեալներին ընդունում են մեծ սիրով և առաջնորդելով դահլիճն ու հիւրասենեակները, բազմեցնում են նոցա պատուի երկարութեամբ, կամ, ինչպէս ասում են, «պատն են նստեցնում», տղամարդկանց առանձին, կանանց առանձին։ Գիւղերում այդ դէպքում մի առանձին կարգ է պահպանւում. պատուաւորներին նստեցնում են առաջին տեղը, կամ, ինչպէս ասում են, «վերի թոռն են նստեցնում», իսկ միւսներին նոցա մօտ կարգով, ըստ հասակի, վիճակի և ըստ հասարակական դրութեան։*

*Դահլիճի մէջտեղը դրուած է լինում մի երկար սեղան, սպիտակ սփռոցով ծածկուած և լուսաւորուած աշտանակներով. նորա վերայ շարուած են լինում զանազան տեսակ քաղցրաւենիներ, խուլարխա, բադէմով-մեզէ, տանու պատրաստած ընտիր պաքսիմատ — «պեսմէտ» և թէյի հետ վայելելու համար*

ազգի-ազգի շաքարահացեր ու անոյշ թխուածքներ։ Միւս սենեակներում էլ գցուած են լինում փոքրիկ սեղաններ, պարձեալ սփռոցներով ծածկուած և չորս անկիւնում մի մի մոմակալ դրած։ Ոմանք թէյ խմելու ժամանակ նստում են սեղանների մօտ, ոմանք էլ մնում են բազմած իւրեանց տեղերում։ Վերջիններին առանձին կերպով թէյ, քաղցրաւենիք և պաքսիմատ է մատուցւում «հրամեցէքներով»։ Թէյ է մատուցւում պալատականացուցիչ կերպով և բոլոր նոր եկողներին, մինչև անգամ երբ հրաւիրուածները շատ ուշանում են։

Ընդհանուր զուարճութիւն ու ուրախութիւն այդ տօնշնորհաւորներին սովորաբար չի լինում։ Բոլորեքեան նստում են ուռած, փքուած, և տօնատիրոջ հոգին դուրս է գալիս, մինչև որ մի տեսակ կարողանում է հիւրերին զբաղեցնել թէյի ժամանակ և թուղթ խաղալու ժամանակը հասցնել։ Ընդհանրապէս բոլոր հիւրերին միմեանց հետ ծանօթացնելու սովորութիւն չ'կայ. ով որ ծանօթ է, ծանօթ է, ով որ էլ ծանօթ չէ, այնպէս էլ չ'ծանօթացած մնում է։ Այդ պատճառով էլ ընդհանուր խօսակցութիւն գոյց չի լինում։ Տղամարդիկ կամ լռում են, կամ փոքրիկ շրջանների բաժանուած իւրեանց առօրեայ գործերի մասին են խօսում, կանայք էլ իւրեանց ծանօթներին ձեռք առնելով, կամ գլխով բարևելով, պարձեալ կամ լռում են, կամ միմեանց հետ իւրեանց առօրեայ «գալաջին» անում, բոլորեքեան միասին խօսելով, միմեանց չ'լսելով և մեծ աղմուկ հանելով։ Հետաքրքրական է կանանց միմեանց բարևելու ձևը։ Ծանօթը, եթէ մօտ է նստած ծանօթին, անպատճառ ձեռք է առնում և հարցնում, «ինչ կանիս», և պատասխան է ստանում. «ինչ անիմ»։ Մինչև անգամ ծանօթները հեռուից էլ միմեանց բարևելով, իւրեանց գլխի և երեսի գծագրութեան այնպիսի ձև են տալիս, որ պարզ կերպով դուրս է գալիս այդ հարց ու պատասխանը – «ինչ կանիս,—ինչ անիմ»։ Վերջապէս, թէյ անուշ անելը վերջանում է և հասնում է թղթախաղի ժամանակը։ Ամեն տեղ բացւում են կանաչ սեղաններն իւրեանց թղթախաղի պարագաներով, և տանուտէրն ամենին հրաւիրում է թղթի նստել, աշխատելով գործն այնպէս տա-

նել, որ միմեանց յարմարուող անձինք միմեանց հետ նստեն և, որ գլխաւորն է, որ բոլորեքեան նստեն, բոլորեքեան խաղան, որովհետև այդպիսով նա ազատում է հիւրերին զբաղեցնելու ծանր պարտականութիւնից։ Այդ դէպքում վա՛յն է եկել այն մարդուն տարել, ով որ թուղթ չի խաղում, որովհետև թղթախաղը շատ երկարում է և թուղթ չ'խաղացողը ստիպուած է լինում կամ մենակ թափառել սենեակից սենեակ, կամ այս ու այն թղթախաղի սեղանին մօտենալ ու նայել և կամ մի անկիւնում կուճ գալ, յօրանջել ու ննջել։

Գիշերուայ 11—12 ժամին բացւում է նախընթրիքի սեղանը գինիներով, կօնեակով և օղիով։ Նախապէս գաւաթիկներով մատուցւում է փունջ, որ այստեղ պատրաստւում է տաք ջրից, շաքարից, կիտրոնից և ռոմից։ Տանուտէրն առաջ ընկած, շրջեցնել է տալիս մատուցարանով փունջը թղթախաղի սեղանների մօտ, ամենքի առաջ մի մի բաժակ դնելով և խնդրելով ու ստիպելով, որ անուշ անեն, և այդ գործողութիւնը մի քանի անգամ կրկնելով, հրաւիրում է հիւրերին վերկենալ և նախընթրիք անել։ Հիւրերը սովորաբար չեն թողնում, որ փունջը սառի, որովհետև փունջի միայն տաքն է յարգի. Նոքա հրաւիրում են տօնատիրոջը, շնորհաւորում են նորա մեծ օրը և անդադար կրկնելով սովորական բանաձևը, խմում են։ Փունջի թիւը և քանակը սահմանափակուած չէ, մատուցւում է այնքան, որքան ցանկացող կայ։ Շատ անգամ այնքան փունջ են խմում, որ սեղանի գլխին այլևս ոչ գինի և ոչ օղի են կարողանում խմել։ Առաջ տղամարդիկն են նախընթրիք անում, յետոյ կանայք ու աղջիկները։ Կուշտ ուտելուց ու խմելուց յետոյ և բերանները խալաբիայով ու մեզէով քաղցրացնելուց յետոյ, նորից բոլորեքեան շարւում են սեղանների չորս կողմը և շարունակում են ընդհատած թղթախաղը մինչև ընթրիքը, որ լինում է գիշերուայ 2—3 ժամին, որովհետև տօն-շնորհաւորն որքան որ երկար տևի, այնքան աւելի պատիւ է տօնատիրոջ համար։

Ընթրիքի սեղանը, որ, ինչպէս ասացինք, շատ ուշ է պատրաստւում, համարեա թէ բանի տեղ չի անցնում, որով-

հետև, նախ, այդպէս նախընթրիքի ժամանակ շատերը բոլորովին կշտացած են լինում, երկրորդ, թղթախաղ ց գլուխները տաքացած լինելով, ոչ ժամանակ և ոչ ախորժակ են ունենում թան ուտելու, և, վերջապէս, ժամանակն ուշ լինելու պատճառով, բոլորի քունը տանում է, և ամենքն աշխատում են շուտով տուն վերադառնալ։ Ընթրիքին սովորաբար մատուցւում է տապակած կամ խաշած հնդկահաւ ու բադ և կամ հնդկահաւ ու բադ խառն, խաշած ձուկ, մրգեղէն, պաղպաղակ կամ կրեմ կամ պլոմբիր։

Ընթրիքից յետոյ անմիջապէս ամենքն էլ աշխատում են փութով մնաս բարև ասել ու մեկնել, ուստի և ամենքն էլ իրար գլխով են կպչում, իրար խառնւում, այնպէս որ յաճախ մոռանում են մօտ ծանօթներին անգամ մնաս բարև ասելու։ Սակայն մի բան երբէք չեն մոռանում անել—այդ տօնատիրոջը և նորա ընտանիքը փոխադարձաբար իւրեանց տներն հրաւիրելն է, հրաւէրք, որի խօսքերը նոյնպէս մի տեսակ ֆորմուլայի ձև են ստացել։ Սովորաբար ասում են. «Մեզի ալ, ջանըս, հըրամեցէք»։

Լինում են երբեմն և շատ հանդիսաւոր—«դառաւթլու» տօն-շնորհաւոր երաժշտութեամբ, վարձուած խոհարարներով ու սպասաւորներով, կամ, ինչպէս, ինքեանք ասում են, «Մուզիկով, պովըրներով ու լաքէյներով տօշնաւոր». պատահում են և «շէնութիւն» անող ընկերութիւններ, բայց տօն-շնորհաւորը դորանով իւր ընդհանուր բնաւորութիւնն երբէք չի փոխում։ Առաջին դէպքում մեր նկարագրածի վերայ աւելանում են միայն պարերը, երկրորդ դէպքում «շէնութիւն» են անում, շատ օղի կոնծելով, պարելով ու խառնակ կերպով հարայ-հրոց բարձրացնելով։



## ՍՆՈՏԻԱՊԱՇՏՈՒԹԻՒՆՆԵՐ, ՀԱՒԱՏԱԼԻՔՆԵՐ ԵՒ ՆԱԽԱ-ՊԱՇԱՐՄՈՒՆՔՆԵՐ

Նախիջևանցիք չ'նայելով, որ դարեր են անցել այն օրից, երբ հեռացել են իւրեանց մայր հայրենիքից, բաժանուել, կտրուել են իւրեանց հայրենակիցներից և ստիպուած են եղել ապրել առանձնացած, օտարների մէջ և միշտ-հանապազ ենթարկուել են օտարների սովորութիւններին, վարք ու բարքին, այնուամենայնիւ դեռ պահպանել են իւրեանց մէջ շատ ծէսեր, սնոտիապաշտութիւններ, հաւատալիքներ ու նախապաշարմունքներ, որոնք յար և նման են բուն հայրենիքում ապրող հայերի մէջ պահպանուածներին։ Նոքա մինչև անգամ պահպանել են նոյն աշխարհահայեցողութիւնը կեանքի զանազան երևոյթների մասին և շարունակել են իւրեանց առօրեայ կեանքում ևս ղեկավարուել նոյն սկզբունքներով, նոյն գաղափարներով, նոյն նպատակներով, որոնք ընդհանուր են բովանդակ հայութեան։

Երկուշաբթի օրը մի նոր բան չ'պէտք է բռնել, ճանապարհի չ'պէտք է դուրս գալ, որովհետև ծանր օր է, բռնած գործդ չի յաջողիլ, ճանապարհորդութիւնդ վտանգաւոր կ'լինի։

Երկուշաբթին բարի օր է, բայց այդ օրը լուացք անելը լաւ չէ, որովհետև այդ օրուայ լուացած շապիկդ «սլտի մաշուցքով» կաղտոտես։

Չորեքշաբթին բարի չէ, որովհետև այդ օրը ամեն կախարդութիւն յաջողում է։

Հինգշաբթին բարի օր է. այդ օրուայ բռնած բոլոր գործերը յաջողութեամբ կ'վերջանան։

Ուրբաթը «գէշ է», որովհետև Քրիստոսի չարչարանքի օրն է։

Շաբաթ օրը նոր գործ պէտք չէ սկսել, որովհետև երկար կ'քաշի. այդ օրը երեկոյեան էլ մածուն չ'պէտք է դնել, որովհետև կ'շաղուի։

Նահանջ տարին ամուսնանալը լաւ չէ, որովհետեւ ամուսնութիւնը բաղդաւոր չի լինիլ, ամուսինները սիրով չեն ապրիլ միմեանց հետ, ամուսիններից մէկը կ'մեռնի։

Մարտ ամսին, կամ, ինչպէս գիւղացիք ասում են, «Քիւչուկ» ամսին բան չի կարելի կտրել, ոչխար եւ առհասարակ անասուն չի կարելի մորթել, ուստի եւ պէտք է, իբրեւ նշան, այդ ամսի ընթացքում շարունակ դռների շէմքի մի անկիւնում մի «չաթալ»—պատառաքաղ տնկել, որ մտնող-դուրս եկողները տեսնեն ու զգոյշ լինին։

«Մրջինքին»—Միջինքին բան անել չի կարելի, որովհետեւ «մուկը կ'կրծէ»—Մկան տօն է։

Ս. Գէորգի երկուշաբթին (Ապ. 23) «Քաշուցք» է, այսինքն ով որ այդ օրը «բան բանէ», ձեռքն ու ոտքը կ'քաշուեն։

Հինունքի ամեն հինգշաբթի բան չի կարելի բանել, որովհետեւ «կայծակը կ'զարնէ»—կայծակի տօն է։

Հինունքի ամեն երեկոյ, արեւը մայր մտնելուց յետոյ, բան բանել չի կարելի, որովհետեւ հաւկուր կ'լինես։

Կիւրակի օրերը թէ ալիւր մաղես, սիրական՝ որդուդ կը թաղես։

Որ կինն որ երեքշաբթի օրը շապիկը փոխէ, «էրիկը», —մարդը կ'մեռնի։

Անձրեւոտ, ցեխ ձմեռը վնասակար է դաշտերին ու ճանապարհներին. պէտք է տան անդրանկին զարնել տալ «սոփաներին»—հնոցներին, որ ցուրտ լինի, ձիւն գայ, որ արտերը, դաշտերը ծածկուեն ու ճանապարհները ամրանան։

«Ծառկոտրուկից» — Ծաղկազարդից պահուած օրհնած ուռը պէտք է խաչաձեւ միմեանց վերայ դնելով համբուրել, ձգել կրակը, այրել, որ քամին դադարի, փոթորիկն ու մրրիկը հանդստանան։

«Սատանայի հարսնքի»—օդապտոյտի մէջ պէտք է մի զմելին ձգել, որ չար քամին բարձրացնող սատանայի մատը կտրուի ու օդապտոյտը հանդստանայ։

Մեռեալ յուղարկաւորելու ժամանակ ով չ'վեր կենայ տեղից, չ'կանգնի, «մեռելկոխ» կ'լինի, ուստի եւ ննջեցեալ տա-

*նելու ժամանակ պէտք է քնածներին զարթեցնել, մինչև անգամ երեխաների օրօրոցներն էլ պէտք է՛ վերցնել, բարձր տեղ դնել։*

*Կանանց երկունքի ժամանակ պէտք է սենեակում գըտնուած բոլոր փակուած տեղերն ու առարկաները՝ դռները, պահարանները, արկղները, գզրոցները բանալ, որ երեխայ բերելը հեշտ լինի, երկունքի ցաւը թեթև լինի։*

*Տղոցկանի վերայ պէտք է «ջէնկի թուր»—պատերազմի սուր դնել, որ թեթև բերէ, կամ նոյն նպատակով նոյն սրի վերայ ջուր ածել ու ջուրը խմեցնել տղոցկանին։*

*«Ալբաստի» կամ «ծովի մար» տեսնող մարդկանց թուրը կամ գօտին պէտք է դնել տղոցկանի վերայ, որ երեխան շուտ ու թեթև աշխարհ գայ։*

*«Բուհուն»—բուն որ տան վերայ որ նստի ու բուայ, նշան է, թէ այն տանից մարդ պիտի մեռնի։*

*Եթէ բուի սիրտն ու աջ ոտքն առնես, քնած մարդու վերայ դնես, իսկոյն նա կ՚սկսի իւր արած բաները պատմել։*

*Եթէ բուի սիրտն ու ոտքը թևերիդ տակը պահես, շները չեն հաջիլ վերադ։*

*Նոր լուսին տեսնողը պէտք է մազերի ծայրից մկրատով մի փոքր կտրէ, որ մազը աճի։*

*Կարճ մազ ունեցողի մազը կաճի, եթէ նա բաղնիքի ժամանակ երկար մազ ունեցողի մազից թափուող ջրից երեք ափ առնէ ու խմէ։*

*Եթէ երեք շաբաթ օր իրար վերայ, արևը դեռ չ՚ծագած, մազերիդ ծայրից մի փոքր կտրես, մազերդ շատ կ՚երկարեն։*

*«Մազերկան» կեր, որ մազդ երկարի։*

*Կանայք եթէ չեն ուզում, որ նոցա մազերը թափեն, տըղամարդու գլխարկ չպէտք է ծածկեն։*

*Խուզած մազդ պէտք է կրակի մէջ ձգես, թէ չէ գլխացաւ կունենաս։*

*Մազը աղբի հետ դուրս չ՚պէտք է ձգել, որովհետև աղբի մէջ քուջուջ անող թռչունի ոտքին կպչող է փաթաթուել, թռչունն էլ կանիծէ մազի տիրոջը ու նորա գլխի ցաւը անպակաս կ՚լինի։*

Մազ կուլ տուողի փորի մէջ մազը օձ կ՚դառնայ։

Եթէ հիւանդ կնոջ մազերը գարնան ոկզբին արգաւանդ հողի մէջ թաղես, այդ մազերը արեգակի տաքութիւնից օձ կ՚դառնան։

Գեղին մազը վատ բնութեան նշան է։

Բարեկամիդ տանը մազերդ խուզիր, չարակամիդ տանը եղունգդ կտրիր։

Եղունգ կրծողը բարակացաւ կ՚ստանայ։

Եղնգի վերայ կոխող-անցնող աղջկայ բաղդը եօթ տարի կ՚փակուի։

Կտրած եղունգը պէտք է պատի տակը թաղել։

Եղնգի վերայ «Նորեկ» ունենալը նոր հագուստ հագնելու նշան է։

Եղունգ այրելը լաւ չէ, որովհետև եղունգ այրող մարդու եղունգները այն աշխարհում կ՚պահանջեն, ու թէ որ չ՚գտնուի, եղնգի տիրոջը կայրեն։

Որ մարդու եղունգն որ մսին մօտիկ կպած լինի, նորա ազգականների սէրը նորա վերայ շատ կ՚լինի։

Դրան շէմքի վերայ կանգնած միմեանց ձեռք տալը-բարեւելը լաւ չէ, որովհետև բարեկամները միմեանց կ՚թշնամանան, կ՚խռովեն միմեանցից։

Աչքի պաղելը ճանապարհ է ցոյց տալիս, «հեռաւոր» գալու նշան է։

Կերակրի սեղանի վերայից բան ընկնելը, կտրուելը, թափուելը հիւր գալու նշան է։

Առաջին անգամ երբ ամպի որոտումն լսես, պէտք է մի քար առնես ձեռքդ ու երեք անգամ մէջքիդ զարնես, որ մէջքդ ամրանայ։

Նոր լուսին տեսնողը եթէ մի երկաթի կտոր դնէ ատամների տակ, ատամները կամրանան, և այլն և այլն։

Տղոցկանին, երեխաներին և առհասարակ ամեն մի լաւ բան, մինչև իսկ խմորեղէնը պէտք է պահպանել չար աչքից․ թէ չէ կարող են «նազար դնել» — աչքով տալ։ Չար աչքից, կամ ինչպէս ասում են, «չար նազարից» բռնուածներին կա-

րելի է զանազան աղօթքներով ազատել, բժշկել, աչքի զօրութիւնը նոցա վերայից հանել։

Տղոցկանին չար աչքից բժշկելու համար պէտք է այսպէս աղօթել.

Տուն ունիմ երկաթէ,
Պատերը ամենը կպղակէ,
Սուրբ կոյսը մէջը քուն է,
Սուրբ Գրիգորը զարթուն է։
Երեք-երեք պոչ ձիաւոր,
Երեքն ալ կանանչ կ'սպաւոր'—
Մէկը Յիսուս, մէկը Քրիստոս,
մէկը մեր Տէրը՝
Ըլլանք բարձր սարերով,
Իջանք խոր-խոր ձորերով,
Հարիւր հազար հրեշտակով՝
Առջի Տէր, ո՞ւր կերթաս.

Երթամ դուռը հըւըն դին,
Ելլիմ էրդիկը տղոցկանին,
Բանիք ձգիմ վիրապաշտին.
Սուրբ ունիմ, սուրբ գօտի ունիմ,
Սուրբ գօտի կապած ունիմ։
Պօղոս, Պետրոս, Անդրէանոս,
Գերեզմանին Տէրն Յիսուս։
Հայր Յովսէփ, կոյս Մարիամ,
Քուն եղաւ, երազ տեսաւ,
Բերդէ քաղաք ընծայեցաւ,
Ի խանձարուրս պատեցաւ։

Մյուս աչքով տուածներին պէտք է հետևեալ կերպով աղօթել։

Աղօթիմ ութը մատով,
Աստուածամօր քաղցր կաթով,
Կոզմային, Դամէանոսին,
Անարծաթ բժշկին բժշկարանով՝
Սև օձը կթեցին,
Առանց մակարդ մակարդեցին.
Մարը կերաւ ճաթեցաւ,

Դուստրը կերաւ, պատռեցաւ։
Ո՜վ Մարիամ, ինչ կանիս,
Հիւանդ իմ ու ճար չունիմ.
Առ սևակոթ դանակը,
Մտիր Ադամայ դրախտը,
Կտրէ իմ սիրելի (այս ինչ անուն)
Չար աչքը, չար փուշը, չոր խոստուկը։

Չար աչքից ախտացածներին կարելի է ազատել հետևեալ աղօթքով.

Աղօթիմ. կաթն է կուսին,
Գաւազանն է Մովսիսին,
Քնարը Դաւթին,
Մատն է Սողոմոնին,
Ձեռն է Յիսուսի Քրիստոսին,

Երօնին, Ծերօնին —
Առէ՛ք երկու բերան դանակը,
Կտրէ՛ք չար աչքը, չար փուշը,
Չար խոստուկը, չար նազարը
(Այս ինչ անուն) ծառային։

Նախիջևանցիք, բացի տղոցկանի հիւանդութիւններից, շատ ուրիշ ցաւեր էլ բուժում են զանազան աղօթքներով,

որովհետև կարծում են, թէ հիւանդութիւնների մեծ մասն առաջ է գալիս պէս-պէս չար պատահմունքներից, չար աչքերից, վախից: Գլխացաւը, ատամնացաւը, մարմնի զանազան մասերում պատահած ծակոցքները - «խոստուկը», փայծաղի — «գալախի» հիւանդութիւնները, մէջքացաւը, պորտացաւը — «կռնան», գաղտուկ ջերմը, գորտնուկը, «դեմբեկին» — մկնատամը, մինչև իսկ կարճի, օձի և ազգի-ազգի թունաւոր միջատների խայթուածքը բոլորը, բոլորը ունեն իւրեանց աղօթքները: Եւ այդ աղօթքները հասարակ բաներ չեն, այլ «սրբունակ» են, այսինքն սուրբ աղօթքների զօրութիւն ունին:

Մկնատամը — «դեմբեկին» բժշկելու համար, օրինակի համար, ասում են հետևեալ «աղօթքանման ասացուածքը.

Մրջունը սաբան կանէր.
Քրիստոս եկաւ, վրան նայեցաւ, զարմացաւ.
Թուփ, թուփ, թքեց վրան, չորացաւ.

«Կռնան» կամ պորտացաւն աղօթում են այսպէս.

| | |
|---|---|
| Քրիստոս մեր դուռը դէմ առաւ, | Այն օրորմելի էրկանը |
| Քարը բարձ արաւ, | Օղորմելի կնկանը |
| Հողը դօշակ արաւ. | Ա՛ռ Թոնդերէն ծաղեկը, |
| Թթու մածունն, գիրի հաց, | Կտրէ՛ (այս ինչ անունն մարդու): |
| Խառ դգալ, խառ պնակ մէջը բրդած: | Չար աչքը, չար փուշը, չար կռնան [1]: |

Բացի աղօթքներից, նախիջևանցի պառաւները զանազան հիւանդութիւններ, տկարութիւններ ու ցաւեր բժշկել ու բժըշկում են, կամ ինչպէս ինքեանք ասում են, «ճար են անում» զանազան «ճարերով», որոնց բոլորի հիմքը և կազմում են պէս-պէս սնոտիապաշտութիւններ, նախապաշարմունքներ և հաւատալիքներ:

Չաւկուր եղածների աչքերը, օրինակի համար, չղջիկի արիւն են կաթեցնում, երևի, հիմնուելով այն հանգամանքի վերայ, որ չղջիկները միայն գիշերն են լոյս տեսնում:

[1]) Այս աղօթքների օրինակներն իւր ծերունի մօր բերանից առնելով, հաղորդել է մեզ Տէր Գէորգ Քէյլէշահինեանը:

Մեռելկոխ եղածներին տանում են գերեզմանոց, կանգնեցնում են այն մեռեալի գերեզմանի վերայ, որից կարծում են, թէ մեռելկոխ է եղել հիւանդը, և ոտքերին ու ձեռքերին ջուր են ածում, այնպէս յարմարացնելով կամ կանգնեցնելով, որ հիւանդի ոտքերը մեռեալի ոտքերի, ձեռքերն էլ ձեռքերի տեղը գան։

Մեռելկոխ լինում են կամ մեռեալից վախենալով, կամ մեռեալ յուղարկաւորելու ժամանակ չ՚վերկենալով, տեղից չ՚կանգնելով և կամ թաղման ժամանակ շատ լաց լինելուց ու տանջուելուց։ Մեռելկոխ լինելու առաջն առնելու համար, երբ որ տեսնում են, որ մէկը շատ է լաց լինում, չարչարուում ու տանջուում, առնում են գերեզմանի հողից մի բուռը հող ու լցնում են սուգ անողի կռնակին օձիքի տակից։ Մեռելկոխներին բժշկում են և «Քցելանքով»։ «Քցելանքը» մի սնոտիապաշտական դարման կամ ճար է, որ պատրաստում են և գործ են դնում երեք տեսակ։ Կամ հիւանդի ոտքն ու ձեռքը լուանում են, յետոյ լուացքաջրի մէջ ձգում են կոպեկ ու շաքար, հիւանդին թքել են տալիս ջրի մէջը, մազերը կտրում, ձգում են ջուրը, ջրամանի վերայ փռում են հիւանդի մի նշանից (շորից), գիշերը դնում են լուսնի տակ և առաւօտեան այդ բոլորը տանում, թափում են «խաչ-ճամբայի» վերայ. կամ հիւանդի ոտքն ու ձեռքը լուանում են և թափում են խաչ ճանապարհի վերայ, յետոյ շինում են մի պաճուճապատանք—«խումաջիկ», առնում են հիւանդի շորից մի անպէտք կտոր ու մէջը դնում են կոպեկ, սոխ, եօթ տեսակ միրգ, տալիս են հիւանդին շաքար, որ նա երեք անգամ խածնէ ու թքէ և ապա գիշերը այդ բոլորը դնելով հիւանդի անկողնի տակ, երկրորդ գիշերը տանում են, ձգում են խաչ-ճանապարհի վերայ. կամ առնում են եօթ տեսակ անուշեղէն (միրգ), մի սոխ, մի կտոր շաքար, մի քանի փոքրիկ «խումաջիկներ» և այս բոլորը կապելով փոքրիկ կապոցիկների մէջ, մի մաղի մէջ են լցնում և դնում հիւանդի բարձի տակ, որ մնայ ամբողջ գիշերը։ Միւս օրն առնում են մաղը և անխօս տանում, թափում են նորա պարունակութիւնը խաչ-ճանապարհի վերայ ու անխօս վերադառնում տուն։ Հիւանդի այն հարցին, թէ «ինչ

բերիր», պատասխանում են. «Թեթևութիւն ու առողջութիւն»։

«Քցելանքը», որ, ինչպէս երևում է, առաջ է եկել ձգել-քցել բառից, որովհետև նա ձգուում կամ թափուում է ճանապարհի վերայ, գործ է ածուում և «չանդէպքի» դէմ։ «Չանդէպք» ասելով, Նախիջևանցիք հասկանում են ամեն մի հիւանդութիւն, որ առաջ եկած են համարում չար պատահմունքից-հանդիպելուց, սաստիկ վախենալուց, սաստիկ ամաչելուց — «առ առնելուց», և այլն և այլն։

Որպէսզի իմանան, թէ «չանդէպքը» ընչից է առաջ եկել և կարողանան թեթևացնել ու բժշկել նորան, Նախիջևանցիք սովորաբար «թեթև են թափում»։ Նոքա նախապէս հալոց ու փորձ անելով և իմանալով, թէ հիւանդի ո՞ր տեղն է ցաւում, մի ջրով լիքն աման են բռնում ցաւած տեղի վերայ ու հալում, թափում են նորա մէջ կամ արճիճ կամ մեղրամոմ։ Այնուհետև նոքա քննում են ջուրը և արճճի կամ մեղրամոմի ջրի մէջ ստացած զանազան ձևերից գուշակում են, թէ հանդէպը առաջ է եկել, պատահել է այս ինչ առարկայից, կամ այս ինչ դէպքից։ Թէ ընչից է առաջ եկել «չանդէպքը» —,իմանում են և դիւթիւններ կամ հմայութիւններ անելով — «ֆալ բանալով»։ Հմայում են սովորաբար կամ խաղաթղթերով, կամ տէրողորմեայով և կամ, որ շատ ընդունուած է, բակլայ կամ 30 կամ 41։ Բակլաների մէջ խառնում են հացի կտոր, ձգելով, կամ, ինչպէս ասում են, «բակլայ բանալով»։ Բակլայ նետող դիւթերի — «ֆալչիների» բակլաների թիւը լինում է աղի կտոր և մի փայլուն քար կամ ապակու կտոր։ Բակլաները երկու ափով իրար լաւ խառնելուց յետոյ, դիւթերը փռում են նոցա գետնի կամ սեղանի վերայ և նոցա շարուածքից, միմեանցից հեռու կամ մօտ լինելուց զանազան գուշակութիւններ են անում։

Նախիջևանի հին մարդկանց և տիրապէս գիւղացւոց երևակայութիւնն էլ լցուած ու պաշարուած է զանազան գերբնական արարածներով ու հոգիներով՝ «խոնջոլողներով», «մեղմէնաղէկներով», «բողոջներով», «ժիվոտներով», «ծովի-մարերով», «Շռայլիմ-Թառայլիմներով», մանդլիներով» և ազգի-ազգի

«խորթլախներով», «ջիներով», սատանաներով ու դևերով։ Նախիջևանցւոց երևակայութեամբ այդ արարածները միշտ ներկայ են. միշտ խառնուում են մարդկանց գործերին, միշտ աշխատում են պէս-պէս փորձանքներ բերել մարդկանց գլխին, ուստի և պէտք է հանապազ զգոյշ լինել նոցանից, ընկած տեղը միշտ աղօթքներ ասելով ու չորս կողմը խաչակնքելով։

Խոնջոլողներն ապրում են տների չարդախներում—«թաւաններում», մէզմէն աղէկները—քանդուած տներում, ամայի բնակարաններում, բողոջները—տների մէջ գտնուած գոց տեղերում, մութ անկիւններում, պատերի ճեղքերում, ծովի-մարերը—ջրերում, մանդրները—լեռներում, անտառներում, խորթլախները—գերեզմանոցներում, իսկ միւսներն ամեն տեղ։

Խոնջոլողները սովորաբար երևում են Նոր-տարու գիշերը. նոքա հագած են լինում փսխաթէ պատռոտուն հալաւներ, որոնց ցնցոտիներից ու ծուէններից երկաթէ գունտեր են կախուած լինում. Նոքա, երբ յաջողում է նոցա մէկին բռնել, նստում են նորա վերայ և ճնշում իւրեանց ծանրութեան տակ։ Փիվոտներն անիւ են դառնում ու վազում մարդկանց յետևից։ Խոյթլախները մեռեալների ուրուականներն են, որոնք յաճախակի երևում են մարդկանց ու սարսափահար անում նոցա։ Ըռայխմ-թառայիմները նոյնպէս երևում են Նոր-տարու գիշերը, մտնելով տները հնոցների ծխնելոյզներից և դուրս գալով վառարանի դռնից. Նոքա երկար երկաթէ մագիլներ ունին, սպիտակահեր են և մօրուեղ։ Ծովի-մարերն երկարամազ կանանց նման են. Նոցա ոյժը նոցա մազերի մէջ է։ Եթէ նոցա մազերը կտրես, նոքա քեզ գերի կ'լինին և զանազան ծառայութիւններ կանեն։ Մեզմէնաղէկների կրունկները «թեռս» են—ընդհակառակն են. Նոքա գիշերները լուսաւորում են իւրեանց բնակարանները, «խաղ են կանչում»—երգում են, պարում են և ամբողջ գիշերը խաղ ու հարսանիքի մէջ են անցկացնում։ Եթէ նոցա յաջողում է մէկին բռնել, նոքա նորան էլ տանում են իւրեանց բնակարանները, նոքա էլ ստիպում են իւրեանց հետ պարել, և այնքան չարչարում ու տանջում են, որ բռնուածը համարեա՛ թէ ուշաթափուում ու նուաղում է։

*Այն ժամանակ նոքա դուրս են հանում նորան, տանում են մի անծանօթ տեղ և արձակում։ Մանդրները կամ մանդր-մարդիկը անճոռնի թզուկներ են, որոնք զանազան խոսղեր են խաղում մարդկանց գլխին։ Հաւանական է կարծել, որ նոքա գերմանական առասպելների ու հեքիաթների մէջ մեծ դեր խաղացող «գնոմների» պէս բաներ են, որոնք, ինչպէս յայտնի է, նոյնպէս ապրում են լեռներում։ Բողօջները կամ պատի – բողօջները նմանում են Ռուսաց «բուկա» կոչուած արարածին կամ հրէշին։ Նախիջևանցիք փոխաբերական մտքով «պատի— բողօջ» կոչում են այն մարդկանց, որոնք չեն սիրում մարդամէջ խառնուել։*

*Գոցա, այդ արարածներին տեսնողներ են եղել, նոցա փորձանքներին ենթարկուողներ են եղել։ Պատմում են, որ մէկ անգամ «Չերքեզին Յարութինը գնացել է եալին [1]) և բռնել է «Ալբաստի», այսինքն ծովի-մար, ու ուզեցել է մազերը կտրել։ «Աման, ասել է Ալբաստին, մի՛ կտրել մազերս, կ'խոստանամ մինչև օխտը պորտիդ հոն չերևնալ, վրտեղ քու նշանդ ըլլայ»։ Յարութիւնը Ալաբաստիին էրդում անել տուել է ու անպէս ապուլ տուել է, չէնէ էկէր մազերը կտրէր նը, Ալբաստին նարա դուռը եսէր պլտ ըլլար»։*

*Գիւղացի պառաւներից մէկը պատմում է. «Իմիս մեծաս դայեկ էր. նա շատ դաբրա մեզի կ'պատմէր իրեն կլոխը եկածը։ Մէկ գիշեր, կասէր նա, ըռհաթ [2]) պառկիլ իմ, քուն իմ։ Անկաճիս տուսէն մէկ ձան կուգայ, քի «Գայեակ մա, դայեակ մա, շուտ ել, քեզի տղոցկանի պլտ տանինք»։ Ես այիմ-բէյիմ [3]) կելլիմ տեղէս դուս, կնայիմ, որ իմիս ճանչցած մաշդիկս ինձի պլտ տանին իմիս գիտցած մաշդոց մէկին տունը։ Կելլիմ այդ մաշդոց կեշտամ։ Քիչ կեշտամ, շատ կեշտամ, կ'հասնինք մէքամ տունի պէս բանի։ Նես կ'մուտնում ու ինչ տեսնում, կ'նայիմ, որ ադտեղ էղող մաշդոց կըրունկները ալայինը թեռս է, ու ես նոր կիմանամ ինչ օյինի էկածս—*

---

[1]) Եալին=եզերք, ափ [2]) Ըռահաթ=հանգիստ։ [3]) Այիմ—բէյիմ=մէկէն, իրեն հաշիւ չ'տուած։

*մեծիմէն աղէկներուն մէջը էղած։ Էյ ինչ ալ լանը։ Դաքա ինձի պատիւ կուտան, ես ալ տղոցկանի տղան կառնում ու վերջը կերակուրի կ'նստինք։ Տրապեզին [1]) վրան չէշիտ-չէշիտ [2]) կերակուրներ կ'դնին ու վիրա [3]) զոռ կանին ինձի ուտելու։ Ես ալ աս կառնում, կ'նայիմ թեզաքի [4]) կտոր, ան կառնում—կէնէ ադպէս։ Սուտ ուտողս կ'լամ, համա ինչ քաշածս ալ ինքս գիտիմ, մէյալ վէրի Տէրս գիտէ։ Կերակուրէն ետքը դաքա ինձի տուն կ'ճամբին ու իմիս աշխատանքս կուտան, փէշս մէկ թօփ սոխի կճեպ ուլեյով, ու ինձի մինչանքը մեր տունին մօտիկները ճամբելէն ետքը, իրենք կ'դառնան։ Դաքա հեռացածներովը, ես ալ ալղը [5]) սոխի կպեճները կ'վօթիմ ու երեսս խաչ հանելէն կ'վազիմ դէպի տուն։ Սաքախտան [6]) կելլիմ տեղէս, կնայիմ, որ փեշտմալիս կապի արալըխը [7]) էրկու հատ օսկի կեցիլ է։ Նոր խելքի կիննիմ, որ նացա տուածը ալայնալ օսկի էղիլ է, համա իմ աչքիս սոխի կճեպ ցուցուցիլ ին։ Կը վազիմ, թաբլած տեղս կ'նայիմ, ինչ կճեպ, ինչ բարի կճեպ։ Ան սահաթը նաքա էկիլ են էտևէս ու առիլ ին»։ Փորքշէյեան Ֆերօնը պատմում է իրեն պատահած հետևեալ անցքը. «Իրիկուն էր. աշտխ [8]) մութը գետինը կոխել էր. հաւան խաթի չամուռ [9]) էր։ Կուշովկայէն [10]) դուս էլլայ, պիտի էշտամ մէկ ուրիշ խութուռ։ Թալայ [11]) հեռանալէս էտև, մէմալ կնայիմ իմիս բարեկամներէս մէկը՝ Փեօթր Վասիլեվիչը էկիլ է, նստիլ է դռոկի էտևը ու կասէ ինձի. «Հա՛յտա, բարեկամ, էշտանք իմիս տունս»։ Ես արմնցած կ'հացունում դարա. Քուկուդ տունդ հօս է ինչ, զերէ ես գիտէի նարա վտեխի մաշդ էղածը։ Հապա ինչ է, կասէ դա, նոր գնիլ եմ ու, չիտիս ինչ»։ Է՜յ էշտանքնը էշտանք կասիմ ու կ'քշիմ ձիերուն. ամա իտա մաշդը նստելէն էտև ձիերը տառհալաթ [12]) կ'քաշին տռոկը։*

---

[1]) Տրապեզ=սեղան։ [2]) Չէշիտ-չէշիտ=զանազան։ [3]) Վիրա=միշտ, անդադար։ [4]) Թեզաք=քակոր։ [5]) Օլղը կամ ալղը=այն։ [6]) Սաքախտան=առաւօտեան։ [7]) Արալըխ=ճեղք։ [8]) Աշտխ=արդէն։ [9]) Խաթի չամուռ=սաստիկ ցեխ։ [10]) Կուշովկա=գիւղի անուն (Кущовка)։ [11]) Թալայ=շատ։ [12]) Տառհալաթ=հազիւ հազ։

Գնացինք Հասանք մէքամ Պալապան [1]) տունի. կնայիմ մէջնալ իլինք չէշիտ-չէշիտ մաշդիկ, որը կեըէ, որը կ'մուտնու։ Չիերս առին—տարին, ինձի ալ առին—մտցուցին նես, զոռ-խըշիմով [2]) հալաւս հանելու տուին, մէքամ կինամաշդու էրկան շապիկ հագուցին ու պաշլայեցին [3]) չալելու [4]) ու խաղցնելու. ճոմպոզ տալու [5]) տուին, չաթալխայայ կայնեցուցին [6]) ու աղպէս չէշիտ-չէշիտ օյիններ բերին կլօխս ու իրանք ալ խընդալէն ջարդուեցան։ Անկից էտև հանեցին դուս, համա աշտխ անպէս յոգնիլ իմ, որ ճորով-մորով կ'քաշիմ։ Աղպէս հանեցին մէքամ եառւի [7]) վրայ ու յոտէն կտեցին-ձգեցին մէքամ փոսի մէջ. շինըխ [8]) ասքով կեշտամ, անքով կեշտամ էլլելու հնարը չիքայ, ու. աղպէս սախ գիշերը կ'չարչկուիմ։

Սաբախտան ըլլալէն էտև, նոր խելքս կլոխս կ'ժողվիմ, կ'նայիմ, որ մէքամ քուգնիի [9]) մէջ իմ։ Աղ քուգնիին տէրը էկաւ, բացից դուռը ու ինձի բանին որպխութինը ասաց։ Էղիլ է ալղը եառւին թեփէն [10]) էլլածս, քուգնիին թեփէն էղիլ է, վտեխէն եա ընկիլ եմ մէջը։ Քուգնիէն ալ քիչ մը հեռու կեշտամ, ձիեյուս կ'գտնում՝ քըտինք-ջուր կտրած։ Հայվաննեըուն անխտա՛լ վազցուցիլ ին, որ նեֆիսները կոխելու չին լաւուշափխան կտրած կայնիլ ին։ Աս հալեքէթներէն [11]) էտև կիմանամ կլոխս ինչ էկածը մեծմէնաղէկներուն ձեռքէն, ու կելլիմ տուն կուգամ»։

Պատմում են, որ առայիմ-թառայիմը նոր տարու գիշերը յայտնուել է Հաջի Ստեփանենց տանը. նա մտել է ծխնալոյցից և դուրս է եկել վառարանի բերանից։ Այդ հանգամանքը, որի մանրամասն պատմութիւնը իսկոյն տարածուել է քաղաքում, այնպիսի սարսափ է ձգել բոլորի վերայ, որ այնուհետև ամենքը, նամանաւանդ մանուկները ահով-դողով են անցնե-

[1]) Պալապան=մեծ։ [2]) Զոռ-խըշիմով=ստիպելով։ [3]) Պաշլայել=սկսել։ [4]) Չալել=նուագել։ [5]) Ճոմպոզ տալ=գլխակոնծի տալ։ [6]) Չաթալխայայ կայնեցունել=գլխի վերայ կանգնեցնել։ [7]) Եառ=բլուր։ [8]) Շինըխ=այժմ։ [9]) Քուգնի=դարբնոց։ [10]) Թեփէ=գագաթ։ [11]) Հալեքէթ=աղմուկ։

լուս եղել Հաջի-Ստեփանենց տան մօտով։ Մինչև անգամ նոյն իսկ այդ տան մէջ ապրողներից են սկսել վախենալ երեխաները և սովորութիւն են արել Առամ-Թառայիմ յորջորջում տալու նոցա։ Առամ-Թառայիմը եղել է ահարկու դէմքով, երկար ու սպիտակ մազերով ու մորուքով և երկաթէ երկար եղունգներով։

Պատմում են նոյնպէս, որ մէկ անգամ Պայլին Մելքոնը գնացել է Թոփտիից Չալթըր իւր ծերունի ազգականների տունը «ձեռք պագնելու» ու նոցա օրհնութիւնը ստանալու, որովհետև նշանուած է եղել և պատրաստուում է եղել կարգուելու։ Վերադարձին, երբ նա հասել է երկու գիւղի մէջ գտնուած «զեօլ» կոչուած տեղը, նորա յետևից ընկել է ժիվոտը, «կոպչակի»—անուի ձև ընդունելով և շատ արագ գլորուելով։ Հասնելով նորան, նա նստել է նորա վերայ, ճնշել է իւր ծանրութեան տակ և ամբողջ գիշերը չարչարել ու մահ է ածել նորան, այնպէս որ խեղճը հազիւ հազ կարողացել է միւս առաւօտ լեղապատառ եղած տուն վերադառնալ։



## ՆՈՐ-ՆԱԽԻՋԵՒԱՆՑԻՈՑ ԱՐԴԻ ԿԱՑՈՒԹԻՒՆԸ ԵՒ ԱՌՏՆԻՆ ԿԵԱՆՔԸ

Մենք մեր պատմական տեսութեան հինգերորդ գլխում մէջ բերած աղիւսակից տեսանք, որ բոլոր հայ գաղթական-ների թիւն եղել է 12,598 հոգի արական և իգական սեռի։ Այդ թուից 11,418 հոգին եղել են քաղաքացի, իսկ 1.180-ը գիւղացի։

Քաղաքացիների հետ միասին երկար ժամանակ բնակուել են քաղաքում և գիւղացիներից 15 տուն, կամենալով թողնել երկրագործութիւնը և քաղաքացի դառնալ։ Սակայն այդ նոցա չի յաջողել։ Ճիշդ է, նոքա մոռացել են երկրագործութիւնն ու գիւղական միւս պարապմունքները, ընտելացել են քաղաքի կեանքին, նիստ ու կացին և սկսել են քաղաքացիների պէս արհեստներով ու վաճառականութեամբ պարապել, բայց չեն կարողացել ձուլուել քաղաքացիների հետ և քաղաքացի կո-չուել, այլ քաղաքի մէջ կազմել են մի փոքրիկ համայնք, որ կրել է «Սաբանչի» անունը և պաշտօնական ցուցակների մէջ էլ միշտ մի ուրոյն տեղ է բռնել։ 1880 թուին այդ սաբան-չիները, որոնք իւրեանց քաղաքում ապրելու այդքան եր-կար ժամանակամիջոցի ընթացքում չեն կարողացած լինում կեանքի բաւարար բարեկեցութիւն ձեռք բերել, մտածում են թողնել քաղաքը, երթալ ապրել իւրեանց հողերի վերայ և մի առանձին գիւղ կազմել։ Ահա այդ նպատակով նոքա դատ են բաց անում միւս հայ գիւղացիների դէմ, որոնք օգտուելով հանգամանքից, տիրապետել էին նոցա հողերին, և տանելով գործը, իւրեանց ընտանիքներով քաշուում են քաղաքից Սամբէկ գետի ափը, ուրտեղ գտնուում են նոցա հողերը, և հիմնարկում են «Սամբէկ», կամ, ինչպէս պաշտօնապէս կոչուում է, հայե-րէն—«Կատարինաւան» և ռուսերէն «Եկատերենովկա» հայ-կական վեցերորդ գիւղը։

*Թէ Ռուսաստանի սահմանները մտած գաղթականների ընդհանուր թուից քանի՛ հոգի են հասել իւրեանց բնակութեան համար նշանակուած տեղերը,—մենք չենք կարող ասել, որովհետև մեզ յայտնի չէ, թէ որքան է եղել կաթոլիկ հայերի թիւը, որոնք նորից վերադարձել են Ղրիմ, և, որ գլխաւորն է, մեզ յայտնի չէ, թէ գաղթականներից որքան է ճանապարհին մեռել եւ փճացել։ Եւ որովհետև մենք չ'գիտենք մշտապէս բնակութիւն հաստատած գաղթականների սկզբնական թիւը, բնականապէս դժուարանում ենք որոշել, թէ որքան և ինչպէս է եղել և նոցա աճելութեան աստիճանն այս 120 տարուայ ընթացքում։ Մենք միայն կարող ենք ասել, այն էլ հիմք բռնելով միայն Ռուսաստանի սահմանները մտած գաղթականների վերոյիշեալ քանակութիւնը—12,598 հոգի, թէ գաղթականների թիւն անցեալ 1780 թուից մինչև ներկայ 1900 թուականը մօտաւորապէս կրկնապատկուել է ու եռապատկուել է։*

*Այդ պարզ կերպով կարելի է տեսնել ներկայումս Նոր-Նախիջևանում և նորա գիւղերում ապրող հայերի թիւը ցոյց տուող հետևեալ աղիւսակից, 'ի նկատի չառնելով քաղաքից դուրս եկած և ուրիշ տեղերում բնակութիւն հաստատած նախիջևանցիներին։*

## Ա Ղ Ի Ւ Ս Ա Կ

| | Բնակութեան տեղերի անունները. | Բնակիչների թիւը. | | | |
|---|---|---|---|---|---|
| | | Արական | իգական | տուն | ընդհանուր. |
| 1. | Մեծ Սալա | 1,592 | 1,563 | 470 | 3,155 |
| 2. | Սուլթան-Սալա | 611 | 552 | 165 | 1,163 |
| 3. | Թոփտի | 2,516 | 5,250 | 718 | 4.766 |
| 4. | Չալթիր | 3,095 | 2,809 | 720 | 5.904 |
| 5. | Նիսուեթայ | 551 | 567 | 187 | 1,118 |
| 6. | Կատարինաւան | | | 287 | 1,50 |
| 7. | Նոր Նախիջևան | | | | 12.370 |

*Քաղաքացւոց նոցա Ղրիմում թողած անշարժ կալուածների փոխարէն 1779 թուականի հրովարտակով տրուել է առաջ 12 հազար օրավար հող, յետոյ Յովսէփ արքեպիսկոպոսի միջնորդութեամբ շնորհուել է այլ ևս 8 հազար օրավար, ուրեմն ընդամենը—20 հազար օրավար, իսկ գիւղացւոց իւրաքանչիւրին 1781 թուին կատարուած ընդհանուր երկրաչափութեամբ չափուած, տրուած է 30 օրավար։*

*Նախիջևանցւոց շնորհուած հողերը պատկանում են Ռուսական մեծ հարթութեան դաշտային գօտուն* (степное пространство)*, որ իւր հողի յատկութեամբ և գետնի ընդհանուր բնաւորութեամբ բաժանուում է երկու առանձին մասի՝ Պոնտիականի և Կասպիականի։ Առաջինը, որ այդպէս է կոչուում, որովհետև բռնում է Սև ծովի հիւսիսային ափը, ծածկուած է $1/4$-ից մինչև $1/2$ գազ հաստութիւն ունեցող սևահողի շերտով, իսկ երկրորդը, որ այդպէս է կոչուում, որովհետև բռնում է Կասպից ծովի հիւսիսային ափը, բաղկացած է կաւահողից, որի վերայ գտնուած մեծաքանակ աւազը հողմերն այս ու այն կողմը տանելով, կամ ահագին աւազակոյտեր են գոյացնում, կամ սփռում, տարածում են ամեն տեղ։ Պոնտիականի սևահողի տակ Բեսսարաբիայում և Քերսոնի նահանգի հարաւային մասերում գտնուում են աւազաքար և կրաքար, Կատարինոսլաւի և Տաւրիկեան ու Քերսոնի նահանգների հիւսիսային մասերում – որձաքար և գնէյս, իսկ Դօնեցից մինչև Վօլգա գետը — կաւիճ։*

*Դաշտային գօտու հողի այդպիսի կազմութեան ու յատկութեան շնորհիւ է, որ բոլոր այդ երկիրը զրկուած է միայնգամայն անտառից, որովհետև մի կողմից ծառերը չեն կարողանում խոր արմատ բռնել, միւս կողմից էլ անձրևի ջրերը չեն կարողանում ծծուել գետնի մէջ։ Դեռ հիւսիսային մասում, որի տակ գտնուում է որձաքար, բսնում են, եթէ ոչ անտառներ, գոնէ, փոքրիկ պուրակներ ու ծմակներ, իսկ հարաւային մասում, որին պատկանում են և Նախիջևանի հողերը, այդ էլ չ'կայ, միայն տեղ-տեղ ձորակներում երևում են թփեր, մացառներ ու կարճաբուն ծառեր։ Չորս կողմը, որքան մարդու*

աչք բռնում է, տարածուում է լայն, ընդարձակ հարթութիւնը, որ գարնանը ու աշնանը ծածկուած է լինում կանաչով, իսկ ամառն այրուում, չորանում ու սեւանում է։

Հողերը տրուել են նախիջեւանցւոց, կամ խօսելով հրովարտակի խօսքերով, «շնորհուել են ամենից հասարակութեանց ամենաողորմածաբար յաւիտենականաբար 'ի յարդիւնս և 'ի շահաւէտութիւնս թարց ամենայնի պահանջողութեան զհարկս 'ի գանձարանս»։

Հրովարտակի այդ խօսքերը թէ գաղթականները և թէ ինքեանք հրովարտակը գործ դնող տեղական իշխանաւորները բնականապէս այնպէս են հասկացել, թէ հողերը տրուած են իբրեւ սեփականութիւն մշտնջենաւորապէս, որ, 'ի հարկէ, ուրիշ պէս չէր էլ կարող լինել, որովհետեւ, ինչպէս վերը նկատեցինք, հողերը տրուած էին գաղթականներին նոցա Ղրիմում թողած անշարժ կալուածների փոխարէն։ Եւ այդ այդպէս էլ եղել ու ընդունուել է մինչեւ 1887 թուականը, երբ նոր կարգադրութիւն է եղել, որի զօրութեամբ գիւղացիք հողերին լիազօր տէր կամ սեփականատէր դառնալու համար, պարտական էին գնել (выкупать) նոցա տէրութիւնից։

Որոշուել է 40 տարի ժամանակամիջոց, որի ընթացքում գիւղացիք պէտք է վճարեն իւրեանց ձեռքին գտնուած բոլոր հողերի գինը (выкупъ), հատուցանելով տարին ամեն մի օրավարին մի ռուբլի տասնեւօթ կոպէկ։

Քաղաքացիք պարապում են առեւտրով և գործարանական արդիւնաբերութեամբ։ Նոքա վաճառում են գլխաւորապէս հացահատիկներ՝ ցորեան, գարի, վարսակ, վշահատիկ—«հունդ», կորեակ—«պուգու», որոնց ամբարելու համար շինել են քաղաքում մեծամեծ շտեմարաններ, վաճառում են բուրդ, մորթի, ճարպ, որի համար պահում են բազմաթիւ «օթառներ»—ոչխարի հօտեր, վաճառում են, վերջապէս, կաշի, բամբակ և այլն։ Հայերը բանեցնում են ճարպի, կաշուի, օճառի, բուրդ լուանալու ու մաքրելու, բամբակի, դդմաճի, աղիւսի և կրի գործարաններ։ Հին արհեստները՝ պայտառութիւնը, դարբնութիւնը, զինագործութիւնը, թաղիքագործութիւնը, գդակագործու-

թիւնը, ատաղձագործութիւնը, դերձակութիւնը, ոսկերչութիւնը, արծաթպանութիւնը, կլայեկագործութիւնը. կղմինտրագործութիւնը, հայագործութիւնը, համետագործութիւնը և միւսները համարեա թէ վերացել կամ վերանալու վերայ են, այնպէս որ կարելի է համարձակապէս ասել, թէ Նախիջևանցւոց մէջ ներկայումս ոչ արհեստներ և ոչ արհեստաւորներ կան։

Գիւղացիք պարապում են գլխաւորապէս երկրագործութեամբ, կամ, ինչպէս ինքեանք ասում են, «ֆողագործութեամբ»։ Նոքա իւրեանց վարուցանքն անում են հողագործութեան երկդաշտեան եղանակով, այսինքն իւրեանց ձեռքին գտնուած հողերը նոքա բաժանում են երկու մասի՝— մէկը ցանում են, միւսը թողնում են հանգստանալու միւս տարուայ համար։ Նոքա ունին և այնպիսի հողեր, որ ամեն տարի ցանում են. դոքա գիւղերի մօտ գտնուած դաշտերն են, որոնք աւելի պարարտ են, որովհետև գիւղի անասունները միշտ ման են գալիս, արածում են նոցա վերայ և իւրեանց աղբով պարարտացնում են նոցա։

Գիւղացւոց հողերը համայնական են և 2—3 տարին մի անգամ բաժանւում են տների թէ արական և թէ իգական շնչերի վերայ. չ'բաժանուած մնում են միայն արօտատեղիները, ուր ամենքն էլ հաւասարապէս իրաւունք ունին քշել իւրեանց անասունները և արածեցնել, և եղեգնուտը—«ղայմիշը», որտեղից եղէգն են քաղում վառելիքի համար։ Հողաբաժանութեան ժամանակ տան իգական անդամները ստանում են արական անդամների ստացածների կէսը։

Հայ գիւղացիք այստեղ էլ, ինչպէս ամեն տեղ, ունին աշնանացան և գարնանացան—«Գիւզուան և Բահերուան»։ Աշնանը նոքա ցանում են կարմրահատ ցորեան «օզիմկա» և հաճար—«ալիշ», իսկ գարնանը ցանում են սպիտակահատ ցորեան—«հառնովկա», գարի, վարսակ և վշահատիկ։ Հայերը թէև արդէն թողել են հայկական ծանր գութանը, կամ, ինչպէս ասում են ինքեանք գիւղացիները, «Հայր Աբրահամի գութանը» և վարում են թեթև արօրով, բայց նոքա դեռ յա-

*մառում են ընդունելու եւրոպական կատարելագործուած բոլոր գործիքները, նոքա դեռ մինչև ցայսօր հնձում են նահապետական մանգաղներով ու գերանդիներով:*

*Գիւղացիների դաշտային պարապմունքներին շատ վնասում ու արգելք է լինում այս կողմերի կլիման իւր խստութեամբ ու փոփոխականութեամբ։ Ձմեռը նոյեմբերից մինչև յունուարի վերջը ցուրտն երբեմն այնքան սաստիկ է լինում, որ հասնում է 30 աստիճանի, իսկ ամառը Յուլիսին մինչև 40 աստիճան արևում և 30 աստիճան շուաքում տաքութիւն է անում։ Ձիւն շատ քիչ է գալիս, բայց յաճախակի բուք է անում և ձիւնախառն ցրտաշունչ քամի է փչում։ Փետրուարի վերջին և Մարտի սկզբին ձմեռը վերջանում է. ձիւնն արագ հալւում է և սևահողը փափկում ու հեղուկանման կակուղ ցեխ է դառնում, որ կտրում է ճանապարհների հաղորդակցութիւնը։ Բուսականութիւնը միայն երևում է Ապրիլի սկզբին, այնպէս որ համարեա թէ գարուն չի լինում. բայց բաւական է մի քանի տաք ու պայծառ օր, որ դաշտերը կենդանան, զարթնեն և ամեն տեղ ծածկուի դալար արօտով։ Որձաքարեայ ներքին շերտ ունեցող դաշտերը ծածկւում են կարճ, բայց հիւթաւէտ արօտով, իսկ կրաքարեայ և կաւճային շերտ ունեցողները սաժէնաչափ բարձր բոյսերով, ինչպէս եղէգն է, որ գործ է ածւում վառելիքի համար։ Մայիսի 15-ից սկսւում է երաշտ ամառն իւր տաք, անտանելի փոշի բարձրացնող քամիներով, իւր դաշտային մկներով —«չըլթչըլթներով». գետինը չորանում, ճաքճքւում է, մատղաշ բոյսերի արմատները բացւում են և խորշակի տաքութիւնից այրւում։ Աշունը Սեպտեմբերից մինչև Նոյեմբերը, ըստ ամենայնի, բարեխառն է. անձրևներ են գալիս, դաշտերը նորից կանաչում են, օդը մաքրւում ու գարնան օդի բնաւորութիւն է ստանում, այնպէս որ կարելի է ասել, թէ այս կողմերի աշունն աւելի է նմանում գարնան, քան թէ բուն գարունը: Թէ հայ գիւղերից իւրաքանչիւրն որքան հող ունի և ունեցած հողի ընդհանուր քանակութիւնից որքանը յարմար է և որքանն անյարմար, այդ կարելի է տեսնել հետևեալ աղիւսակից.*

## Ա Ղ Ի Ւ Ս Ա Կ

| | Գիւղերի անուն-ները. | Հողի քանակութիւնն օրավարի հաշուով. | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| | | Ցարմար. | | Անյարմար. | | Ջայի-միշ. | ընդհանուր. |
| 1. | Մեծ- Սալա | 7,776 | | 402 | | 303 | 8,481 |
| 2. | Սուլթան-Սալա | 6,389 | 440 ք. ս. | 210 | | 36 | 6,425 |
| 3. | Թոփտի | 15,778 | | 272 | | 610 | 16,660 |
| 4. | Ջալթիր | 15,482 | | 865 | | 660 | 17,0007 |
| 5. | Նիսուիթայ | 5,339 | 720 ք. ս. | 447 | 2027 ք. ս. | 140 | 5,787-347 ք. ս |
| 6. | Կատարինաւան | | | | | 500 | 6,500 |

Նախիջևանի գիւղերի պարտականացուցիչ ծախքերի քանակութիւնը տարուայ ընթացքում բաւականին մեծ է, որովհետև սովորական հարկերի հետ միասին նոքա հատուցանում են և վերոյիշեալ հողերի վճարը — «выкупъ»-ը։ Թոփտին, օրինակի համար, միայն հողավճար հատուցանում է տարին 18,355 ռուբլի, իսկ գիւղի բոլոր տարեկան ծախքերի համագումարը հասնում է 25,632 ռուբլի խոշոր գումարին, ասել է թէ իւրաքանչիւր Թափտեցի թէ արական և թէ իգական սեռի անհատ հատուցանում է տարին գիւղացու համար մի շատ զգալի գումար։

Գիւղերի պարտականացուցիչ ծախքերը, բացի հողավճարից, են համայնական ծախքերը — «волостныхъ», հասարակական — «семскихъ», շինական — «сельскихъ» և ապահովագրական — «страховыхъ»։

Այդ ծախքերը լրացնում են, տուրք հաւաքելով գիւղացիների տնատեղերից, խոշոր ու մանր անասուններից, լուծքից, տների արական և իգական անդամներից և հասարակական հողերի կապալադրամից։ Հատուցանելիք հարկերի քանակութիւնը, բացի տնատեղերի տուրքից, որ ամեն տեղ ստացւում է «շուպաղայի» ամեն մի քառակուսի սաժենից $1/2$ կոպէկ, բոլոր գիւղերում միատեսակ ու հաւասար չէ։ Մի գիւղում խոշոր անասունների՝ եզների, ձիերի և կովերի ամեն մի գլխից ստացւում է 50 կոպէկ, միւս գիւղում — 60 կոպէկ. մի գիւղում մանր անասունների՝ այծերի և ոչխարների ամեն մի գըլ-

*խից ստացւում է 20 կ. միւսում 25 կ. կամ 40 կ. մի գիւղում լուծքից ստացուում է 32 ռուբլի, միւսում—16։ Այնպիսի գիւղ էլ կայ, ինչպէս Չալթիրը, որ լուծքից Հարկ չի Հատուցանում, այլ տների արական և իգական անդամներից, Հաշուելով արական անդամի վերայ 3 ռուբլի, իգականի վերայ 1,50։ Փոքր կամ Սուլթան-Սալա գիւղը լուծքի Հաստատուն Հարկ չունի, այլ Հարկերի մեծ մասը Հատուցանում է Հասարակութեան պատկանած Հողերի կապալադրամից, և միայն պակասորդը լրացնում է, լուծքի վերայ Հարկ դնելով 1—5 ռուբլի կամ աւելի։ Նախիջևանցւոց Ղրիմից բերած Հագուստի տարազը քաղաքում արդէն իսպառ վերացել է, տեղի տալով եւրոպական տարազին, իսկ գիւղերում թէ և մինչև ցայսօր դեռ պաՀպանուել է, բայց արդէն արագապէս սկսել է վերանալ, տեղի տալով շրջապատող ռուս գիւղացիների Հագնուելու ու կապուելու ձևին։*

*Քաղաքում այլ ևս չ'կայ կանանց գեղեցիկ աթլաս «վրայնոցը», որ, ինչպէս ցոյց է տալիս բառի նշանակութիւնը, Հագնում էին զգեստի վերայից, չ'կայ աղջիկների ոսկիներով զարդարած «ֆէսերը», մարգարտազարդ «խուլանները»—գօտիներն արծաթեայ ճարմանդով, գոՀարազարդ «փերչամ-բաղին», «էթէկլու» երկու շար խոշոր ոսկիները, որ տէր-ողորմեայի պէս խաչաձև ձգում էին վրայնոցի վերայից, չ'կայ, վերջապէս, մարգարտաՀեռ «գերդանլիկը»—մանեակը և մարգարտաշար ականակուռ խաչը, որ ձգում էին վիզները։ Հին տարազից քաղաքում ներկայումս մնացել է միայն «փօշին», որ մի մետաքսեայ Հաստ նկարէն կտոր է, որին մի տեսակ գլխարկի ձև տալով, վարպետօրէն ասեղներով ամրացնելով ու մազերը նորա տակ Հաւաքելով, դնում կամ կապում են գլուխներին Նախիջևանի պառաւները։*

*Գիւղերում տղամարդկանց սովորական զգեստն է «կապան», որ ձմեռը լինում է «բամբկուն», իսկ ամառն առանց բամբակի, մորթի գդակ, շալ գօտի, պաճոյճաձև դուրպաներ և Հայկական տրեխներ։ Կանայք սովորաբար Հագնում են գոյնզգոյն պարզ ձևի շրջազգեստ-«վարի-քով», վերնազգեստ-«վերի-*

քով» և գողնոց, գլխներին կապում են կամ փօշի կամ Թաշկինակ, իսկ մէջքները պնդում են «խուլաններով»։ Աղջիկները հագնուում են կանանց պէս, միայն այն զանազանութեամբ, որ նոքա փօշի չեն դնում գլխներին, այլ ոսկիներով զարդարած ֆէսեր, որոնց տակից ընկնում, ծածանուում են ուսերի վերայ հայկական ձևով մանրաթել հիւսած մազերը, և վզներին ձգում են ուլունքների և մանր ու խոշոր ոսկիների շարոցքներ։

Հալաւների տարազի հետ միասին փոխուել ու փոխուելու վերայ է և Նախիջևանցւոց «խռիմի վարքով» ապրելու եղանակը։ Այլ ևս չ'կայ գաղթականների նախկին կեանքի նահապետական պարզութիւնը, պակասել է հայկական հիւրասիրութիւնը, սէրն ու «մուհաբեթը», որ ստիպում էր հայերին ոչ թէ միայն իւրեանց մերձաւոր ու հեռաւոր ազգականների, խնամիների, այլ և դրացիների, տես ու ճանաչի և մինչև իսկ «օխտն— օտար» մարդկանց հետ մօտ բարեկամութիւն ու գնալ-գալ անելու։ Ներկայումս Նախիջևանցւոց մէջ ամեն բան կրում է քաշուելու հեռանալու, իւր մէջ կենդրոնանալու ձգտումն, ամեն բան ներկուում ու կնքուում է եսականութեան դրոշմով։

Համեմատաբար դիմացկուն է եղել, անարատութեամբ է պահպանուել Նախիջևանցւոց ընտանեկան կեանքն իւր ներքին կազմակերպութեամբ, իւր վարք ու բարքով, թէ և այդ վարք ու բարքի գծերից շատերն իսպառ կորցնելով իւրեանց ներքին խորհուրդը, այժմ լոկ անբովանդակ ծիսակատարութեան ու անգիտակցաբար կատարուող սովորութեան բնաւորութիւն են ստացել։ Մեծ տօների ժամանակ Նախիջևանցիք մինչև ցայսօր դեռ իւրեանց ծեր ու տարէց ազգականներին յարգանք մատուցանելու համար, նոցա տները «ձեռք պագնելու» են գնում. նոքա մինչև ցայսօր դեռ մի որ և իցէ տեղ իւրեանց ազգական ու ծանօթ ծերերին պատահելիս կամ տեսնելիս, անհրաժեշտ պարտականութիւն են համարում իւրեանց համար նոցա ողջունելու, նոցա ձեռքերը համբուրելով։ Պատիւ ու յարգանք մատուցանելու մտքով Նախիջևանցիք իւրեանց ընտանեաց անդամներին զանազան պատուանուններ են տալիս. նոքա իւրեանց մեծ եղբօրը «աղա» են ասում, մեծ քրոջը—«ջիջա», տալին—

*«փքէչ», տագրոջը —«չէչէբի», աներոջ և զոքանչի քրոջը — «խաթնա», եղբօր ու հօրեղբօր կնոջը և առհասարակ տանտիկիններին — «ճանկա», ծեր հօրեղբօրը—«էմջե-բա», ծեր խընամիներին—«խնամի-մա», «խնամի-բա», ծեր ճանկային— «ճանկա-մա» և այլն։*

*«Աղա» բառը, բացի իր բուն գործածութեան տեղից ու նշանակութիւնից, Նախիջևանում գործ է դրւում և ընդհանրապէս իբրև պատուանուն բոլոր ծերերի համար, լինին դոքա պատուաւոր մարդիկ, հարուստ թէ աղքատ։ Այդ, ի հարկէ, նախիջևանցւոց նախկին նահապետական կեանքի մնացորդներից է, երբ ծերերի խօսքը օրէնք էր հասարակութեան համար, երբ ամեն մի ծեր մարդ առանձին պատիւ ու յարգանք էր վայելում իւր շրջապատողներից, և երբ, վերջապէս, ծերերի խորհրդով, տնօրինութեամբ էին կառավարւում ամբողջ հասարակութեան գործերը։*

*Շատ հետաքրքրական է այդ «աղա» բառի գործածութեան ձևը նախիջևանցւոց բարբառում. Նախիջևանցիք սովորաբար ամբողջապէս նորան երբէք չեն արտասանում, այլ միշտ համարեա կրճատուած ձևով։ Նոքա, օրինակի համար, չեն ասում Գրիգոր աղա, կամ Սարգիս աղա, այլ—Գրիգորա, Սարգիսա, և այլն և այլն։ Դոյն կրճատման ձևին ենթարկւում են և շատ գործածական «անա», «մամա» և «բաբա» բառերը. առաջինից, ինչպէս «աղա» բառը, մնում է միայն ա տառը, որ կպցնում են գործածուած բառի վերջից, երկրորդից ու երրորդից—միայն առաջին մա և բա վանկերը, ինչպէս, օրինակի համար, Մեծա, այսինքն մեծ—անա, խաթնա, այսինքն խաթուն—անա, Տէր-բա, այսինքն տէր-բաբա, Հաճիմա, այսինքն հաճի—մամա, և այլն և այլն։ Համեմատաբար աւելի անարատութեամբ է պահպանուել և նախիջևանցւոց Ղրիմից բերած ուտել - խմելու ճաշակը, կերակուրների տեսակները և ընդհանրապէս սէրը դէպի խմորեղէնը և իւղոտ կերակրեղէնը, որ ընդհանուր է բոլոր հայութեան։*

*Արժանի են ուշադրութեան հետևեալ հայանուն կերակուրները, որոնք իւրաքանչիւր նախիջևանցու խորտկացուցակի*

մէջ անհրաժեշտ տեղ են բռնում. «Հաց—տապակ»—կաթի մէջ թրջած և իւղով, ձուով տապակած հաց, «Միս-տապակ» — տապակած միս, «փորլից»—փորը բրնձով խճողած և փուռը դրած գառն, «Ծալծուլ»—թել բաց արած, մէջը ձիթով տապակած սոխ դրած և ծալծլուած ու հիւսուած խմորեղէն, «Կլորակապուր»—մսի կլորակներով ապուր, «Գունդապուր»—խմորի գնդիկներով ապուր, «Կռթկռթապուր»—իւղով տապակած և չորացրած խմորիկներով ապուր, «Կաթնապուր» — ջրալի կաթնով, «Փշուկ-սպուր», «Էրշկիք,» «Ապուխտ» և այլն։

Սոցանից էլ նամանաւանդ արժանի են ուշադրութեան վերջին երկուսը—էրշկիքը և ապուխտը, որոնք պատրաստում են իբրև ձմեռուայ պաշար աշնանը, երբ սկսում են բանել ճարպի գործարանները և բազմաթիւ «օթառներ» են մորթում ու ճարպահան արած միսը շատ էժանանում է։ Էրշկիքի կամ երշիկի համար նախապէս պատրաստում է աղիքը, այսինքն առնում է կովի աղիքը և այնքան քերում ու մաքրում է, որ մնում է միայն բարակ, թափանցիկ մաշկը. յետոյ ճարպահան արած ոչխարի միսը մանրում, ծեծում է, մաքրում է ջղերից ու մաշկերից, աղում և համեմում է չամանով, կինամոնով, միխակով, սև պղպեղով ու սխտորով, խճողում է աղիքի մէջ և կախում է չորանալու օդի մէջ։ Ամեն երեկոյ բոլորաձև, ծայրերը միմեանց կապած երշիկներն առնում են, դասնակում և միմեանց վերայ մի ծանըր բանի տակ են դրում, որ տափակուեն։ Եւ այս այսպէս. շարունակուում է, մինչև որ աղիքի մէջ խճողած միսը օդի մէջ եփւում. պատրաստում է։ Ապուխտը պատրաստում են ոչխարի սուկիներից, թիակներից և լեզուից։ Ապխտելի կտորները սովորաբար առաջ լուանում, մաքրում են, յետոյ աղում, սըխտոր ու չաման անում վերան ու կախում օդի մէջ չորանալու։ Նախիջևանցւոց ընտանեկան վարք ու բարքի մի քանի գծերի յաջող նկարագրութիւնը կարելի է տեսնել և հետևեալ երգիծաբանական ոտանաւորաձև գրուածքում, որ շատ անգամ է իբրև «դիվերտիսմենտ» արտասանուել Նախիջևանի հայկական բեմից և որ հաւանականաբար շարադրուած է յայտնի Փա-

*սուլեճեանի խմբից, որ 69—70 թուականներին Պոլսից Նախիջեւան հրաւիրուած լինելով, թատրոնի է վերածել Իվան Մարկովիչ Պոպովի ցորենի ամբարը և մի ամբողջ սեզօն կանոնաւոր հայկական ներկայացումներ է տուել այդտեղ։*

Մեր դռան քովը ժողովիլին չորս-հինգ եանկա,
Կուտին բոհրուն կուտ ու թստան խուրմա.—
Մէկը տիբոնչի, մէկալը փալչի,
Մէկալներն ալ—գալաջի, գալաջի,
Անվերջ անհատնում սալթը գալաջի։
Զարխատա տղաք վարժատուն կեշթան,
Համրանք չեն սովրենալ, վիրա կ'խաղան.
Մէկը—թռթռի, մէկալը—կոճի,
Մէկալներն ալ—գալաջի, գալաջի.
Անվերջ անհատնում սալթը գալաջի։
Ձի-առապայով Ռասթով կեշթանք.
Գալու ատեն էգէր եօռուխով գտանք
Մէկ բօշ-բօղազ հայ առաբաչի,—
Աշթըխ ճամբան գալաջի, գալաջի,
Անվերջ անհատնում սալթը գալաջի։

Մենք այդ ոտանաւորը լսել ենք պ. Տիրան Գալֆայեանից, որ Ֆասուլեճեանի խմբից էր և խմբի հեռանալուց յետոյ էլ մնացել Ռուսաստանում և ուսուցչութեամբ էր պարապում։ Ցաւում ենք, որ մենք դորա չորրորդ տունը, որի մէջ նկարագրուած էր Նախիջեւանի կանանց ջերմեռանդութեամբ եկեղեցի յաճախելը, բայց ժամասացութիւն լսելու ու աղօթելու փոխարէն նոցա «անկաջ անկաջի գալաջի անելու» դատապարտելի սովորութիւնը, չենք կարող մէջ բերել, որովհետև մոռացել ենք, չենք մտաբերում։ Նոր-Նախիջեւանցւոց նիստ ու կացի, կամ, ինչպէս ասում են ինքեանք նախիջեւանցիք «Ջանցան»-ի աւելի ընդարձակ նկարագրութիւնը կարելի է գտնել Ռ. Պատկանեանցի Նախիջեւանի բարբառով գրուած հետաքրքրական երկերի մէջ։

Թէ քաղաքացիք և թէ գիւղացիք 'ի սկզբանէ անտի եղել են վերին աստիճանի հասարակ, պարզ նահապե-

տական կեանքով ապրող մարդիկ, աշխատասէր, խաղաղ և չափաւոր, բայց և նոյն ժամանակ վերին աստիճանի տգէտ ու գռեհիկ։ Գրագէտ մարդկանց թիւը մատներով է հաշուում եղել, ազնուականների և աստիճանաւորների թիւը շատ սահմանափակ, նոյն իսկ հոգևոր դասը խարխափում է եղել խորին տգիտութեան ու խաւարի մէջ, թէև, 'ի հարկէ, այդ դէպքում քաղաքացւոց և գիւղացւոց մէջ մեծ զանազանութիւն է եղել։ Քաղաքացիք ապրած լինելով քաղաքներում, շփուած լինելով զանազան ազգերի հետ և իւրեանց առևտրական գործերով այս ու այն կողմը գնացած լինելով, 'ի հարկէ, համեմատաբար աւելի զարգացած, աւելի աշխարհ տեսած են եղել, քան թէ գիւղացիք, որոնք իւրեանց կեանքի պայմաններով խստիւ մեկուսացած լինելով, միջոց ու հնարաւորութիւն չեն ունեցել փոքր 'ի շատէ իւրեանց մտաւոր կրթութեան հորիզոնն ընդլայնելու, զարգացնելու։

Մեր պատմական տեսութեան գլխում յիշուած Նիսուիթայի ձեռագիր հաւաքածուի մէջ մենք գտնում ենք մի ոտանաւորաձև գրուածք Թէոդոսիոյ հոգևոր դասի մասին, որ գրել է Տէր-Ստեփանոս Թոխաթեցի երէցը նոյն իսկ գաղթականութեան ժամանակները կամ դորանից մի փոքր առաջ։ Թէև արժանայիշատակ երէցը, ինչպէս երևում է, աշխատել է յիշել «Հայոց տան» հոգևորականների միայն լաւ կողմերը, աշխատել է գրուատել ու գովաբանել նոցա և իւր գրուածքն հէնց այդպէս էլ կոչել է «Գովասանութիւն Կաֆայու քահանայի վերայ», բայց նորա տողերի մէջ կարելի է կարդալ, տեսնել այն խորին տգիտութիւնը, որի մէջ ընկղմուած է եղել գաղթականների ամենայառաջադէմ, ամենակրթուած դասակարգը նոցա Ռուսաստան տեղափոխուելուց առաջ։ Եւ եթէ այդպէս է եղել այն դասակարգը, որ պէտք է դէպի լոյս ու ճշմարտութիւն առաջնորդէր իւր հօտը, կարելի է դիւրաւ գուշակել, թէ ինչ են եղել գաղթականների միւս դասակարգերը։ Բաւական է այսքանը միայն ասել, որ Թոխաթից Թէոդոսիա եկած և տեղական քահանայական դասից սիրով հիւրընկալուած երէցը չի կարողացել իւր «Գովասանութեան» մէջ չ'յիշել, թէ քա-

հանաներից ոմանք չափազանց երկրպագու են եղել «ըրախուն և գինոյն», ոմանք «խիստ պանպառակ, ծեր ու մասխարայ» են եղել, ոմանք էլ, փոխանակ իւրեանց սուրբ կոչման ծառայելու, պարապելուս են եղել «ղույումճուլթեամբ» —ոսկերչութեամբ և ուրիշ արհեստներով։ Բայց արժէ կարդալ բոլոր «Գովասանութիւնը»։

Տէր-Խաչատուր եպիսկոպոսն,
Որպէս Անտօն Թաբայիթի,
Պահող, հսկող ճգնաւորի,
Սուրբ ծերունի, մաքուր հոգի։

Իսկ տէր Մովսէսն Ղրմեցի,
Եպիսկոպոսն գերպանծալի,
Խոնարհամիտ, հեզահոգի,
Հըլու, հընազանդ յամենայնի։

Եւ տէր Թորոս եպիսկոպոսն,
Որ զվանքն ունի Աստուածածնի.
Խոնարհ հոգով, սուրբ և արհի
Եւ սիրեցեալ աչըս ամենի։

Տէր-Խաչատուր եպիսկոպոսն,
Որպէս եղբայր տէր-Թորոսին.
Քրիստոս իւրեանց մէջըն յայտնի,
Խաղաղ կենան յայսմ աշխարհի։

Տէր-Խաչատուրն սբ. Սարգիսին,
Խելօք, խիկար, նըման ծովին,
Զերկնից շըջանին գիտողի,—
Հայոց տումարն և Հըռոմի։

Իսկ տէր-Յակոբն բարձրակայ,
Որ մականուամբն է ալաճայ.
Յորժամ գոռայ, գբերանն բանայ,
Ձատ ոք վազեն, թէ կուլ կուտայ։

Ո՜վ տէր-Թորոս Պարթև ազգին
Նըման Սահակ հայրապետին,
Բարձրը բոլոր մէջ ամէնի,
Աւագ երէց Կափայ քաղքի։

Տէր Ովաննէս դու շնորհալի,
Ուրախցընող ժողովրդի,
Քաղցր և անուշ ձայնդ գովելի,
Նըման փողոյ Գաբրիէլի։

Տէր-Մըկըրտիչ դու անուանի,
'Ի մէջ ամէն կարգաւորի,
Գըրոց հմուտ ամէն բանի,
Փէննէհէսի ես նըմանի։

Ո՜վ Տէր-Պետրոս դու գովելի,
Ձայնդ համեղ, փառքըդ բարի,
Քաջ երաժիշտ, գեղ գովելի,
Նախաշ, ոսկող, քարտուղարի։

Տէր-Աբրահամ առատ հացի,
Թող քո սեղանըդ շէն լինի.
Դու ես սիրուն ամէն ազգի,
Տաճկի, հոռմի և Ֆըռանկի։

Աստուածատուր սբ. քահանայ,
Խիստ պանպառակ, ծեր, մասխարայ.
Եւ էլ անունդ է հակակայ,
Հիւսն ես նըման հայր Յովսէփայ։

Տէր-Օգսէնտն էր փափաքելի,
Սբ. և մաքուրք քան զաղաւնի.
Պօյ ու պօսուն ձեր ցանկալի,
Ընաստասայ էք նըմանի։

Տէր-մղտեսի Աստուածատուր,
Սբ. Յակոբայ ես սպասաւոր.
Անունդ ահեղ և զօրաւոր,
Զարմանալի և փառաւոր։

Տէր Ստեփանոս դու նորընծայ,
Եւ սբ. խաչին կարգեալ ծառայ,
Ըրախուն, գինոյն տէր հան
մեր տայ,
Աստուած քո մուրատն տայ։
Տէր Խաչատուր դու նորընծայ,
Որդիդ լինի քո քահանայ.
Սբ. Սարգիսին դու ես ծառայ,
Զտաճարն և զգեստն մաքուր
պահեա։
Փոքրը Տէր-Աբրահամ, իմ սիրելի,
Նըման ես դու սուրբ տատրակի.
Սաղմոսասաց, սերտում արի,
Պատարագօղ սուրբ խորհրդի։
Քըռնաղցի Տէր-Մաղաքեայ,
Մատղաշ մանուկ դու քահանայ,
Տետր ալէլուք անձն քեզ կայ,
Սանբէթրօին դու ծառայեա։
Տէր-Օհաննէս ծեր պատուական,
Անձամբըդ մեծ թօրախալան,
Սպիտակ ալեօք, որպէս օհան,
Որ գըրեաց աւետարան։
Ո՛վ Տէր-Թումայ հեզ և բարի,
Ըկար շինող և ղույումճի,
Պօյովդ երկան աննըմանի,
Աստուած 'ի քո հոգիդ հանգչի։
Ո՛վ Տէր-Սարգիս դու գրագիր,
Կարճ ու բոլոր, լաւ և ընտիր,
Ըռախին, գինին 'ի կուլ տւալիր,
Հանգչի հոգիդ, փառաւորիր։
Ո՛վ իմ եղբայր Տէր-Աւետիք,
Փափկամարմին և կակըղիկ,
Կաշուն առնուլն ես գեղեցիկ,
Տկճիկ, փոքրիկ և սըպըրկիկ։
Ո՛վ Տէր-Ներսէս չուստ և արի,
Որդի դու ծեր քահանայի,
Տըղայ գալով եղիր այրի.
Մի համբեր տայ Աստուած քեզի։
Ով Տէր-Գրիգոր սուրբ ծերունի,
Քաղցրաբարբառ ըմպօղ գօթի.
Անուանակցի քո նըմանի,
Հրեշտակապետն է քո տեղի։
Գրիգոր դպիր հմուտ գրի,
Հնոց նորոց կտակարանի,
Ատենախօս մէջ ամենի,
Որ մականուամբ Մախմուր կոչի։
Քաջ Պարխուտար սեբաստացի,
Ճոխ է պայծառ մէջ ամենի.
Դու ժամասէր հեզահոգի,
Մեղք և անցանք քո ջընջի։
Զձեր այսմաւուրքն ետաք ընձի,
Որ զօրինակն գրեցի.
Լոյս ծագեսցի մեր տաճարի,
Լուսով մտնունք յառագաստի։
Տէր-Ստեփանոսըս թօխատցի,
Եկի, հանգեայ ձեր քաղաքի,
Առ ոտն սուրբ Լուսաւորչի,
Ծովահայեաց սուրբ տաճարի։
Տունըն ձեր նըման Աբրահամի,
Սուրբ Սահակայ և Ակոբի,
Պանդխտասէր հանգիստ հիւրի,
Նժդեհ, ղարիպ և օտարի։
Ես մեղաւորս և եղկելի
Լոկ Ստեփանոս թօխաթեցի,
Հպարտ և լիրբ և փառասէր,
Այլ ամենայն այպով ելի։

Իւրեանց նոր հայրենիքում էլ գաթականները դեռ շատ

երկար ժամանակ մնում են նոյն տգիտութեան մէջ, որովհետև ոչ նոցա նոր բնակութեան տեղը, ոչ էլ հանգամանքներն են նպաստում նոցա շուտով լուսաւորուելու, կրթուելու։ Նախիջևանի շրջակայքը հին ժամանակները շրջապատուած էր ընդարձակ ամայի դաշտերով և կամ ղազախների գիւղերով, որոնք ինքեանք էլ վերին աստիճանի գռեհիկ լինելով, 'ի հարկէ, չէին կարող կրթիչ ազդեցութիւն ունենալ հայերի վերայ։ Նախիջևանում էլ չի կարելի լինում իսկոյն դպրոցներ հաստատել և գաղթականների մէջ կրթութիւն տարածել, որովհետև մի կողմից նիւթական միջոցների խիստ սղութիւն է լինում, միւս կողմից էլ կրթուած, դաստիարակուած մարդկանց պակասութիւն։ Ճիշդ է, քաղաքի և գիւղերի հիմնադիր Յովսէփ արքեպիսկոպոս Արղութեանը մտածում է այդ բանի մասին և աշխատում է մի մեծ դպրոց—«Համալսարան» բանալ, բայց չի յաջողում։ Նա թէև կարողանում է քաղաքում մի փոքրիկ դպրոց բանալ հայերէն և ռուսերէն գրագիտութիւն սովորեցնելու համար և վանքում մի փոքրիկ վանական դպրոց է հաստատում հոգևորականացուներ և եկեղեցական պաշտօնեաներ պատրաստելու համար, բայց դոքա էլ, նորա հեռանալուց յետոյ, շուտով փակւում են և ժողովրդի կրթութեան գործը մնում է երկար ժամանակ տգէտ քահանաների և տիրացուների ձեռքին, որոնք միայն պարզ հայերէն գրագիտութիւն և եկեղեցական փոխասացութիւն են սովորեցնում խալֆայական եղանակով։

Առաջին հայոց կանոնաւոր դպոցները Նախիջևանում հաստատուում են 1868 թուին, երբ երջանկայիշատակ Գէորգ կաթուղիկոսը իւր դէպի Պետերբուրգ արած ճանապարհորդութեան ժամանակ մտնում է Նախիջևան և մի քանի օր մնում է այդտեղ։ Ուսումնասէր կաթուղիկոսի հրամանով առաջին անգամ բացուում են քաղաքի ծխական դպրոցները, Ս. Խաչի ժառանգաւորաց դպրոցը և գիւղերի ծխական դպրոցները։ Այնուհետև 1875 թուին հիմնարկուում է Նախիջևանի հոգևոր դպրոցը, որ 1881 թուին վերածուում է թեմական դպրանո-

*ցի. 1881 թուին բացւում է Արհեստաւորաց դպրոցը քաղաքի հարիւրամեակը յաւերժացնելու համար. նոյն 1881 թուին բացւում են Գոգոյեան և Հռիփսիմեան օրիորդաց դպրոցները։ Սակայն 'ի նկատի առնելով, որ դեռ շատ ժամանակ է անցնում, մինչև որ այդ բոլոր դպրոցները կանոնաւորւում են, 'ի նկատի առնելով, որ դոքա կանոնաւորուելուց յետոյ էլ դեռ շատ անգամ փոփոխական բաղդի են հանդիպում, դոքա չեն կարողանում հարկաւոր ազդեցութիւնն անել գաղթականների վերայ և հանել նոցա տգիտութեան այն թանձր խաւարից, որի մէջ նոքա այնքան երկար ժամանակ մնացել էին։ Ահա հէնց այդ իսկ պատճառով էլ մինչև ցայսօր դեռ բոլոր գիւղացիները և քաղաքի աղքատ դասակարգը յարատևում են տգիտութեան մէջ, զրկուած մնալով ժամանակիս հոգուն և հանգամանքներին համապատասխան կրթութիւնից։*

*Ճիշդ է, քաղաքում ներկայումս գոյութիւն ունի արքունի միջնակարգ և բարձրագոյն դպրոցներից աւարտած ու դուրս եկած մի ստուար դասակարգ, բայց դա բաղկացած է մեծամասնութեամբ առանց իդէալի, առանց մի որոշ սկզբունքի մարդկանցից, որոնք, բացի իւրեանց սեպհական շահերից, ոչինչ չեն հասկանում, ոչինչ չեն ուզում իմանալ, որոնք իւրեանց քթից հեռու չեն տեսնում... իսկ գործելու, անելու շատ բան կայ, որովհետև քաղաքում հայկական կեանքը մարելու վերայ, գիւղերին էլ ապագայում նոյն վիճակն է սպասում։ Ժողովուրդն աղքատացել է և հէնց այդ պատճառով էլ քաղաքացիների մի ստուար մասը թողել, շրջուել է շրջակայ գիւղերն ու քաղաքները և շատ հեռու չէ այն ժամանակը, որ քաղաքը բոլորովին դատարկուի իւր հայ տարրից. գիւղերին էլ, 'ի հարկէ, աւելի հեռու ապագայում, նոյն վիճակն է պատրաստւում։ Վարքի ու բարքի ապականութիւնը բոյն է դրել քաղաքի հայ հասարակութեան զանազան խաւերում, մերձաւոր ամուսնութիւնները յաճախակի են տեղի ունենում, տարէցտարի աւելանում է խառն ամուսնութիւնների թիւը և ժողովրդի մանրանալուց, թուլամիտների, խենթերի, թլուատների թուի բազմանալուց, կամքի կորստի և բարոյական ոյժե-*

րի Թուլանալուց կարելի է ակներև գուշակել, որ գաղթական-ներն արագօրէն այլասեռւում են։ Գիւղերում նահապետա-կանութիւնը հետզհետէ վերանում է և Ռոստովի փողոցներից «փողոցային կուլտուրան» լայն հոսանքներով տարածւում է գիւղերը և մտնում, բռյն դնում գիւղացիների համեստ տնակ-ներում ու խրճիթներում։

Նախիջևանցւոյ խօսակցութեան լեզուն, որ Տաճկահայոց մեծ բարբառի ճիւղաւորութիւններից մէկն է և ունի Հայոց բարբառներին յատուկ բոլոր առաւելութիւններն ու պակասու-թիւնները, քաղաքում արդէն վերանալու վերայ է, որովհետև մատաղ սերունդն արդէն համարեա թէ չի խօսում հայերէն, իսկ հին սերնդի բերանում նա կորցրել է անկախ, ինքնուրոյն լեզուի բոլոր յատկութիւնները և դարձել է մի կոպիտ փողո-ցային «ժառգոն», որով ոչ մի կապակցական խօսակցութիւն չի կարող լինել, ոչ մի ընդարձակ վերացական միտք չի կա-րելի յայտնել։ Նորա մէջ աւելի շատ թաթար և ռուս բառ-կայ, քան թէ հայերէն, նորա մէջ շատ ոճեր և մինչև ան-գամ ամբողջ նախադասութիւններ ռուս լեզուով են արտայայ-տւում, այնպէս որ օտար, անծանօթ և առհասարակ այդ ժառգոնին անընտել մարդիկ առաջին նուագ շատ անգամ կ՚դժուարանան հասկանալ, թէ իսկապէս ինչ լեզուով է կա-տարւում երկու նախիջևանցու մէջ եղած զրոյցը—ռուսերէ՞ն, թէ հայերէն։ Շատ հեռու գնացած չենք լինել ճշմարտու-թիւնից շատ չափազանցացրած չենք լինիլ, եթէ ասենք, թէ այժմուայ նախիջևանցւոց խօսակցութեան լեզուն մի թաթար և ռուս լեզուներից առնուած ու աղճատուած բառերի, ոճերի ու նախադասութիւնների խառնուրդ է կապուած հայ շաղկապնե-րով և օժանդակ բայերով, համեմուած սակաւաթիւ հայ բայե-րով և գոյականներով։ Գիւղացւոց լեզուն շնորհիւ նոցա մեկու-սացած կեանքին և անխառն բնականութեան տեղերին համե-մատաբար աւելի անարատ է մնացել, բայց գիւղերում ևս ար-դէն սկսել է խրամատուել լեզուի ինքնուրոյնութեան ցանկը և հետզհետէ քաղաքի ժառգոնի բնաւորութիւնն ընդունել։

Նախիջևանի բարբառի առանձնայատկութիւններից ար-

*ժանի են առանձին ուշադրութեան ր տառի հնչիւնաբանութիւնը և յ տառի յաճախ գործածութիւնը։ Նախիջևանցու բերանում ր տառը երբէք չի հնչւում իբրև մաքուր ր, այլ մերթ իբրև ժ, մերթ իբրև շ։ Նախիջևանցին, օրինակի համար, չի ասում «երեք», այլ անպատճառ «իժեք», չի ասում «մարդ», այլ անպատճառ «մաշթ»։ Օ տառը, բացի իւր սովորական գործածութեան տեղերից, գործ է ածւում և ա երբեմն և օ ձայնաւորներից յետոյ, լինին դոքա գրուած բառի սկզբում, միջում և թէ վերջում։ Նախիջևանցիք չեն գրում «վաճառական», այլ «վայճայռայկան», չեն ասում «հօր», «մօր», այլ անպատճառ «հօյր» մօյր» և այլն։*

*Մեր ձեռքին գտնւում է պաշտօնական թղթի վերայ հայերէն գրուած մի հին պարտամուրհակ, որի մէջ պարզ կերպով աչքի է ընկնում յ տառի յաճախ գործածութիւնը։ «Ինը ամիս համարելով, գրուած է դորա մէջ, յայս թւովն հազար օւթըն հարուր տասն մէկէն այմիսեանըն սէկտէնբէրի քսան իժէքէն այս իմոյ հատուկ վէքսելայգրօվս պարտայկան եմ ես հատուցանէլ Նախիչէվանցի վայճայռայկան Այդին Պարօնօվին ևս կամ 'ի նմանէ օւմ որ հրամանեալ ելի տալ նմայ ռուստի քալայկան բող հազար ռուպլի վէքսիլ տուվօղս եմ Նախջեւվանցի Լուսեղէն հաճիօվ պարտիմ»։*

*Բաղաձայների տառադարձութեան կանոնները ճիշդ համաձայն են արևմտեան հայերի արտաբերութեան։ Նախիջևանցու լսելիքը չի զանազանում հայոց երեք տեսակ բաղաձայների հնչիւնաբանութեան նրբութիւնների տարբերութիւնը. Նորա համար պ, բ, փ բաղաձայները մի տեսակ ձայն ունին, ինչպէս և մի տեսակ ձայն են հանում նորա ականջին և կ, գ և ք, տ, դ, և թ, ծ, ց և ձ, ճ, չ և ջ բաղաձայները և միւսները։ Նախիջևանի բարբառը միատեսակութիւն չունի. Նորա քերականական կանոնները զանազան գերդաստաններ զանազան տեսակ են գործ ածում։ Մի ընտանիք, օրինակի համար, ասում է «տուրից», միւսը — «տուից», մինը — «սայօվ», միւսը — «սորամով», մինը — ասուիկը, ադուիկը, անուիկը, միւսը — աս, ադ, ան, մինը—սվոր, դվոր, նվոր, միւսը—ասոր, ադոր,*

անոր, և այլն և այլն։ Այդ վերջին հանգամանքը մեկնուում է նորանով, որ Ղրիմի գաղթականութեան մէջ եղել են Հայաստանի զանազան նահանգների, գաւառների, քաղաքների և առհասարակ զանազան տեղերի գաղթականներ։ Մինչև ցայսօր դեռ Նախիջևանում յիշուում են Տրապիզոնցեան, Բայբուրդեան, Իզմայիլցեան, Օրցեան, Ակսայցեան, Քիրմանցեան, Թամանցեան և այլն ազգանուններով ընտանիքներ, որոնք, 'ի հարկէ, իւրեանց ազգանունները ստացել են իւրեանց բնակութեան նախկին տեղերից։ Նախիջևանի ժառգոնի տպագրուած օրինակներ չ'կան, որովհետև ով որ Նախիջևանցիներից միտք է յղանում մի որ և իցէ բան գրելու Նախիջևանի բարբառով, նա անպատճառ գրում է, նախապէս մաքրելով նորան եկամուտ և օտար ոճերից և բառերից։ Իբրև Նախիջևանի հին, մաքուր բարբառի օրինակ կարող են ծառայել հանգուցեալ Ռափայէլ Պատկանեանցի բարբառով գրուածները, նամանաւանդ նորա հին Քերովբէ Պատկանեանցի հայոց բարբառների հաւաքածուների առաջին հատորում տպագրուածները — «Ձախու», «Արէվ—Մանուկին հէքիաթը» «Էրէվան» «Պաց ազպար»։

Նախիջևանցիք 'ի սկզբանէ անտի կառավարուել են հոգևոր դատարանով և հայկական Մագիստրատով, որոնք հիմնուած են եղել այն արտօնութեան հրովարտակի հիման վերայ, որ շնորհել է նոցա երջանկայիշատակ Եկատարինէ կայսրուհին 1779 թուին։ Հոգևոր դատարանով կառավարուել են գաղթականների հոգևոր գործերը, Մագիստրատով—նոցա աշխարհական գործերը։ Հոգևոր դատարանը իւր առանձին կազմակերպութեամբ գոյութիւն է ունեցել մինչև 1836 թուականը, իսկ Մագիստրատը գործել է մինչև 1859—60 թուականները։ Առաջինը, որ կազմակերպուած է եղել Յովսէփ Արղութեանի մշակած կանոնադրութեան հիման վերայ, վերածուել է ներկայումս Նախիջևանում գոյութիւն ունեցող «Նախիջևանի հայոց հոգ'ւոր կառավարութեան», երբ հրատարակուել է հայոց եկեղեցու գործերը կառավարելու համար մշակուած կայսրահաստատ «Պօլօժենիա»-ն, իսկ երկրորդը, որ բաղկացած է եղել Ոստիկանական, Դատաստանական և Քաղաքային կառավարու-

*թեան կամ «Գումի» մասերից, վերածուել է «ընդհանուր դրութեան» հետզհետէ և աստիճանաբար։ Առաջ առնուել է գաղթականներից նոցա իւրեանց համար առանձին տեղական ոստիկանութիւն ունենալու արտօնութիւնը, յետոյ առանձին հայկական դատարան և «քաղաքային դում» ունենալու իրաւունքը։ Քաղաքն ենթակուել է Ռոստովի ոստիկանութեան իրաւասութեան, համարուելով նորա հինգերորդ և վեցերորդ ոստիկանական մասերը, իսկ գիւղերն ենթարկուել են նահանգական ընդհանուր ոստիկանութեան հսկողութեան, կառավարուելով «Զասեդատելներով» և «Ատամաններով»։ Հայկական դատարանն տեղի է տուել Ալէքսանդր երկրորդի հաստատած նոր դատարաններին, իսկ հայկական քաղաքային դումին փոխանակել է ներկայումս գոյութիւն ունեցող «դումա»-ն։*

*Նախիջևանն իւր գիւղերով սկզբից համարուել է Ազովի նահանգի առաջ Տագանրոգի գաւառի, յետոյ Ալեքսանդրովսկ գաւառի քաղաք. յետոյ նա 1834 թուին իւր գիւղերով կազմել է մի առանձին հայկական շրջան և համարուել է Կատարինոսլաւ նահանգի Ռոստովի գաւառի քաղաքներից մէկը և, վերջապէս, 1887 թուին նա մտել է «Դօնի զօրաց երկիր» կոչուած նահանգի մէջ։*

*Թէև 'ի սկզբանէ անտի ունեցած և վայելած արտօնութիւններից զրկուելն ընդհանրապէս ազդել է գաղթականների վերայ և նոքա այս ու այն միջոցին են դիմել պահպանելու համար իւրեանց կայսերաշնորհ իրաւունքները, բայց այդ արտօնութիւնների և ոչ մէկից զրկուելն այնպէս զգալի չի եղել նոցա համար, ինչպէս զինուորագրութիւնից ազատ լինելու արտօնութիւնից զրկուելը։ Գաղթականներն այդ վերջին արտօնութիւնը պահպանելու համար չ'շատանալով սովորական պաշտօնական գրագրութեամբ և խնդրագրերով, մինչև անգամ պատգամաւորութիւն են ուղարկել Պետերբուրգ և յիշեցրել իրենց շնորհած Եկատարինէ կայսրուհու 1779 թուի հրովարտակի մասին, բայց, 'ի հարկէ, ոչինչ չեն շահել, որովհետև օրէնքն ընդհանուր էր և բացառութիւն չէր կարող լինել միայն Նախիջևանի հայերի համար։*

«Սալտաթ սաւնելու» ազդեցութիւնը ժողովրդի վերայ այնքան զօրեղ է եղել, որ գաղթականները, որոնք վաղուց արդէն մոռացել են իւրեանց ուրախութիւններն ու վշտերն իւրեանց սեփական երգերով արտայայտել, մասնաւորապէս զինուորագրութեան մասին մի երգ են յօրինել, որի մէջ հետեւեալ կերպով են արտայայտում իւրեանց զգացմունքը զինուորակոչին ենթակուած նախիջեւանցի հայ կտրիճները.

Քսան մէկս կոխեցի,
Հօյրս, մօյրս լացուցի.
Օ՜ֆ, օ՜ֆ, օ՜ֆ, մարիկս,
Չի կար մեծի ազատում։
Տուարի պէս քշեցին,
Օչխարի պէս բարնեցին.
Օ՜ֆ, օ՜ֆ, օ՜ֆ, մարիկս,
Քսան մէկ էր տարիքս։
Տարին, ստանօք խոթեցին,
Լանքերս, պօյերս չափեցին.
Օ՜ֆ, օ՜ֆ, օ՜ֆ, մարիկս,
Քսան մէկ էր տարիքս։
Հայի չէքմանս հանեցին,
Սալտաթի շինել հագուցին.
Օ՜ֆ, օ՜ֆ, օ՜ֆ, մարիկս,
Քսան մէկ էր տարիքս։
Հոսի կօշիկս հանեցին,
Սալտաթի կօշիկ հագուցին.
Հոսի գառդուզս հանեցին,
Սալտաթի գառդուզս հագուցին.
Օ՜ֆ, օ՜ֆ, օ՜ֆ, մարիկս,
Քսան մէկ էր տարիքս։
Թութու պոռչով ուրիշ հաց,
Եփ պիտ՝ մոռնամ ճերմակ հաց.
Օ՜ֆ, օ՜ֆ, օ՜ֆ, մարիկս,
Չի կար մեծի ազատում։

Քաղաքացւոց և գիւղացւոց յարաբերութիւնը, ինչպէս ամեն հայաբնակ տեղ, Նախիջեւանում էլ սկզբից սովորական բնաւորութիւնն է կրել, այսինքն քաղաքացիք գիւղացիներին իրենցից ստոր արարած համարելով, միշտ մի տեսակ արհամարհանք են տածել իւրեանց սրտում դէպի նոցա։ Սակայն այդ արհամարհանքը, որ ուրիշ տեղերում միշտ միեւնոյն չափով չ՟ եղել, միեւնոյն սահմանի մէջ է պահուել և շատ տեղ էլ արդէն ժամանակի ընթացքում աւելի մեղմացել ու փափկացել է և համարեա թէ սիրոյ և բարեկամութեան ու իրաւունքների հաւասարութեան աստիճանին է հասել, Նախիջեւանում, ընդհակառակը, գնալով աւելի սուր բնաւորութիւն է ստացել և հետզհետէ, կարելի է ասել, փոխուել է բացարձակ հակառակութեան, թշնամութեան և ատելութեան։ Դորան նպաստել է և Նախիջեւանի ներքին կառավարութեան ձեւը, որ ընդ-

*հանրապէս աղայական լինելով, չի ճանաչել ոչ թէ միայն գիւղացւոց իրաւունքները, այլ և յաճախ արհամարհել է մինչև անգամ և քաղաքի ստորին դասակարգի — աղքատների իրաւունքները։ 1779 թուի հրովարտակի հիման վերայ հաստատուած Մագիստրատն իւր վարչական անձանց ընտրել է քաղաքացիների միջից, ընտրողական իրաւունքը տալով միայն պատուաւոր, նիւթականապէս անկախ մարդկանց, որ ասել է թէ ընտրողական իրաւունքը յատկացրել է աղաներին, որովհետև դոքա են եղել միայն նիւթականապէս ապահովուած անկախ մարդիկը։ Հետզհետէ բանն այնտեղ է հասել, որ ընտրողական ժողովներին, որոնց մասնակցելու իրաւունք են ունեցել հաւասարապէս և՛ քաղաքացիք և՛ գիւղացիք, յաճախ գիւղացիք չեն էլ հրաւիրուել և նոցա այդ «Մօքոցների» և՛ «եղոտ գլոխների», ինչպէս կոչում են նոցա քաղաքացիք, ձայնը և քուէն բանի տեղ էլ ամենևին չի դրուել, շատ անգամ նոցա շահերն էլ 'ի նկատի չեն առնուել։ Դորա հետևանքն էլ այն է եղել, որ դաղթականների մէջ ժամանակի ընթացքում կազմուել է երկու միմեանց հակառակ բանակ—քաղաքացւոց և գիւղացւոց, որոնք ձգտելով միմեանց վնասել, միմեանցից վրէժխնդիր լինել, դորանով անգիտակցաբար վնասել են և ընդհանուր շահերին։ Առաջ է եկել, օրինակի համար, «Զեմստվօների» խնդիրը և յոյս է եղել իրաւունք ստանալու Նախիջևանից և նորա հայ գիւղերից նահանգական զեմստվօյի մի առանձին ճիւղ հաստատելու—, գիւղացիք հակումն չեն ցոյց տուել և Նախիջևանցիք ստիպուած են եղել միանալու Ռոստովի զեմստվօին։ Հրատարակուել է ընդհանուր գինուորագրութեան կանոնադրութիւնը և Նախիջևանից և նորա հայ գիւղերից իշխանութեան կարգադրութեամբ կազմուել է մի գինուորագրական շրջան, բայց գիւղացիք դորանից անբաւական են մնացել և միշտ ձգտումն են ցոյց տուել բաժանուելու Նախիջևանից և միանալու Ռոստովի շրջանին, որովհետև կարծել և կարծում են, թէ քաղաքացիք այս կամ այն միջոցներով աշխատում են իւրեանց որդոց ազատել գինուոր գնալուց և գիւղացիներին գինուոր գրել տալ, և այլն և այլն։*

Քաղաքացւոց և գիւղացւոց այս թշնամական յարաբերութեան արտայայտութիւնն, այս անհաշտութեան հոգին կրում է իւր մէջ հետևեալ երգը, որ յօրինել են գիւղացիք, ձգտելով նորա մէջ նկարագրել իւրեանց — գիւղացւոց և քաղաքացւոց կեանքի հակապատկերը։

| | |
|---|---|
| Աֆֆէրիմ Նախիթացիք, | Մեր գործը օրախ, հարման, |
| Թօփտեցիք, Չալթըրցիք, | Պանել ու թօփ անել, |
| Սուլթան ու Մեծ-Սալացիք, | Պայիլ տուն, տուար, հայվան, |
| Ի՞նչ են Նոր-նախիջևանցիք։ | Փառք մեզ տալ ու նստիլ։ |
| Հայտա, տըղաք, հայտա, տըղաք, | Հայտա, տըղաք, հայտա, տըղաք, |
| Քէֆ անինք մենք, քէֆ անինք։ | և այլն։ |
| Խամիշ է մեր տուները՝ | Մենք չի կտինք ան ֆէնտէրը, |
| Սարայի մենք չենք տար. | Սիրտերըս պաց. դուռերըս պաց, |
| Նացանը փակ դուռերը, | Անհոգս է մեր օրերը, |
| Մերը հիչ փակ չի լլար։ | Նացանը աէրտ ու լաց։ |
| Հայտա, տղաք, հայտա, տըղաք, | Հայտա, տըղաք, հայտա, տըղաք, |
| և այլն։ | Քէֆանինք մենք, քէֆ անինք։[1]) |

Ներկայումս թէև նախկին ատելութիւնն այլ ևս չի երևում երկու հասարակութեան մէջ և մնացել է միայն քաղաքացիների արտաքին ծաղրական և արհամարհական յարաբերութիւնը դէպի գիւղացիները, բայց դորա, այդ ատելութեան տեղն այժմ բռնել է անտարբերութիւնը, ամեն բան ոչնչացնող մեռելային անտարբերութիւնը դէպի միմեանց շահերը։ Կարելի է համարեա առանց սխալուելու ասել, որ դժուար է գտնել մի ուրիշ հայ գիւղական և քաղաքային հասարակութիւն, որ այնպէս անտարբեր լինին դէպի միմեանց բարոյական և նիւթական շահերը, որքան Նախիջևանի քաղաքի և գիւղերի հասարակութիւններն են։ Կան շատ մարդիկ, որոնք իւրեանց ամբողջ կեանքն անցկացնելով քաղաքում, ոչ մի անգամ նեղութիւն չեն կրել այցելելու իւրեանց քաղաքի շրջակայքում գտնուած հայ գիւղերը, կան շատերը, որոնք այնքան հետաքրքիր չեն եղել իւ-

1) Այս երգն առաջին անգամ տպագրուել է Ռ. պատկանեանցի երգարանի Բ. տետրակում։

րեանց համարեւն գիւղացիների վիճակին ու դրութեան, որ ոչ մի տեղեկութիւն չունին հայ գիւղերի մասին։ Նախիջևանի Բարեգործական ընկերութիւնները հոգում են միայն իւրեանց կարօտեալների մասին և այդպէս էլ հէնց կազմել են իւրեանց կանոնադրութիւնները, հարուստները կտակ են անում միայն քաղաքացւոց համար, դպրոցներում թոշակներ են հաստատում միայն քաղաքացւոց համար, և այլն և այլն։ Եւ եթէ քաղաքն իւր հարուստ անհատներով, իւր թեմական դպրանոցով, իւր հարուստ Եկեղեցական հոգաբարձութեամբ, իւր հարուստ բարեգործական հաստատութիւններով, իւր ինտելիգենտ ստուար դասակարգով այդպէս է, 'ի հարկէ, ինչ կարելի է սպասել ու պահանջել խեղճ, տգէտ, կոշտ ու կոպիտ, հեռատեսութեան պայմանները չ'հասկացող, շրջապատող հանգամանքներին անտեղեակ գիւղացիներից... գիւղացի աղքատը, կարօտեալը, որբն ու այրին, հիւանդն ու անկեալը մնում են անխնամ, նոցա մտաւոր յառաջադիմութեան վերայ մտածող չ'կայ, նոցա առաջնորդող, բարի խորհուրդ, խրատ տուող չ'կայ։ Մահլայական կռիւները, քահանայական խռովութիւնները, եկեղեցու կամ դպրոցի այս կամ այն թաղում շինուելու անընդհատ վիճաբանութիւնները, անհաշտ կուսակցութիւնների մրցողութիւնները գրգռելով ռամիկ ամբոխի միայն վատ բնազդումները, ջլատում են գիւղացիների ամենալաւ, ամենաթարմ ույժերը, սպառում են նոցա մտաւոր ու բարոյական կորովը և քայքայում նոցա համայնական կեանքը։

